# ՔԵՐԹՈՒԱԾՔ

## ՀՌՉԱԿԱՒՈՐ ԴԵՐԱՍԱՆ

### ՓԵՏՐՈՍ Հ. ԱԴԱՄԵԱՆԻ

(1879-1891)

ԵՒ

### ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ





ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1896

# ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՊԵՏՐՈՍ Հ. ԱԴԱՄԵԱՆԻ

Աշխարհահռչակ դերասանիս ճոխ մտաց եւ հանճարոյն այս յետին եւ անոյշ արձագանգաց մէջ, զորս հայ ազգը պիտի համարի լսել նորա արտասուաթաց գերեզմանի խորերէն, փափաքելով մենք այլ խառնել մեր անկեղծ սրտի ձայնը, կը ձեռնարկենք համառօտել հոս իւր կարճատեւ կենաց, բարուց եւ մտաց նկարագիրը։

Նոյնը կատարած են արդէն ըստ մասնէ՝ Պ. Տօնապետեան 1888 տարւոյն՝ առանձին տետրակաւ մի, որոյ նիւթն է լոկ «Քսանեւհինգամեայ բեմական գործունէութիւն Պ. Հ. Ադամեանի», քաղուածոյ ռուսաց օրագրերէն։ — Ա. Մ. Վրոյր 1891ին, Մուրճ ամսագրի մէջ ընդարձակ յօդուածով մի, որ ընդհանուր՝ բայց համառօտ կենսագրութիւն մ'է։ — Ծաղկի տարւոյս 9 թիւն՝ Ադամեանի յիշատակին նուիրուած, յորում նոր են «Յիշատակներ» եւ «Ադամեան իր մտերմութեան մէջ» անուն յօդուածները։

Մենք դերասանին անձամբ ծանօթ չլինելով, այս կենսագրութեան մէջ օգտուեցանք այդ երեքէն՝ ըստ կարեւորոյն համառօտիւ։ Դարձեալ իբր աղբիւր նպաստեցին մեզ՝ բաւական օտարազգի եւ հայ օրագրաց յօդուածներ, նամակներ եւ այլն առ Ադամեան, զորս ինքն իսկ հաւաքեր է մի ստուար տետրի մէջ՝ որ այժմ մեր քով է։ Ոչ սակաւ տեղեկութիւններ ի մասին իւր վարուց՝ մանկու-

թենէն սկսեալ, զորս խնդրեցինք եւ ստացանք իւր ազնիւ ծանօթներէն ։ Ի վերջոյ՝ իւր յիսուն նամակներն առ Սանդրօ (Աղեքսանդր) Ստեփանեանց, որք լոյս տեսան Մրճի 1894 տարւոյն աւգ. սեպտ. հոկտ. եւ նոյ. ամսոց մէջ ։

Մեր աղօցմէ հանած ցիր եւ ցան տեղեկութիւնքն ամփոփելէ յետոյ, անոնց վերայ յաւելլով նա եւ մեր սեպհական խորհրդածութիւնքը եւ քննութիւնները, ըստ նիւթոց բաժանեցինք զայնս այլեւայլ գլխոց՝ ընթերցողաց դիւրութեան համար ։



## ԳԼՈՒԽ Ա

### ՎԱՐՔ ԵՒ ԲԱՐՔ ԱԴԱՄԵԱՆԻ

Ա. ՄԱՆԿՈՒԹԻՒՆՆ ։ — Ադամեանի մանկութեան խանձարուրքն ընծայեց Գաղատա Կոստանդնուպոլսոյ, յամին 1849 ։ Նշանաւոր հ. Գաբր. վ. Աւետիքեանի տոհմէն էր նա, նորա քրոջ թոռն ։ Ծնողքն հարուստ չէին, բայց և ոչ աղքատ ։ Դեռ նորափթիթ, կորոյս իւր մայրը Փեբրոնէ Վասիլեան մահուան ստուերաց մէջ, որոյ յիշատակը յետոյ իւր քնարին վերայ ստէպ կը յեղյեղէր գորովալից յուզմամբ ։ Այդ հասակի մէջ իւր նման դեռաբոյս միակ քրոջ հետ բնականապէս դեռ կարօտ մի մայրենի ձեռին, իրենց հայրն Հերոնիմոս յանձնեց զանոնք իւր քերց խնամոց ։

Այդ բարեպաշտ ընտանեաց մէջ իբր տաներէց կը բնակէր յայնժամ հ. Մովսէս վ. Ամպերպոյեան՝ Մխիթարեան վենետկոյ, եւ այժմ եպիսկոպոս ։ Սա դաստիարակեց նորա մանկութիւնը, կրթեց զնա քրիստոնէական հաւատոց նախ-

նական հրահանգաց մէջ, եւ պատրաստեց նորա միտքը գիտութեան սերմներով։

Պատանեկին տարիներու յառաջխաղացութեան հետ կը սկսէին յերեւան գալ ապագայ հանճարոյ մի բողբոջներ. կը ցուցնէր նորօրինակ ուշիմութիւն մի, ջերմ ուսումնասիրութիւն մի, որ զինք տեսնողաց սիրտը կը լնուին յուսոյ ճառագայթներով։

Այդ ժամանակներ եկեղեցեաց մէջ կը տեսնուէր հրեշտակային դիմօք տղայ մի, որ անոյշ երգովը եւ գեղեցիկ ընթերցմամբն Աստուծոյ եւ մարդոց ուշը եւ աչերն իրեն կը գրաւէր։ Դա Պետրոսիկն էր, ինչպէս կը կոչէին զինքն յայնժամ, որ զարդն էր սուրբ տաճարին։

Իբր ութ կամ իննամեայ, դրուեցաւ Գաղատայի կաթողիկեայ հայոց Ս. Փրկիչ եկեղեցւոյն թաղական դպրոցը, որոյ ուսուցչութիւնն յանձնուած էր Վարդան Մելքիսեդեան անուն ընտիր անձին։ Նորա ձեռաց եւ խնամոց տակ սկսաւ ամենայն ջանիւ օրէ յօր յառաջանալ Պետրոսիկ ուսման մէջ։ Եւ որովհետեւ դպրոցին ուսումնական ծրագիրն իւր կարողութեան եւ ջանից չէր համապատասխաներ, նա դպրոցի շրջանակէն դուրս յառած իւր աչերը, կ՚աշխատէր աւելին լսել, քննել եւ սովրել. ինչպէս կը նկարագրէ զինքն իւր յայնժամու խոստովանահայրն Հ. Գար. վ. Զարբհանալեան, «անձուկ վանդակի մէջ արգելուած թռչնակի նման, որ ազատ ասպարէզ փնդռելով՝ թեւ կը թօթափէ, այս եւ այն կողմ կը զարնուի, առանց կարող լինելու իւր փափաքին հասնել»։

Սակայն նա գտաւ հասնելու ճանապարհը, անդուլ ընթերցանութեան նուիրելով զինքն. եւ որովհետեւ չէր կարող ամէն գիրք գնել եւ կարդալ, ուստի աղաչաւոր դիմօք կը մօտենար հայ գրագիտաց, եւ կը խնդրէր որ շնորհեն իրեն այս կամ այն գիրքը՝ կարդալու և սահմանեալ օրը յետ դարձնելու խոստմամբ։ Եւ ո՞վ կրնար ժխտել այդ սիրուն եւ աշխոյժ պատանեկին խնդիրը։ Այսու Ադամեան

ինքն եղաւ իրեն ուսուցիչ եւ դաստիարակ· իսկ առաջնորդ եւ քաջալեր ունէր իւր սրտի հուրը, զոր այսպէս կը նուագէ առ Մխիթարեան հարս գրած Ուղերձին մէջ·

« Բարւոյն, վսեմին, գեղադիտակ ճըշմարտին
Ծնայ սիրահար· եւ պատանի դեռ անմեղ՝
Որոշեցի դըրդմանց լըսել իմ սըրտին՝
Ուր ըզգայի գեղոյն ճաշակն քաղցր՝ համեղ »։

Այդ եռանդեան հետ ունէր նա եւ սուր յիշողութիւն եւ արթուն միտք, որով ամէն տեսածը եւ լսածն իրեն կը սեպհականէր, կամ լաւ եւս՝ կը լափէր։ Իւր վերոյիշեալ խոստովանահայրը կը պատմէ՝ թէ հայերէն քարոզներու, մանաւանդ իւր ուսուցի՛չ վարդապետէն արտասանածներուն մեծ փութով ականջ դնելով, երբ եկեղեցիէն ի տուն կը դառնար, լսածը կէտ առ կէտ կը կրկնէր եւ կը զար-մացնէր նոյն իսկ քարոզիչը։

Հուր մ՚այլ կը վառէր իւր հնոցին մէջ առ մայրենի հին եւ նոր լեզուս, որոյ առաջին կայծերն արձակած էր հոն իւր մանկութեան նախայիշեալ դաստիարակը գեր· Ամ-պերպոյեան։

Այսպիսի կարողութեան տէր պատանւոյ բնաւորութիւնը դիւրին է գուշակել թէ ի՛նչ կրնար լինել։ Շատ անհան-դարտ էր, կ՚ըսեն, կրակ եւ բոց, գրեթէ անտանելի։ Ո՛ր տուն մտնէր, չփոթութիւն եւ աղմուկ կը հանէր հոն, շատ-խօսութեամբն ընտանեկան յարկին հանդարտութիւնը կը վրդովէր, եւ կը ձանձրացնէր ազգականքը եւ ծանօթները· որք եւ ի նմին ժամանակի չէին կարող չսիրել այդ խեռը, որ իւր մէջ մագնիսական զօրութիւն մ՚ունէր։

Բայց արտաքինք, որոց հետ կը տեսակցէր, կը գտնէին զնա « վարդի պէս ամօթլեած, հեզահամբոյր եւ քաղա-վար »; կ՚ըսէ Ստ· Էքշեան։

Կատակասէր էր· դպրոցի մէջ կարդալով Կոմփիւկիոսի խրատները, երբ ի տուն կը դառնար, սերտածներէն ինչ

որ կանանց կը վերաբերէր, իւր հօրաքերց կ'ուղղէր կատակաբանութեան համար։

Տեսակ մի խորագիմայ էր. երեսաց գծերէն կը հետեւեցնէր այլոց բնաւորութիւնը կամ մտաւոր կարողութիւնքը, եւ խակոյն կը կապուէր այն անձին հետ՝ զոր իւր դատողութիւնը կը բարձրացնէր։

Փոփոխամտութեան վնասակար թերութիւնն ունէր։

Նորասէր էր եւ եւրոպական տարազոց և սովորութեանց հետամուտ։ Օր մի կը հեռանայ Կ. պոլսէն, եւ ի դարձին կը տեսնուի մի գլանաձեւ գլխարկ դրած։

Կ'արժէ լսել իւր իսկ վկայութիւնն անձին վրայ.

> « Եւ խանդավառ իբրեւ մի հուր շըրջմոլիկ՝
> Թափառէի տարտամ, անյոյս եւ անսփոփ.
> Եռար արիւնս զինչ հողմակոծ ջուրց ալիք,
> Ցորում սիրտն իմ էր դիւրաբեկ մի մակոյկ »։

Զենք զարմանար, երբ կը լսենք թէ այդ հասակին մէջ փափաքեր է գալ ի Ս. Ղազար՝ քահանայանալու, եւ մեր միաբաններէն մին թախանձեր, եւ յետոյ յանկարծ միտքը փոխեր է։

Իւր լայն եւ մշտածաւալ մտաց յագուրդ տալու համար փափաքեցաւ նա եւ յԵւրոպա անցնիլ. սակայն մի կողմէն ընտանեկան ջերմ գութը եւ միւս կողմէն յարափոփոխ բնաւորութիւնը թոյլ չտուին իրեն զայդ։

Իւր աստուածատուր սէրն եւ հանճարն ի նկարչութեան, բանաստեղծութեան եւ դերասանութեան՝ սկսան տղայ հասակին մէջ ծիլ արձակել. բնական էր այդ։ Ինչ տեղեկութիւն որ ունինք ադոնց մասին իւր մանկութեան մէջ, նիւթոց ամփոփութեան համար ընտրեցինք զետեղել զանոնք իրենց սեպհական գլխոց մէջ։

Հոս միայն յիշենք՝ թէ ժամանակ մի աշակերտութեան կը տրուի ժամացուցագործի քով, յետոյ ոսկերչի. ժամանակ մ'այլ առեւտրական գրասենեկի մէջ կը դրուի։ Օր

մ'այլ ոսմանեան պետութենէն հրաման կ'ելնէ՝ որ իւր հպատակ քրիստոնեայ ազգերէն որոշեալ թուով ուշիմ պատանիներ հաւաքուին, որք պետութեան խնամօք դաստիարակուելով եւ ուսանելով, յետոյ բարձր պաշտամանց հասնին. — այդ է Ոդեսսայի Նովորոսեան հեռագիր ([1]) անուն օրագրի «զինուորական ծառայութիւն» ըսածը: — Պետրոս նոյն պաշտօնին այլ կոչուեցաւ: Բայց որովհետեւ իւր կոչումն յա՛յլ արուեստ էր, ադոնց ոչ միոյն մէջ կամաց չյաջողելով, արտաքսեցաւ ի մեծ խնդութիւն իրեն. մինչեւ հուսկ յետոյ ընդգրկեց դերասանութիւնը, որ ժամանակ իբր եօթնուտասնամեայ էր:

Բ. ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆՆ: — Ադամեան յնուհետեւ իւր կեանքը մեծաւ մասամբ թատերաբեմի վերայ անցոյց, հոն հռչակ հանեց, եւ այլոց իւր վերայ խօսելու առիթ տուաւ: Իւր հայրենիքը թողուլ եւ ի Ռուսիա անցնելը, հոն գտած ամենամեծ ընդունելութիւնը, փառաւորութիւնը, տարած յաղթանակը եւ դարձը պիտի պատմենք առանձին գլխով: Իւր անցուցած ներքին կեանքն ուրիշ մասամբք այդ միջոցի մէջ անծանօթ է մեզ: Այսչափ միայն գիտենք՝ ըստ մեր լսածին եւ նորա իւր երիտասարդութեան առաջին տարիներու մէջ գրած քերթուածներէն հետեւեցնելով, — ըստ որում լեզուն սրտի սպասաւորն է, — թէ իւր վարքը բարոյականի կողմանէ անստգիւտ չէ մնացած, ինչպէս դժբաղդաբար սովորական է այդ գրեթէ ամէն դերասանից, եւ զոր ոմանք իւր կենաց կարճութեան պատճառներէն մին կը համարին: Այսպէս գայթ ի գայթ անցոյց իւր երիտասարդութեան աւէկոծ տարիները, մանաւանդ ծնողական հսկող աչքէ մ'այլ զուրկ լինելով. — որովհետեւ հայրն եւս շուտով վախճանեցաւ՝ Կ. պոլսի 1870ի աղիտաբեր հրդեհին ժամանակ իւր բոլոր տանց եւ ստացուածոց հրկիզութենէն կրած ցաւովն. — եւ Պետրոս կենաց սալին վերայ

1. Նովօրոսիյսկի տելեգրաֆ:

ծեծուելով իբր շանթացած երկաթ մի, տակաւ հաստատուեցաւ՝ խոհականացաւ միտք եւ բարոյք։ Որով եւ վերջին տարիներու մէջ սքողեց առաջնոց նսեմութիւնը. Նմանելով այն նաւաստուոյն, որ ովկիանու մրրկալից կոհակաց հետ կռուելէ, կոծելէ եւ կիսաբեկ մակուկով ի ցամաք ելնելէ վերջ՝ աւելի զարմանալի է, քան եթէ բնաւ ցամաքէն զատուած չլինէր։

**Գ. ԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՆ.** — ԶԱդամեան արտաքուստ կը նկարագրեն միջահասակ, ջղոտ, աշխոյժ, հրաշեայ եւ թխահեր։ Այս բոլորովին համաձայն էր այդ արտաքնոյն՝ իւր ներքին նկարագիրն այլ։ Լսենք Վրոյրի. « Կատաղի բարկութեան հետ գառան հեզութիւնը, սէգ հպարտութեան հետ վերին աստիճանի խոնարհութիւնը, անհաշիւ շռայլութեան հետ կոպեկի հաշիւները, օձի խորամանկութեան հետ աղաւնոյ միամտութիւնը, որոնց շատ երկար կարելի է թուել, այս բոլոր բնաւորական հակասութիւնները միացած էին նորանում։ Նա փոփոխամիտ էր այնչափ՝ որչափ եւ հաստատամիտ. շատ յաճախ կարելի էր տեսնել որ այսօրուայ ասածը էգուց ատում է... բայց կը լինէին դէպքեր, որ... նորան չէր կարելի ոչ մի կերպով շեղել իւր համոզմունքից կամ մտադրութիւնից։... Նա սիրում էր առ հասարակ իւր մօտիկ շրջապատողներին հաւատալ։ Սիրում էր մարդկային բնաւորութեան ոչ թէ յոռի, այլ բացարձակապէս լաւ կողմերը տեսնել »։

Իւր մտերիմ ծանօթներէն մին կը գրէ Ծաղկի մէջ. « Կեղծելու արուեստին մէջ վարպետ եղող այդ մարդն ամենէն անկեղծ անձն էր՝ զոր ճանչցած եմ կենացս մէջ։ Իր գունով եւ արտայայտութեամբ մաքուր աչքերուն մէջէն երկինքը կ'երեւէր։... Դժգոհ կ'ըլլար ամէն անգամ՝ որ լսէր ամբարտաւան, ամբարիշտ կամ չարամիտ խօսք մը. կը պահանջէր որ համեստ, կրօնասէր ու բարի ըլլայինք։ Դժգոհ կ'ըլլար, երբ տեսնէր անիրաւութիւնը, վատութիւնը, փոքրոգութիւնը. Եւ այդ մոլութեանց դէմ միայն

չէր խնայեր ծաղրը՝ զոր դուն ուրեք տեսած եմ իր բեր-
նին մէջ »։

Աղամեանէ աւելի ընկերական մարդ դժուարին էր գտնել․ դրօսանաց, կերակրոյ, ճանապարհորդութեան ժամանակ եւ ամէն տեղ կ՚ուզէր ընկեր կամ բարեկամ ունենալ։ Սաստիկ կարօտ կը զգար, երբ իւր մտերիմ բարեկամներէն հեռի գտնուէր․ եթէ կարելի ըլլար, կ՚ուզէր ամէն օր թուղթ գրել եւ ստանալ անոնցմէ։ Իւր արուեստակից բոլոր ընկերաց հետ հաւասար սիրով եւ մտերմութեամբ կը վարուէր։ Եթէ միոյն նեղանար, եւ յետոյ իմանար թէ սխալեր է, ամենայն խոնարհութեամբ կը մօտենար, կը խոստովանէր իւր սխալումն, ներումն կը խնդրէր, եւ ամէն հնարք կը գործածէր վիրաւորած սիրտը շահելու։ Բարեկամաց հետ բնաւ մեծութիւն եւ հպարտութիւն ցոյց չէր տար՝ ոչ վարմամբ եւ ոչ խօսքով։

Ընկերութեան մէջ բազմակողմանի ձիրքերովն իւր նըմանը չունէր․ սրախօս կատակասէր, եւ ամենէն զուարթն էր, առանց մի գռեհկութեան․ կատարեալ զաւեշտական պատմութիւններով կը ծիծաղեցնէր զամէնը․ ուր որ գըտնուէր, այն ընկերութեան զարդն ինքն էր։ Առանց խտրութեան վիճակի եւ կոչման՝ կ՚ընդունէր զամէն մարդ, եւ չափազանց սէր եւ պատիւ կը ցուցնէր։ Ամենուն հետ խօսելու յարմար նիւթ կը գտնէր։ Բայց շատ աւելի կ՚ախորժէր խօսել առանձնակի եւ երկայն ժամերով՝ գրասէր եւ արուեստասէր անձանց հետ՝ գեղարուեստից, գրականութեան, բանաստեղծութեան եւ ոգեհարցութեան վերայ, որք իւր սրտին ամենէն մերձաւոր նիւթերն էին․ նոյնպէս կը խօսէր աստեղագիտութեան եւ բժշկութեան նկատմամբ, աւոնցմէ զատ ուրիշ նիւթեր զինք չէին հրապուրեր։

Իրեն ծանօթ մեր միաբաններէն մին Հ․ Դան․ վ․ Ստեփանեան այսպէս կ՚ըսէ․ « Իւր հոգեկան բարեմասնութեամբք առաջին տեսութիւն ընողին սիրտը յինքն կը ձգէր․ խօսակցութիւնը միշտ բարձր, օգտակար եւ ընկերական նիւթոց վե-

րայ էր. երբեք հասարակ բացատրութիւն մի՝ եւ ոչ իսկ ընդկատակս՝ բերնէն չէր լսուեր։ Խօսելու ժամանակ իւր հեզահամբոյր եւ կապուտակ աչերը մոգական զօրութիւն մի կը ստանային, իւր սովորաբար գունատ այտերը վարդագոյն կը ներկուէին. եւ դաշնակաւոր եւ վսեմ առոգանութեամբ մի այնպէս կը դիւթէր խօսակցին աչերը, որ կարծես աներեւոյթ զօրութեամբ մի կը կաշկանդուէր »։ Իւր շնորհաց վերայ նոր փայլ մի եւս կը յաւելուին բանաստեղծաբար արձակած մազերը, որք իւր բժժանքն էին թատերաբեմի վերայ։

Ադամեանի արուեստին հետեւողք թէատրոնէն դուրս սովորաբար շատ յարգութիւն և վարկ չեն վայելեր մարդկութեան մէջ, մանաւանդ ազնուական դասուն։ Բայց նա իւր օրինակաւ ցոյց տուաւ՝ թէ դերասանութիւնն այլ կըրնայ մի ազնուական արուեստ լինել իւր նման դերասանի ձեռաց մէջ։ Իւր ամենանուրբ քաղաքավարութիւնը, միշտ մաքուր հագուստը, ազնուական կերպը, հանճարեղ եւ իմաստալից լեզուն՝ ամենայն ուրեք պատկառելի կ՚ընծայէին զինք բոլոր մեծամեծաց, նոյն իսկ իբրեւ գրական մարդ։ Իշխանազունք մեծ հաճոյք կը զգային զինքն իրենց սեղանակից ընելու, տեսակցելու, խօսելու եւ լսելու մէջ, մանաւանդ լսելու։

Առ ինքն եղած ո՛ր եւ է բարիք չէր ուզեր առանց հատուցման թողուլ, նոյն իսկ իւր կարօտութեան մէջ։ Իսկ այլոց բարերարելու կողմանէ անհամեմատ էր. կ՚արժէ որ այս մասամբ փոքր ինչ երկար խօսինք։

Նորա ամբողջ էութիւնը մարդասիրութիւն էր. իւր սիրտը գթութեան սեղան մ՚էր. ինքն իսկ կարծես՝ թէ սիրոյ բոց մ՚էր, որ երթալով կը բորբոքէր՝ մինչեւ թաղուեցաւ իւր աճիւնին տակ։ Բոլոր հոգւովն համոզուած էր՝ թէ « անձնասիրութիւնը մի ոճիր է բնութեան օրինաց դէմ », ինչպէս կը գրէ առ բարեկամն։ Այս համոզմամբն էր, որ կ՚ատէր ագահ եւ ագէտ մեծատունքը, մանաւանդ երբ Ռու-

ստատանէն դառնալով՝ տեսաւ Թրքահայ հարուստները անձնասիրութեան մի մի կուռքեր, որք անկարեկիր էին առ թշուառս, եւ սովորութիւն չունէին բնաւ յարգել տաղանդները եւ օգնել անոնց, հեռի կը փախչէր միշտ անոնցմէ, եւ կը կենակցէր անոնց հետ՝ որք հարստութեան մահացուցիչ շրթայներէն զերծ էին. իւր քերթուածոց մէջ այլ խիստ եւ անաչառ է առ մեծատունս:

Իսկ ինքն իւր չքաւորութեան մէջ, յոր ձգած էր զնա բախտը, փոխանակ այլոց բարերարելու պարտքէն ազատ համարելու զինքն, իւր ամէն ինչը եւ անձն իսկ կը նուիրէր կարօտելոց. եւ այսու սրտի մեծ ուրախութիւն կը զգար: Ուսանողի Նամակին մէջ կը գրէ.

«Բարւոյն սէրն՝ Աստուած տայ հոգւոյն ընծայ,
Որ յերկրի երկնից համն առնէ՝ ցընծայ»:

Ցուրտ գիշեր մի սենեկին մէջ հիւրընկալելով մի ծեծենակ, ո՛րչափ գոհութեամբ կը լցուի. եւ Գիշերային այցելուին մէջ կ'երգէ.

«Ո՛հ, բարին գործել՝ ըսփոփանք մ'է քաղցր.
Հոգին ազնուանայ զգացմամբ սուրբ եւ բարձր.
Մինչ իսկ մի թըռչնոյ լինել հիւրընկալ՝
Երջանկութիւն է մեծ՝ անակընկալ»:

Աստի կրնանք չափել առ մարդիկ ցուցած գութը: Շատ յաճախ հանդիպած դէպքեր են, մուրացկի մի կարկատած ափին մէջ քսան կամ աւելի դահեկաններ դնելը: Բայց ամենէն աւելի զարմանալին հետեւեալն է. օր մի Մեծաձորի դաշտին վերայ մերկիկ աղքատ մի տեսնելով, կը հանէ քսակը՝ ողորմութիւն տալու. եւ երբ բաւական դրամ չգտներ, կը հանէ իւր զգեստները, կը հագուցանէ աղքատին, եւ ինք լոկ արտաքին զգեստով ի տուն կը դառնայ. ընտանիքը կը կարծեն թէ կատակ կ'ընէ, բայց նա հագուստն անդարձ կերպով շնորհեր էր թշուառին: Մահուանէն վերջ

մի կօշկայարդար հանդիպելով իւր ծանօթներէն միոյն՝ Հ. Ցուս. վ. Մեհրապեանի, Եղո՛ւկ, կ'ըսէ, ամենէն պատուական յաճախորդս կորուսի. ամէն կօշիկ ներկելոյս՝ ինձ հինգ դահեկան կու տար, փոխանակ տասն դանկի։

Ռուսիոյ մէջ շրջելու ժամանակ իւր թղթոց մէջ անդադար կը գանգատի՝ թէ շահած հասոյթը բնաւ չհամապատասխաներ լսած գովեստից. եւ իւր այդ չքաւորութեան մէջ իմանալով իւր սերտ բարեկամին կարօտութիւնը, կը գրէ՝ թէ « ամէն ամիս պիտի ստանաս ինձնից 20 ռուբլի... եւ եթէ մերժես, սոսկալի կերպով պիտի վիրաւորես ինձ, արգելք դառնալով որ իմ մարդկային եւ եղբայրական պարտականութիւնս չկարողանամ կատարել ». եւ ըսածին համեմատ այլ գործեց։ Բայց որ զարմանալին է, իւր հիւանդութեան եւ ծայրագոյն կարօտութեան մէջ չէր ուզեր՝ որ նոյն բարեկամն իրեն օգնէ անձամբ. « չլինի, կ'ըսէ, որ քու կողմից ինձ օգնել կամենաս. հաւատա՛ որ այդ դէպքում ինձ կը վրդովես եւ ինձ տանջանք կը պատճառես, եւ կը սպաննես իմ առ քեզ ունեցած բարեկամութիւնս ու սէրս ». կը մտածէր՝ որ նա իրեն ձեռք պարգելով՝ աւելի նեղուի։ Ռուսաստանէն դառնալէն յետոյ առաւ մի որբ տղայ Քաղկեդոնի Մխիթարեան վարժարանը դրաւ ամսականով, որ դաստիարակուի. եւ իւր գործոց ամենէն անյաջող ժամանակն էր այդ։ Բաց ի սոյնպիսի բարեգործութեանց՝ այս բնաւորութիւնն այլ ունէր, խանութներէն բան գնելու ժամանակ բնաւ սակարկութիւն չընել, այլ առաջարկուած գինը տալ, « ուղածն աշխատանաց վարձն է » ըսելով։ — Իւր այս չափազանց առատաձեռնութեամբն է՝ որ Ադամեան չկարողացաւ բնաւ հարըստութիւն դիզել, այլ միշտ կարօտ ապրեցաւ. կարօտութիւն մի, որ շատ աւելի մեծ է քան զժանգոտած հարըստութիւն։

Նա միանգամայն մեծ յարգ կու տար աղքատութեան եւ կենաց վշտերուն։ « Անարատ պահէ, կը գրէ մտեր֊

մին, եւ մի՛ վհատիր առաքինութեան մէջ՝ որ վեր է քան զամենայն հարստութիւն աշխարհի։ Մեր ամեն մէկ համբերութեամբ տարած վիշտը մի քայլ աւելի է մեզ մօտեցնում Աստուծոյ. եւ արդէն երանի քեզ նմաններին»։ Դարձեալ ուրիշ անգամ. «Գործի՛ր բարին՝ ի սէր բարւոյն. թէ մարդիկ չտեսնեն, Աստուած աւելի լաւ կը տեսնէ… կեանքը այստեղ չէ վերջանում»։ Ա՛յլ թղթով. «Դու քո վշտաց մէջ հաւատա՛, աւելի սիրելի ես Աստուծոյ, քան շատերը իրենց ռուբլիների դէզին մէջ։… Աստուած աւելի որոշ կը տեսնէ նորանց՝ որոնք որ անտես են թողուած մարդիկներից։… Կայ մի աչք քեզ տեսնող, եւ այդ աչքից պիտի ծագէ մի օր հոգւոյդ լոյս եւ մխիթարութիւն. եւ այս իմ ասածները փորձով գիտեմ։ Դու ուրախացիր որ ունիս հոգւոյ եւ սրտի հարստութիւն, եւ ցաւէ դոցա վրայ՝ որք աղքատ են այն կողմից. զի այդ է ճշմարիտ աղքատութիւնը»։

Ադամեան չգիտէր բնաւ իւր տան սպասաւորաց հետ ասիական իշխանութեամբ վարուիլ, ստրկաբար ծառայեցընելով կամ արհամարհելով. այլ կը սիրէր զանոնք եղբայրաբար, այլոց առջեւ կը գովէր նոցա ունեցած ձիրքերը, եւ շնորհակալութիւն կը յայտնէր անոնց հաւատարիմ, սիրայօժար եւ խնամոտ ծառայութեան համար։ Բայց հիւանդութեան ժամանակ նեղասիրտ եւ խստապահանջ կը դառնար. եւ միանգամայն հոգ կ՚ընէր, ըսելով՝ թէ շատ նեղութիւն կու տայ զինք խնամողաց։

Որչափ ժողովրդասէր եւ գթած էր Ադամեան, նոյնչափ եւ սիրելի էր ժողովրդեան եւ բոլոր մարդկութեան, եթէ ազգայնոց եւ եթէ օտարազգեաց. մեր հարստներէն այլ կային շատեր, որք իրօք կը սիրէին զնա, թէպէտ եւ հեռուէն։ ԶԱդամեան սիրելու համար բաւական էր՝ որ մարդ մի անգամ խօսակցէր նորա հետ. իսկոյն եւեթ այն կը պատահէր անոր՝ ինչ որ կրակին մօտեցած դիւրավառ մի նիւթոյ։

Սակայն ունէր հակառակորդներ այլ, որք կը ջանային միշտ վնասել իրեն. բայց իւր բարեսէր եւ քրիստոնեայ սիրտը բնաւ չէր ատեր զանոնք, եւ ոչ իսկ չար կը խօսէր նոցա վերայ. այլ կը ջանար բարիք ընել, եւ իւր բարեկամներն այլ կը յորդորէր անյիշաչար լինել անոնց: « Այժմ, կը գրէ մտերմին, ես առաւել հաստատուած եմ այս սկզբունքին մէջ, ներել բոլորին՝ հանգամանքները քննելով. ոչ ոք լիովին իւր մեղքին մեղաւոր չէ »:

Ազամեան այլոց ձրից չէր նախանձեր, այլ մանաւանդ կը գովէր: « Աստուածային է, կ'ըսէր, Սալվինեանի Ոթելլոն », բաց յարդուզարդէն՝ զոր « անտանելի » կը համարէր: Երնեստ Ռոսսեան երբ ի Կ. պոլիս կու գայ, Ազամեան կ'երթայ կը գտնէ զնա թատրաբեմին ետեւ, եւ կը համբուրուին երկու մեծահամբաւ դերասանք: Ազամեան նորա թատերական յարդարանաց չհաճելով, « քեզ նման աշխարհահռչակ դերասանը, կ'ըսէ, պէտք է որ իւր համբաւոյն համեմատ զարդարուի ». եւ իւր ճարտար մատներով կը շտկէ նորա մօրուսը եւ հագուստը, եւ այնպէս ի բեմ կը ղրկէ: Երնեստ մեծապէս կը սքանչանայ նորա խոնարհութեան վերայ, եւ կը փոխանակեն միմեանց կենդանագրերը:

Բայց ուրիշ դերասանից արուեստակեալ եւ անբնական ներկայացմանց այլ չէր հաւաներ. աւելի պարզ ըսենք, անաչառ էր իւր քննադատութեանց մէջ: Նոյնպէս երբ մ'որ եւ է տեսակ հանճարոյ կամ գրական երկի վերայ դատաստան ընէր, կը գովէր լաւ կողմերը, մատնանիշ կ'ընէր թերութիւնքը, եւ կը յաւելոյր խրախոյս եւ յոյս: Խիստ էր նա եւ զիւր անձն դատելու մէջ. « գիտեմ, կ'ըսէր, թէ շատ փոքր արուեստաւոր մի չեմ. բայց իմ մասին չափազանց յաւակնութիւն չունիմ. պէտք է աշխատել, սորվել պէտք է. միշտ բան կայ ընելու »: Ցիրաւի՝ ա՛յդչափ խոնարհութիւն իւր անչափ բարձրութեան մէջ:

Հայրենասէր եւ ազգասէր այլ էր Ազամեան: Ո՛րչափ քնքոյշ է նորա ի Հայրենիք գրած քերթուածն, եւ ինչ-

պէս կը պարզէ նորա սրտի վառ զգացումները, զոր կը տածէր առ այն։

«Աշխարհ մի կայ, երկիր տըխուր,
Սըգազգեցիկ եւ աւերակ.
Անկեալ մահուն յար առաթուր,
Ծածկի իւր փառքն ոսկերաց տակ։...
Այլ չէ տըխուր բնաւ ինձ համար,
Զի կը սիրեմ ես այն տեղուանք.
Այն սեւ հողին հէգ սիրահար,
Հոն կը կարծեմ գըտնել յոյս՝ կեանք։
Այն լըռութիւն սէր խօսեր է
Իմ սըրտիս հետ շատ լեզուանի.
Հոգիս էլ հոն մըշակեր է
Յիշատակի դրախտ գեղանի։
Թէ լինէի մի փոքր ծաղիկ
Արտասունքի ցօղով դեռ թաց,
Կամենայի հոն ծլիլ մենիկ,
Շիրմի մը վրայ մեռնիլ թառամած»....

Իւր դերասանական ահագին հանճարը եւ փառքը նուիրած էր ազգին փառաց։ Իւր կենաց վերջին աւուրց մէջ անդադար կ'երազէր երթալ ի Պարիս, Լոնդրա եւ Իտալիա, այդ աշխարհաց մէջ այլ տարածելու համար հայ ազգին համբաւը։ «Իմ Եւրոպա երթալ ներկայացնելս, կը գրէր, ազգային մի պատիւ է»։ Չերգենք՝ այլ գործենք անուն քերթուածին մէջ այլ կ'ըսէ.

«Հայ ծընելըս՝ ինձ համար
Կը համարիմ պարծանք ու բաղդ»։

Սակայն հոս կը ցուցնէ՝ թէ չէ ինքն այն հայերէն, որոց ազգասիրութիւնը սոսկ աղաղակելու մէջ կը կայանայ. որք ազգի անցեալ փառաց յիշատակաւ միայն կը սնանին՝ առանց խորհելու զներկայն. եւ կը յորդորէ՝ աշխատել հաւասարեցնել զներկայն անցելոյն հետ, եւ ապա երգել

զանցեալը։ Ահա այս տեսակ է Ադամեանի ազգասիրութիւնը։

Իբրեւ ճշմարիտ քրիստոնեայ, պատկառանք կը պահանջէր առ կրօնքն եւ առ աստուածայինս։ Աւագ ուրբաթ օր մի տեսնելով կանանց զարդարուած յեկեղեցի երթալը, Դիտողութեան մի մէջ կ'ըսէ.

« Մեծ մեղք է այս անբնական ».

երբ, կը յաւելու, սգաւորաց այցելութեան գնանք, սեւ կը հագնինք. իսկ այդ օր, այդ տխուր եւ նուիրական օրը՝ շատերը շքով եւ ուրախութեամբ կ'անցնեն.

« Ու ժըպտելով երթան տեսնել խաչին վրէն
Այն Աստուածը, որ մեր մեղաց տայր պատիժ,
Արդեօք աղէկ գամե՛ր են »։

Վերջերը սաստիկ կը հարուածէր կանանց եւրոպացի նորասիրութիւնը սոյնպիսի խօսքերով.

« Ապականեցաւ բարոյականնիս.
Մարդն այլանդակած՝ ի կորուստ վազէ »...

Իբր գրօսանք՝ շատ կը սիրէր, կ'ըսեն, Ադամեան ձըկնորսութիւնը։ Մեծաձորի առջեւ ամէն առաւօտ կանուխ նստած նաւակի մէջ մի ընկերոջ հետ, կարթն ի ձեռին ձկներ կ'որսար. եւ մանկան պէս կը հրճուէր, երբ անոնց մին կը կարթէր։ Միանգամայն այդ խոնարհ եւ անպարծ մարդն « առանձին սնափառութիւն էր զգում, կ'ըսէ Վրոյր, դէպ ի ձկնորսութիւնը, եւ սիրում էր՝ երբ գովում էին այս մասում իւր յաջողութիւնը »։

Իւր ներքին բնաւորութեան վերայ խօսելով, կ'ըսեն՝ թէ երկչոտ էր իբրեւ տղայ մի. տան մէջ փոքրիկ շարժումն կամ ճիկ զինքն անհանգիստ կ'ընէր։ « Թատերաբեմէն դուրս, կը գրէր երգիծաբան Պարոնեան, Ադամեանն ալ անշուշտ մեզ նման սովորական մահկանացուներէն է, որ

վառեակ մ՚իսկ մորթելու կը վախնայ. իսկ թատերաբեմին վրայ առիւծ կը դառնայ »։

Երեւակայութիւնն այլ սաստիկ վառ լինելով, ամէն ինչ մեծ կ՚ըմբռնէր եւ կը նկարագրէր։ Ուստի եւ խօսակցութեան, ուրախութեան, ցաւոց եւ տագնապներուն մէջ կը խառնէր այնպիսի ձեւեր, որ տեսնողներ զինք թատերաբեմի վերայ կը կարծէին։ Այդպիսի երեւակայութեան պատճառաւ, կ՚ըսէ Վրոյր, « շատ աննշան դէպքեր կը մեծանային, կը կազմաւորվէին, եւ իրան երկար մտատանջութիւնների եւ հոգեկան տանջանքների պատճառ կը դառնային։ Նա լռիկ կը հեծէր, կը գանգատուէր բաղդից եւ կեանքից. իւր փառքը իրան դժբաղդութիւն կը համարէր, իսկ դափնիները փուշ »։

Դ. ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՀՆ։ — Ադամեան 1889ին Զմիւռնիայէն դարձաւ ի Կ. պոլիս՝ կոկորդի ծանր հիւանդութենէն բռնուած։ Հոն իւր ցանկալի ձայնն սկսաւ հետ զհետէ նուաղել. շատ ջանաց բժշկել, բայց օգուտ չեղաւ։ Եւ այն հզօր ձայնն, որ աշխարհիս բոլոր անկեանց մէջ հնչեց, սպառեցաւ մարեցաւ, տկար շշնջիւն մի դարձաւ։ Յայնժամ թատերաբեմի ահագին առիւծը թողած իւր մեծաշուք ասպարէզը, ամփոփեցաւ իւր խորշը, միայնութեան, լռութեան եւ ցաւոց մէջ անդադար մնջելով հիւծելու։ Այդ ժամանակ դուրս հանեց վրձինը եւ բանաստեղծի գրիչը, անոցմով մեղմելու իւր կենաց դառնութիւնը։

Յիշեալ հիւանդութեան վերայ նոյն տարւոյ ձմերան մէջ յաւելցաւ նա եւ սաստիկ սուր յօդացաւ մի, որով յանկողին ընկած կը տառապէր։ Ադամեան բժշկական մեծ խնամոց կը կարօտէր. սակայն իւր քսակի վիճակն յայտնի է մեզ, չունէր դրամ. հետեւաբար հարկադրեցաւ վաճառել ինչ որ ունէր, թատերաբեմի վրայ երբեմն ստացած ոսկեղէն եւ արծաթեղէն նուէրները, եւ բժշկաց բաշխեց։ Բայց հիւանդութիւնն անողոք էր, դեռ շատ դարմանոց եւ անբաւ դրամոց պէտք կար։ Խեղճ դերասանը յետին չքա-

ւորութեան մատնեցաւ. եւ ստիպուեցաւ իւր տաղանդին խնկարկու ռուսահայոց ձեռնտուութիւնը խնդրել, յատկապէս Աղէքս. Մելիքազարեանցին, որոնք հանգանակութիւն ընելով՝ հետ զհետէ թէպէտ բաւական գումարներ կը ղըրկէին, բայց բժշկաց անտանելի ծախուց չէին բաւեր, որով միշտ կարօտ կը մնար նա: Բժշկաց օգնութեամբ յօդացաւն յետ քանի մի ամսոց թեթեւացաւ, եւ ելաւ անկողնէն: Բայց կոկորդը չէր առողջանար. ուռած էր եւ սաստիկ կը ցաւէր: Ստէպ կը տաղէին զայն երկաթով եւ դեղերով. եւ ի վերջոյ սկսան կտրել հանել վիրաց աւելորդ մասունքը, յորմէ չարաչար կը տանջուէր խեղճը, որոյ վերայ այլ եւս չէր մնացած մարմին, ոյժ եւ նախկին կայտառութիւնը:

Բայց ազգին անմահ պարծանքն ինչո՞ւ հեռաւորաց օգնութիւնը կը խնդրէր. ի՞նչ կ՚ընէին իւր վսեմափայլ քաղաքակիցք: Ո՜վ աշխարհ: Սակաւ մի յառաջ թէատրոնի մէջ անոր ովսաննա՜ աղաղակողներն այժմ երբ կարօտութեան մէջ ընկաւ, եւ ոչ նորա ստուերը կ՚ուզէին տեսնել՝ իրենց նուիրական սովորութեան համեմատ: Մենք մէջ կը բերենք 1890ի սեպտ. 28ի նամակին հետեւեալ խօսքերը. «Դրամական սոսկալի նեղութիւն եմ կրում. այստեղ ոչ ոք գիտնալ անգամ չուզեց. կարեւորութիւն անգամ չեն տալիս, չեն զգում. մինչեւ անգամ անամօթաբար գրուում է թէ առողջ եմ, եւ թէ ինձ պիտի օգնեն... սո՛ւտ եւ սո՛ւտ»: Եւ կը յաւելու՝ թէ այդպիսի սխալ լրերով խափան կը լինէին նա եւ դիտաւորութեան այն հեռաւորաց՝ որոնք կ՚ուզէին օգնութեան հասնել:

Ծաղիկը կը գրէ՝ թէ նա իւր այդ թշուառութեան ժամանակ անձնասպանութեան փորձութիւն մի ունեցած լինի: Բայց ի՞նչպէս կարող էր մտածել այդ բանն Ադամեանի նման երկչոտ մարդը. կեանքն այնչափ սիրող Ադամեանը, որ օրհասի մէջ անգամ դեռ կ՚ուզէր եւ կը յուսար առողջանալ եւ ապրել. վերջապէս այն Ադամեան, որ այդ ժա-

մանակ լեզուաւ եւ գործով կը հանդիսանար ամենէն կատարեալ քրիստոնեայն. որ կը գրէր առ Ֆանթազիօ.

« Անձնասպանի ոճիրն անհեղ՝ հրէշաւոր
Անվայել է խոհուն անձին բանաւոր ».

եւ դեռ նոյն ժամանակները կ'ըսէր մի թղթոյն մէջ. « մեծ է յոյս եւ հաւատքս առ Աստուած, որով կարողանում եմ դիմանալ այս իմ ցաւալի վիճակին, եւ յուսալ՝ որ մի օր պիտի կարողանամ գրկել եւ համբուրել զքեզ կրկին »: Ծաղկի ըսածն արդիւնք կը թուի՝ նորա խօսից եւ կամ գոնէ համոզմանց անհասկացողութեան:

Ադամեանի վիճակն երթալով կը ծանրանար. նոյն 1890 տարւոյն սկսան իւր վերայ երեւել նա եւ թոքախտի նշաններ, որք հետ զհետէ ստոյգ հիւանդութեան կը փոխուէին: Բժշկաց մինչեւ ի Մեծաձոր երթեւեկութեան դժուարութեան համար իւր բարեկամք յորդորեցին հիւանդանոց գնալ. եւ նա հաւանելով՝ ընտրեց ռուսաց Ս. Նիկողայոսեան հիւանդանոցը: 1891ի փետր. ամիսն էր. ռուսաց Կ. պոլսոյ դեսպանն ինքնին հրամայեց որ ընդունին զնա. եւ բժշկաց այլ պատուիրեց ամէն կարելի դարման գործադրել՝ բժշկելու համար մեծ մարդը:

Ազգի արժանապատուութիւն ճանաչող հայք, — անոնք որ իրենք եւս կարօտ էին օգնութեան, — լսելով այդ բանը, ցնցեցան, եւ սկսան վազել անոր այցելութեան. իսկ ընչեղք անվրդով մնացին: Սոցա անտարբերութեան վերայ գանգատողաց կը պատասխանէր հիւանդը. « Պէտք է անյիշաչար լինել, պէտք է ներել այդ խեղճ մարդոց, որք չգիտեն ինչ որ կ'ընեն »: Իւր ռուս բժիշկներէն մին հանդիպելով մեր միաբաններէն միոյն, կ'ըսէր՝ թէ իւր ազգայինք լքին զնա եւ մենք խնամեցինք: Ո՛րչափ ծանր է այդ հեգնութիւնը պատուաւոր հայուն:

Յիշեալ հիւանդանոցի մէջ երեք ամսոյ չափ ժիրաժիր խնամօք դարմանուեցաւ. բժիշկներն օրը երեք անգամ

կ'այցելէին։ Եւ երբ զգաց առերեւոյթ թեթեւութիւն մի իր հիւանդութեան, փափաքեցաւ դառնալ ի Մեծաձոր իր տունը երթալ՝ օդափոխութեան համար։ Բժիշկները գիտէին թէ չապրիր. ուստի թոյլ տուին երթալ։ Մանաւանդ թէ իրենց ուզածն այլ այդ էր, որպէս զի իրենց ձեռաց մէջ մեռնելումն՝ իրենք ռուսաց առջեւ պատասխանատու չհամարուէին. ուստի եւ երբ վերստին ուզեց հիւանդանոցը դառնալ, տատամսեցան, յանձն չառին։

Հիւանդանոցէն ելնելէն վերջ հազիւ երկու երեք շաբաթ ապրեցաւ։ Այդ միջոցին՝ ինչպէս եւ յառաջ՝ անդադար կ'ընդունէր իր բարեկամաց այցելութիւնքը։ Իր բարեկամական ողջոյնը միշտ համբոյրն էր. բայց երիտասարդներէն կը զգուշանար՝ որ յանկարծ չվնասուին։ Իր այցելուաց անունները կը գրէր, որ յետոյ հրատարակէ երախտագիտութեան համար բայց չկրցաւ։ Արձագանք մի քերթուածը շարադրեց գերերջ. Ազարեան պատրիարքին՝ որ գնաց զինք տեսնելու հիւանդանոցին մէջ։ Խանդաղատանօք կը յիշէր միշտ Բուսաստանի մէջ թողած մտերմաց անունները, որոց յաճախ սիրալիր թղթեր և ողջոյններ կը ղրկէր, մինչեւ անգամ յետին հրաժեշտի ողջոյնն այլ։ Ստէպ կը յաճախէին իրեն նա եւ Վենետկոյ Մխիթարեան հարք, որոց հետ իբր աշակերտ՝ առանձին սիրով եւ մտերմութեամբ կապուած էր ի մանկութենէ։ Երբ առողջանամ, կ'ըսէր անոնց, անվրէպ պիտի գնամ ի Վենետիկ՝ տեսնելու Ս. Ղազարու մոգական կղզեակը։ Այո՛, նա որչափ այլ կը գուշակէր իր մահը, ինչպէս Առ Ֆանթազիօ քերթուածին մէջ կը տեսնենք, բայց եւ այնպէս յոյս ունէր դեռ ապրելու, ինչպէս ըսինք յառաջ. եւ այդ յոյսը հաստատած էր Աստուծոյ վերայ, զոր կը ճանաչէր միակ բարի եւ աղբիւր երջանկութեան, որուն փարած էր հոգւով եւ մտօք, եւ որոյ անունը բնաւ չէր թողուր բերանէն։

Արդարեւ օրինակելի է Ադամեանի աստուածպաշտութիւնը հիւանդութեան բոլոր ժամանակը։ Ա. Զօպանեան

գրեց Արեւելքի մէջ. «Կը խօսէր մեզ յաճախ Ամենակալին
վրայ… իր առողջութեան օրերուն ամբողջ խանդն ու փայլն
առնելով վերստին, աստուածաշնչական գոյներով, պերճ
պատկերներով, զգայուն ու անկեղծ շեշտերով կը գովա-
բանէր, կ'օրհնէր, կ'երգէր Աստուծոյ մեծութիւնը. եւ ահա
աչքերը կը բոցավառէին… վեր կ'ելնէր նստած տեղէն,
թեւերն (բազուկներն) հետ զհետէ լայն ու գեղեցիկ ձեւերով
կը բացուէին, դէմքն եւս քան զեւս ներշնչեալ մը ար-
տայայտութիւնը կը ստանար. դողդոջուն սրունքներուն վրայ
կանգնած, դողդոջուն կուրծքէն ելած եւ հեւքէն ու հազէն
խափանուած փափսուք մը դողդոջուն շրթներէն դուրս թա-
փելով, կը խօսէր հիւանդը, Աստուծոյ վրայ կը խօսէր…»։
Յօժարակամ, առանց մի դժգոհութեան տարաւ իւր ցաւոց,
«ապաշխարանքս է» ըսելով։ Քրիստոնեայ հոգւոյ խոս-
տովանութիւն մի են հետեւեալ տողերն առ Ֆանթազիօ, լի
զղջմամբ եւ ամբաստանութեամբ իւր անձին դէմ.

«Թերեւս շատ քիչ կարողացայ գնահատել
Շնորհքն Աստուծոյ, բարւոյն ի սէր Նիւթն ատել.
Իւր պարգեւաց դէմ լինելով ապերախտ,
Ժառանգեցի գուցէ ցաւերս, վէրքն ու ախտ»։

Վերջին օրերուն մէջ ըմբռնելով իւր վիճակի ծանրու-
թիւնը, չվարանեցաւ պատրաստուիլ մահուան՝ եթէ յան-
կարծ գար։ Կոչեց հին բարեկամը զՀ. Յ. Արճեան, եւ
ընդհանուր խոստովանութիւն մ'ըրաւ իւր մեղաց։ Յետ ո-
րոյ ընկած ս. խաչին առջեւ՝ մի այնպիսի զղջումն կատա-
րեց, որ մինչեւ իսկ խոստովանահայրը լացոյց։ Նոյնպիսի
մեծ բարեպաշտութեամբ ընդունեցաւ անմահացուցիչ խոր-
հուրդն այլ։ Յետոյ ուրախութեամբ կը պատմէր զայդ իւր
այցելուաց, որոց միոյն այսպէս ըսած է. «Ինչպէս մարդս
իւր աղտոտ լաթերն հանելով եւ մաքուրներն հագնելով,
սփոփանք եւ հաճութիւն կը զգայ, ես այլ ապաշխարու-
թեան խորհրդոյ միջոցաւ հոգւոյս աղտերէն մաքրուելով

սփոփեցայ եւ երկնային հեշտութիւն մի զգացի. ա՛լ յաւէտ երկնից կը պատկանիմ, քան թէ երկրի »։ Երանի՜ քեզ։ — Այս յետին, վսեմագոյն եւ անկեղծ ներկայացումն, զոր դերասանն հաճութեամբ կը հռչակէր, Վրոյր լռութեան քողով ծածկեց… բայց Պատկեր հանդէսն արդէն իւրմէ յառաջ (1 յուլ. 1891) պատռած էր այդ քողը։

Նոյն 1891 տարւոյ յունիսի 2 էր ըստ արեւելեայց։ Լսուեցաւ մահուան չոր եւ ցուրտ ձեռին բախումն Ադամեանի դրան վերայ։ Հիւանդը փութաց եւ խնդրեց ընդունել հիւանդաց օծութիւնը եւ այլ մխիթարութիւնքը։ Մահուան բախումը կրկնուեցաւ. քրիստոնեայն պատրաստ էր, ուրախութեամբ ձայն տուաւ, բա՜ց… ակնթարթ մի, եւ այլ եւս չկար Ադամեան։ Անողոք գերանդին կտրած՝ գետին ձգած էր նորա քառասուն եւ երկու տարեկան առոյգ ծաղիկը. կամ մանաւանդ վեր թռուցած, որով գնաց գտաւ զայն՝ որուն կ'աղաղակէր երկու տարի յառաջ իւր երկրաւոր պանդխտութեան մէջ.

« Կարողանա՞մ պիտի արդեօք
Տեսնել ըզքեզ ըզմայլանօք,
Մինչդեռ ի կեանս միշտ աստանօր
Որոնեցի քեզ անմոլոր,
Մինչ յարտօսր իմ ակնախըտիղ
Գըտայ սիրոյդ քո շառաւիղ »։

Ադամեանի յուղարկաւորութիւնն հազուադէպներէն մին եղաւ շքեղութեան կողմանէ, ինքնայօժար հոգածութեամբ՝ ոչ թէ իւր ազգին, այլ արուեստագիտին պատուադիր՝ գերերջ. Ազարեան պատրիարքին։ Կը համառօտենք հոս Արեւելք օրագրի մանրամասն նկարագիրը։ Մահուան երկրորդ օրն էր. տխուր բօթը թունդ հանած էր գրեթէ ամբողջ քաղաքը, սինլքոր եւ ազնուական. — յանկարծ միտքս ընկաւ ռամկական զրոյցը. Գնա մեռիր, եկուր սիրեմ։ — Առաւօտեան երկրորդ ժամուն Պերայի Ս. Աստուածածին ե-

կեղեցւոյ ատենի մէջ՝ սեւ մահարձմի վերայ կը հանգչէր հանգուցելոյն թաւշապատ դագաղը, զարդարուած խուռն պսակներով եւ խաչերով, եւ շրջապատուած լուցեալ ճրագներով։ Պատարագ կը մատչէր Ադամեանի հոգւոյն համար։ Հոն առընթերակայ էին եկեղեցականներէն, կաթողիկեայ հայոց պատրիարքական փոխանորդ գերպ. Կարապետ եպ. Ասլանեան՝ բազմաթիւ վարդապետներով, եւ հինգ պաշտօնական անձինք Վիեննակոյ Մխիթարեաններէն։ Աշխարհականաց մէջ նշանաւոր ազգայիններէն զատ՝ ի մեծարանս գերահռչակ հանճարոյն՝ եկեր էին նա եւ ռուսաց դեսպանատան թարգմաններէն մին, հիւպատարանի առաջին քարտուղարն եւ զինուորաց գնդապետը, ռուս հիւանդանոցի բժշկապետն եւ ուրիշ բժիշկ մի՝ որք դարմանած էին հանգուցեալը։ Յետ պատարագին՝ Մխիթարեաններէն Հ. Դաւիթ վ. Նազարեթեան դամբանական մի խօսեցաւ՝ լի զգացմամբ եւ գովեստիւք մեծ արուեստագիտին վերայ։

Այնուհետեւ ուզեցին ննջեցեալը փոխադրել ի Ս. Յոհան Ոսկեբերան եկեղեցին։ Դագաղը զետեղեցին դիակիր շքեղագոյն կառաց վերայ, որ կը սպասէր դուրսը։ Եւ ահա ի՛նչ պատահի. կառաձիգ երիվարները չէին ուզեր յառաջ երթալ. շատ մտրակեցին, սանձերէն կը քարշէին, բայց անօգուտ։ Գոգցես անասունքը կը զգային թէ իրենց կարողութենէ վեր է տանել մե՛ծ մարդը։ Այն ժամանակ զԱդամեան սիրող երիտասարդք եւ Մնակեան խմբին հայ դերասանք իրենց ուսոց վերայ առած՝ տարին զայն։ Ս. Ոսկեբերանի մէջ յետ եկեղեցական պաշտամանց՝ տէր Յովհաննէս Սեթեան տխուր քերթուած մի արտասանեց բակին մէջ. յետ որոյ ուղղուեցան ի Շիշլի, դագաղը նոյնպէս ուսաբարձ մինչեւ ի Բանկալթի։

Առ հասարակ ամբողջ յուղարկաւորութեան ժամանակ հանգուցելոյն այնչափ խուռն կառքեր կը հետեւէին շղթայաշար, որ դժուարին էր նշմարել անոնց ծայրը։ Իսկ հետեւակ ժողովրդեան ստուգիւ թիւ չկար. բանակի երե-

ւոյթ մի կու տային եւ հետ զհետէ կ'անցնէին։ Ասոնց մէջ կը նշմարուէին ռուս բարեկամք դեսպանատնէն ղրկուած, ամբողջ Մնակեան խումբը, եւ օտարազգի արուեստագէտք։ Ամէն երեսներ ի սուգ համակուած էին։ Տեարքն Յովհ. Սազըլեան, Եղ. Տեմիրճիպաշեան, Էմմ. Եսայեան եւ չորս ուսք դագաղին ծոպերը կը բռնէին։ Հանգուցելոյն հօրեղբայրն եւ այլ մերձաւոր ազգականք սգազգեաց կը հետեւէին դագաղին։ Իսկ առջեւէն կ'երթային Մնակեան խմբի նուագածուք, սգոյ քայլերգ մի նուագելով։

Դպրոցական սանունք կը տանէին պէսպէս պսակներ եւ ծաղկեայ խաչեր, նուիրուած զանազան ընտանիքներէ։ Յախճապակեայ խաչ մի՝ ի դիմաց Վենետկոյ Մխ. միաբանութեան, զոր կը կրէր Քաղկեդոնի Մխ. վարժարանի նախկին սաներէն մին։ Ս. Յակոբայ հիւանդանոցին առջեւ՝ դագաղին վերայ դրուեցաւ խաչ մ'այլ նոյն հիւանդանոցի հոգաբարձուաց կողմէն։

Հասնելով Ս. Նիկողայոսեան հիւանդանոցին քով, հոն աշխատող ներքին բժիշկն, ողորմած քորք եւ հիւանդապահք, որ Թաքորի գալստեան կը սպասէին, հետիոտս միացան ամբոխին հետ։ Վիեննայի Մխիթարեանց վանատան առջեւ՝ նոյն միաբանութեան հարք եւ ուսանողք այլ մի պսակ դրին դագաղին վերայ եւ աղօթեցին։ Վերջապէս հասան ի գերեզմանատուն, ուր կանխեր եկեր էին արանց հոծ բազմութենէ մի զատ՝ նաեւ ոչ սակաւ ազնիւ տիկնայք եւ օրիորդք, հասարակաց թախծութեան մասնակցելու։ Հոն յետ սրբազան պաշտամանց՝ մի մի սրտայոյզ դամբանական խօսեցան տեարքն Տեմիրճիպաշեան եւ Ս. Էքշեան, եւ քերթուած մի՝ տէր Էմմ. Եսայեան։ Յետ որոյ բացին դագաղին կափարիչը, եւ երիտասարդ նկարիչ մի ըստ կանխաւ խնդրանաց Ռուսաստանի հայոց՝ ուրուագրեց հանգուցելոյն դէմքը՝ յետոյ լուսանկարելու համար։ Այդ պահուն ամէն աչեր կ'արտասուէին վաղամեռիկ ցանկալի հայ հանճարը. եւ ողորմած քորք ծնրադիր կ'աղօթէին, պատկառա-

նօք համբուրելով դագաղին եզերքը, որոց օրինակին հե֊տեւեցան եւ այլ շատեր։

Յետոյ դագաղը հանգուցին ի հող՝ փափուկ գիտաւորու֊թեամբ մի զետեղելով Պէշիքթաշլեանի դամբարանին կից. եւ սփռելով պսակները եւ խաչերը գերեզմանին վերայ, ցրուեցան ցաւ ի սիրտ այնպիսի անդարմանելի կորստեան մի համար՝ զոր ունեցաւ ազգը։

Ադամեան դեռ կը սպասէ հոն անհամբեր՝ յաւիտենական միայնութեան եւ լռութեան մէջ, որպէս զի իւր ազգն առ ինքն ունեցած սէրը յայտնէ յիշատակաւ մի, որ քանի մի ժամու չքեղաշուք յուղարկաւորութենէ մ'աւելի երկար տեւէ։ Արդեօք պիտի հասնէ՞ իւր ակնկալութեան։



# ԳԼՈՒԽ Բ

## ԱԴԱՄԵԱՆ ԻԲՐ ՆԿԱՐԻՉ

Շատ կանուխ՝ իւր տղայութենէն՝ բոլոր հոգւով անձնա֊տուր եղած էր նկարչութեան արուեստին, եւ մեծ յարմա֊րութեան ցոյց կու տար անոր մէջ։ Անոր հետամտելուն շարժառիթն եղած էր յաճախելը լուսանկարիչ Ապտուլ֊լահեան եղբարց գործարանը, որոց յետոյ նուիրած Ջօճի մէջ յանչափս սքանչացած կը դրուատէ նոցա արուեստը։ Գեր. Ամպերպոյեան կը պատմէ, թէ «Նորա տասնա֊մեայ կամ երկոտասանամեայ հասակի մէջ տեսնելով՝ որ ա֊մէն բանէ աւելի գծագրութեան փափագ ունի, նկարչութեան ուսուցիչ մի վարձեցի, որպէս զի կանոնաւորապէս սովրի։ Ուսուցիչն երկու երեք անգամ գալէն վերջ եկաւ ըսաւ ինձ. Ես այսպիսի աշակերտի ուսուցիչ չեմ կարող լինել, նա ինձ կը սովրեցնէ»։ .

Ադամեանց տան այցելուք կը տեսնէին միշտ զՊետրոսեկ՝ գրասեղանի դիմաց գլուխը կախած, մտօք եւ զգայութեամբ գծագրութեան մէջ թաղուած։ Ոդեսայի Նովորոսեան Հեռագիրը կը պատմէ՝ թէ առեւտրական գրասենեկի մէջ այլ պաշտօն վարելու ժամանակ «չարաչար վրիպակներ կը սպրդէին ի հաշուակալութեան. թուանշանաց կարգի մէջ անկանոն կերպով կը նշմարուէին կիսադիմներ և ուրուագծեր, որք համարակալութեան հետ ոչ մի յարընչութիւն չունէին»։

Այսչափ եռանդէն եւ աշխատութենէն անշուշտ մեծամեծ պտուղներ կը յուսացուէին ապագային համար։ Բայց կանխենք յիշեցնել՝ թէ նկարչի մեծ անուն մի չժառանգեց նա։ Ասոր պատճառն յայտնի է. նկարչութիւնն Ադամեանի յարատեւ գործը չէ եղած բնաւ, այլ երկրորդական արուեստ մ'էր իրեն, կամ լաւ եւս՝ հաճելի զբաղանք մի։ Պարապոյ ժամերուն մէջ միայն, որք շատ հազուագիւտ էին, ձեռք կ'առնոյր վրձինը։ Փոքր ինչ աւելի նկարելու ժամանակ և կարօտութիւն ունեցաւ միայն իւր կենաց վերջին հիւանդագին աւուրց մէջ, երբ դարձաւ ի հայրենիս։ Հանդերձ այսու՝ կրնայ պարծել սակաւ աշխատութեամբ մեծապէս զարգացուցած իւր այդ արուեստիւ։

Նա Ռուսիոյ մէջ այցելած էր պատկերաց երեւելի սրահներ, շատ նշանաւոր նկարներ տեսած էր եւ քննած մանրազնին աչօք. ուստի եւ մասնագիտի հմտութիւն ստացած էր այդ արուեստի մէջ։ Հին նկարչութիւնը կը համեմատէր յաճախ նորոյն հետ, եւ զինքն արդի իրականութեան հակամէտ կը ցուցնէր։ Իւր արուեստագիտի դատողութեան օրինակ մ'է Կլեբեգ անուն դաշտանկարչին ձմեռնային տեսարանաց վերայ ըրած դատաստանը. «Իր նկարած ձիւնին առջեւ մրսում է մարդ. պէտք է կծկուել, բալթոյի օձիքը պէտք է վեր դարձնել. քամին անցնում է այդ նկարների խորէն, պաղը զգում ես»։ Գեղեցիկ՝ նա եւ բանաստեղծօրէն կը նկարագրէ Ա. Այվազովսքի քեր-

թուածին մէջ այլ՝ մեծ նկարչին արուեստը եւ հանճարը։ — Այժմ իւր վերայ կատարուած դատաստանները լսենք։

Վրոյր իւր բարեկամը կը խորհրդածէ. « Ադամեան իբր նկարիչ, որքան մեծ ճաշակ եւ սէր ունէր դէպ ի գեղարուեստի այդ ճիւղը, այնու ամենայնիւ կարելի է համարձակ ասել՝ որ նա ոչ թէ ստեղծագործող, այլ օրինակող էր միայն։ Բայց նա մեծ շնորհք ունէր այդ մասում։ Չնայելով որ նա գեղարուեստի այդ ճիւղը լոկ ինքնակրթութեամբ էր ձեռք բերել, բայց դէմքերը նկարում էր մեծ ճարտարութեամբ, նորագոյն կատարելագործուած արհեստի պահանջների համաձայն։... Մեծ հասկացողութիւն ունէր գոյների բաղադրութեան մասին։ Իսկ անթերի և կատարեալ էին իւր անկենդան իրաց (nature morte) նկարները, որոնց անչափ սիրում էր ». եւ իւր այս կարգի նկարներն յարգուած են ի Ռուսիա եւ ծանրագնի վաճառուած։

Բայց իւր նկարուց նիւթը սովորաբար կենդանագիրներ էին։ Մենք չենք տեսած իւր նկարները բայց Ծաղկի յօդուածագիրը Տիգրան Եսայեան նկարիչ՝ կը վկայէ, որ « եթէ դժուարահաճ մասնագէտներ իր նկարչական արտադրութեանց մէջ տեսնել ուզեն մէկէ աւելի թերութիւններ, պիտի չկարենան սակայն չխոստովանիլ, թէ ունին այնպիսի յատկութիւն մը՝ որ շատերուն կը պակսի, եւ որ չստացուիր փորձառութեամբ կամ աշխատութեամբ »։ Իսկ իւր կենդանագրաց մէջ « նկարչական բարձր իմացողութիւն կայ. շինողը շատերէն աւելի լաւ ըմբռնած է գծերու, ստուերներու, լոյսի խաղերու նշանակութիւնը ». եւ այդ կենդանագրաց « իբր հոգեբանութիւն ունեցած արժանիքը կարելի է ըմբռնել՝ միայն ճանչնալով կամ ապրած ըլլալով այն անձերուն հետ՝ որ ներկայացուած են Ադամեանի վրձինով »։ Ամէն բանէ աւելի՝ « մարդը իր հոգեկան կողմովը կարելի է կարդալ Ադամեանի նկարած աչքերուն մէջ »։

Իւր նկարչական գործերէն բաց ի վաճառուածներէն, ա-

րոց թիւն յայտնի չէ, ծանօթ են մեզ յանուանէ՝ Այվազեան նկարչին կենդանագրութիւնը, զոր նկարեց ի Թէոդոսիա եւ նուիրեց անոր, «որից, կը գրէ մի նամակին մէջ, շատ բաւական մնաց եւ հաւանեցաւ աշխատութեանս»։

Գեր. Ամպերպոյեանի կիսամարմին շքեղ եւ մեծ կենդանագիրը։

Մի Ոթելլոյ՝ իւր Փոտիատէս յոյն բժշկին նուիրելու համար։

Մի Ոփելիա, իւր մտաց գիւտ, զոր նկարեց վերջին օրերուն մէջ, եւ զոր շատ կը գովեն տեսնողները, մանաւանդ ըստ ոգեբանական մասին։

Որփէոսի ալեզարդ չքնաղ գլուխ մի, զոր իւր բժիշկը կ'անուանէր հիւանդութեան ժամանակ։

Աստուածածնի պատկեր մի՝ կիսատ մնացած, որ այժմ Վիեննայի Մխիթարեան հարց թանգարանի մէջ է։

Ճրագի ծխով սեւացած յախճապակեայ երկու պնակաց մէջ՝ ասեղի ծայրիւ գծուած մի մի ճարտարագործ դէմքեր իւր նշանաւոր խաղերէն, զոր շինեց մի երեկոյ Քաղկեդոնի Մխիթարեան վարժարանի մէջ ի քառորդ ժամու, եւ հօն թողուց յիշատակի համար։ Արուեստի յայսմ մասին շատ կը գովուի։

Եւ ուրիշ ոչ սակաւ գեղեցիկ ուրուագծեր։

Իւր այդ աշխատութիւնք կը վկայեն՝ թէ Ադամեան անուանի նկարիչներէն մին պիտի լինէր, եթէ իւր կարողութիւնը սոսկ այդ արուեստին նուիրէր։

Փափաքելի էր, որ իւր գործերը փոխանակ վաճառելու և ցրուելու օտարաց մէջ, միասին պահուած՝ կամ գէթ մեծ մասն մեր ազգի մէջ մնացած լինէր։ Նմանապէս փափաքելի էր՝ որ նորա վրձնոյն բոլոր պտուղները ծանօթանային, որպէս զի ապագայն գոնէ յիշէ անոնց անուանքը, եթէ չկարողանայ մատամբ ցուցնել։

# ԳԼՈՒԽ Գ

## ԱԴԱՄԵԱՆ ԻԲՐ ԲԱՆԱՍՏԵՂԾ

Ցայսմ մասին Ադամեան պատկառանք ազդած է իւր ծանօթից վերայ, եւ յոյս ունինք՝ թէ իւր առաջիկայ բանաստեղծութեանց հրատարակութիւնն այդ ազդեցութիւնը պիտի տարածէ նա եւ իրեն անծանօթից վերայ։

Նորա բանաստեղծական խանդի արծարծման առաջին լուցկին կը լինի մանուկ հասակին մէջ՝ գեր. Ամպերպայեանի Քրիստինէականը, զոր միշտ կը կարդար՝ կ՚ըսեն։ Իւր ծարաւն հետ զհետէ աւելի բորբոքեցաւ. եւ նա եղջերուի պէս վազեց գտաւ ազգին միւս բանաստեղծական յորդ աղբիւրները, զԱլիշան, զԲագրատունին, զՀիւրմիւզեան, և սկսաւ մշակել իւր տաղանդը։ Առ Մխիթարեանս Ողբերգին մէջ այսպէս կ՚երգէ.

«Նոքա նախկին եղան քայլից առաջնորդ.
Նոցա գըրեանք հարթեցին ինձ մի շաւիղ.
Նոքա արին վսեմին՝ բարւոյն ինձ հաղորդ,
Փոյթ լարելով սըրտիս խանդին իմ տաւիղ»։

Բազմավիպէն այլ մեծապէս օգտուած կ՚երեւի գրականօրէն. եւ լսած ենք՝ թէ յաճախ կ՚ըսէր. «Ինչ որ եղայ՝ Բազմավէպով եղայ»։

Զուգելով հոս այլ եւս երկար խօսել, անցնինք պարզել մեր տեսութիւնքը նորա բանաստեղծ հանճարոյ մասին՝ իւր երկոց հետազօտութեան մէջ։

Նորա բանաստեղծական քերթուածներէն իբր գլխաւոր գործեր, ցարդ լոյս տեսան երկու հատորներ. մին, 1880 տարւոյն ի Տփղիս, եւ միւսն՝ առաջիկայ հատորը։

Առաջնոյն հրատարակիչը Սեն. Արծրունի՝ անոր յառա-

ջարանի մէջ այսպէս կը գրէ. «Յիշեալ բանաստեղծութիւններն ոճը մի նոր երեւոյթ է մեր գրականութեան մէջ։ ինքնուրոյն, բայց միանգամայն կենդանի եւ կենսական դարձուածներով, զանազան գոյներով եւ բազմաճիւղ հոգեկան շարժուածներով լի, ազատ աղբիւրից բըղխած մարդկային եւ արտաքին բնութեան արձագանգ են հնչում այդ ոտանաւորները։... Այն հոգեբանական բանաստեղծութիւնը, որ կայ պ. Ադամեանի քերթուածների մէջ, մենք չենք կարդացել մեր գրականութեան մէջ. այն հոգեբանական բանաստեղծութիւնը, որ Բայրոնի եւ Պուշկինի լիրան կը նուագէ. այն է՝ համաշնչութիւն մարդկային սրտի եւ արտաքին բնութեան»։

Այս բոլոր ձրիւք հանդերձ կը գրէ Վրոյր. «Այդ ոտանաւորները որքան էլ մի զգայուն սրտի եւ վառ երեւակայութեան արդիւնք էին, այնու ամենայնիւ գրական մեծ արժանաւորութիւն չունէին»։ Ստոյգ է. ադոնք՝ ընդհանրապէս որչափ եւ զոյգ կ'ընթանային Բիւրոնի և Պուշկինի քնարի ձայնին հետ ըստ նիւթոյն, — նիւթ մի, որ չէ փափաքելի խոհական բանաստեղծին՝ նոցա զգեցուցած կերպարանաց տակ, — այլ մի բան պակաս է իրենց մէջ, յիշեալ բանաստեղծից հանճարը։ Որովհետեւ նախ՝ Ադամեան զանոնք գրեր է այն ժամանակ՝ երբ իւր հանճարը զարգացնելու հետ էր տակաւին. եւ երկրորդ, զի իւր գրիչն ամենայն կատարելութեամբ հանդերձ՝ չէր սակայն Բիւրոնի կամ Պուշկինի գրիչ։ Նոցա հանճարը, որ պիտի լինէր իբր մի ընտիր հոգի՝ միակ նկատելու արժանի իր՝ տգեղ մարմնոյ մի մէջ, պակսելով Ադամեանի այդ քերթուածոց մէջ, մնացած է սոսկ Ճիւքը, այն նիւթն՝ յորմէ յետոյ ինքն այլ զզուեցաւ։ Նիւթն է, որ իւր զանազան պատիր, եթէ կ'ուզէք՝ եւ ճարտար գոյներով, — որոց բաղադրութեան մէջ է Ադամեանի առաւելութիւնը, — կը պատկերանայ հոն. որոյ համար կրնանք ըսել հրատարակչին հետ՝ թէ այդ «ոճը մի նոր երեւոյթ է մեր գրականութեան մէջ»։

***

Սակայն այդ նիւթոյ անթափանց քողին ներքեւ կը նշմարեն ապագայ գեղեցիկ հանճար մը: Ցտրիզ խոնձի մ՚է՝ պատրաստ աղուամազով, զոր պիտի թօթափէ ժամանակը եւ պիտի յայտնէ սիրուն գոյնը եւ համը. խոհականութիւն եւ գիտութիւն:

Նոյն հատորի մէջ յիշուած կան քանի մի քերթուածներ այլ, ինչպէս Հայրենիք, Որդեկորոյս մօր ողբ, Ի յուղարկաւորութեան մանկան; Պուլպուլն դրախտին ի գերեզմանս հայոց, եւ այլն, որք յերիւրուած են գողտր եւ գեղեցիկ իմաստներով:

Բանաստեղծ Ադամեանը պէտք է տեսնել առաջիկայ երկրորդ հատորին մէջ: «Աւելի ընտիր, լուրջ եւ կատարելագործեալ են, կ՚ըսէ Վրոյր, իւր վերջին տարիներում գրածները... Նոցա մէջ կայ աւելի բանաստեղծութիւն, ճաշակ եւ միտք. իսկ իբր նկարագրական՝ գեղարուեստական գրուածներ, հիանալի են»:

Ասոնց մէջ Ադամեան կը ներկայանայ որպէս փորձ բանաստեղծ, հանդիսատես մարդկային կենաց բոլոր տեսարանաց: Զերծ լինելով հոս նիւթոյ եւ զգայութեանց նախկին կապերէն՝ յորս արդ կը նկատէ «դառնութիւն» եւ «թոյն», զհոգին ունի միշտ իւր աչաց առջեւ, եւ իւր երգոց նպատակ. հոս է բուն «հոգեբանութիւնը»: Գիտէ այսուհետեւ զատել գեղեցիկը տգեղէն, պատուականը անարգէն. մեծարել միշտ առաջինը եւ անգոսնել երկրորդը:

Իւր առաջիկայ քերթուածներն առ հասարակ կը բաժանուին՝ կենցաղականք, բարոյականք, կրօնականք եւ իմաստասիրականք. ասոնց մէջ կան եւ շատեր՝ որ այդ չորս մասունքն այլ, որք արդէն ի բնէ անբաժան են իրարմէ, իրենց մէջ ունին: Մի մարդ, որ իրեն պաշտօն ունէր հրահանգել մարդկութիւնը թատերաբեմի վերայ, զայնպիսին անշուշտ չէին կրնար հրապուրել ոչ լեռներ եւ դաշտեր, ոչ հովիտք եւ վտակք, ոչ ծաղկունք եւ թռչունք, բայց դուն ուրեք կամ դիպուածով: Նորա քնարն ամբաւ նիւթ

կը կանչէր բնութենէ դուրս՝ մարդկային աշխարհի մէջ. Նիւթեր՝ աւելի կարեւոր եւ չնաշխարհիկ քան զառաջինս։

Իւր քերթուածներէն ոմանք կը նկարեն մեր առջեւ երջանկութիւնը եւ թշուառութիւնը, չարութիւնը եւ առաքինութիւնը երկրիս վերայ՝ այնչափ վառ եւ կենդանի, քան զոր լաւագոյններն կարելի չէր սպասել. զոր օրինակ Լէանանճրոգբրիւն; Հանրինցուան; Կիկօ եւ այլք։ Ոմանք կը յունաւորեն կենաց մթին խորշերը, յորս ամէն աչք չեն կարող դիւրաւ թափանցել եւ տեսնել, ինչպէս Խեղճ ուսանողն, Ձիւնուորն մահուներձ; Պերասանն։ Ոմանք կը նշանակեն կենաց եւ կենցաղականաց ունայնութիւնը՝ որոց այնչափ կախարդեն կը փարի խեղճ մարդկութիւնն. ասոնց կարգէն են Առ զանեին, Առ մայրն; Փշրուած յոյսեր։ Յոյժ ճարտար է գիւտը եւ հիւսուածն Հնացած հինգ կոպէկանոցի պատմուածքան, որուն մէջ մանրամասն ի տես կու գայ մարդկային ամբողջ աշխարհը; եւ յորում հեղինակը ցոյց կու տայ խորհրդոց անչափ առատութիւն մի։ Արժանապէս եւ իւր բանաստեղծական բոլոր խանդովը երգեց ազատութեան եւ տառապեալոց երկու ախոյեանից՝ Վիկտոր Հիւգոյի եւ Ռաֆֆեայ յիշատակները մի մի մահերգով, դուրս ցալացնելով իւր բովանդակ ազատասէր եւ ժողովրդասէր ոգին, անանելապէս դադրեցի քերթողին նուիրածին մէջ։

Երգիծաբանական հրանալի կարողութիւն մի ցոյց տուաւ Երեսփոխանի մի դէմ գրածովը, յորում շատ ճարտար գիւտերով կը ծաղրածէ զնա, նորա ներքնէն եւ արտաքնէն քաղելով իւր փաստերը։ Նոյնչափ ճարտար հանդիսացաւ նա եւ Գայլերուն մէջ, այդ անուամբ ակնարկելով անխիղճ քաղաքացիները, եւ յորդորելով շինականները՝ փախչել անոցմէ իրենց համեստ բնակավայրերը։ Առ հասարակ սուր է իւր գրիչը եւ բուռն իւր թափն ընդդէմ անիրաւաց եւ անողորմից առ տառապեալս, ուր այնչափ հեզ եւ ներողամիտ էր առ ինքն եղած զրկանաց դէմ։

Մեր բանաստեղծին ձիրքերն են՝ զուարճացնել միտքը

կամ բոլբոքել ըստ տեղւոյն, եւ միանգամայն համոզել. զգալ նախ եւ ապա զգացնել. սրտով սրտի հետ խօսել, եւ մտօք մտաց հետ. եւ իբր գերազանց մի շնորհ, աստուածային բարձր ճշմարտութիւնքը եւ անոնց աղբիւրը քնարի լարից վերայ հրապուրելի գործել հետեւողաց «տաղանդաւոր հիւանդաց», ինչպէս կը գրէ։

Իբր ոճ, գիտէ նա ըստ տեղւոյն եւ ըստ հանգամանաց վայելչապէս միացնել իւր տաղից մէջ վսեմը պարզին, ուժգինը փափկին եւ գեղեցիկը ճշմարտին հետ։ Այդ բոլորը միանգամայն պայծառացուցած է բնականութեան գեղով։ Այո՛, ընտիր բանաստեղծի փոյթը պիտի լինի՝ իշխել երեւակայութեան վերայ, եւ թոյլ չտալ՝ որ անբնական եւ անհեթեթ պատկերներ յառաջ բերէ։ Եւ ուր միտք, բնութիւն եւ սիրտ զոյգ կը գործեն, ինչպէս Ագամեանի մէջ, ահա հոն է բուն բանաստեղծը. հոն է՝ որ բանաստեղծութիւնը կը շարժէ ընթերցողին հոգին, կը դիւթէ միտքը, կ'ազնուացնէ սիրտը։ — Կ'արժէ որ քանի մի օրինակ յառաջ բերենք Ագամեանի քերթուածներէն։

Իբր օրինակ վսեմ բանաստեղծութեան՝ պէտք կարդալ գլխաւորապէս նորա կրօնական քերթուածները. մանաւանդ երբ զԱստուած կը նուագէ, տիեզերաց մէջ ամենէն վսեմ էակը, իւր գրիչը բարձր, շատ բարձր կը խոյանայ, մի աստուածային թռիչ կը ստանայ։ Աղօթում ես առ այն քերթուածին մէջ ասոր մի փոքր օրինակ կ'ընծայեն հետեւեալ տողեր.

«Գիտ' աղօթեմ միշտ առ այն, որ իմաստուն օրինօք
Երբեմըն վրէժ կը գոռայ Սինայի սեպ ի կատար,
Եւ երբեմն էլ փշապըսակ Գողգոթայի բարձրերից
Սէր քարոզէ, մի խաչի վրայ գամուած՝ ի ցաւս, տի-
[գահար»։

Աստուծոյ հետ խօսելու ժամանակ սովոր է յաճախ յիշեցնել անոր՝ իւր բարութիւնն առ արարածս, և այնու

ողղքել նորա գութը։ Այսպէս՝ Առ Աստուած քերթուածին մէջ կ'երգէ,

« Դու որ մըրրկեանն անգամ յերկիր
Լըցիր խնամօք միշտ կարեկիր,
Ծիծռան յայերս, կիտին ի ծով
Կեանք տուիր եւ թռիչ քոյդ իսկ բոցով.
Ես՝ որ ըղձեզ իմ մէջս ըզգամ,
Չի 'տի կորչիմ զինչ անըզգամ » ։

Այդ ոճը աւելի ճոխաբար գործածած է Առ Ցանկալիս աննման եւ ամենահամ քերթուածին մէջ, զոր գրեց իւր կենաց վերջին օրերը, առիթ առնլով Արեւելքի մէջ այդ ժամանակներ յիշեալ կեղծանուամբ հրատարակուած քանի մի յոռետես յօդուածները. մի քերթուած, յորում աքանչելապէս բռնած են իրենց մասերն՝ Աստուած եւ բնութիւն, կեանք եւ մահ, իւր իսկ մահը մօտալուտ. եւ զոր մահուան անկողնի մէջ բռնած ի ձեռին, մեծ եռանդեամբ կը կարդար իւր այցելուաց։ Ահա այդ տողեր.

« Այն ձեռք կըրկին սըփռէ համայն ի տիեզեր՝
Ինչպէս աւազն յովկիանու ծովեզեր,
Նոյնպէս զաստեղս երկնից ի ծոց անթափանց,
Իբրեւ կաթիլք արարչագործ իւր քըրտանց.
Նա է որ տայ կեանք, մահ, արցունք, ժպիտ, կարօտ,
Շանթն ի մըրրիկ, ձիւնն ի լերինս, ցօղն յարօտ.
Վագրին ճիրան, առիւծին բաշ եւ երախ,
Արծուին մագիլ, այլ սոխակին երգ ուրախ » ։

Քնարը նորա մատանց ներքեւ ինչ աշխուժիւ որ յառաջ երգած էր սէրը, նոյնչափ՝ եւ շատ աւելի քաղցրութեամբ, ճարտարութեամբ եւ ուժգնութեամբ կը նուագէ նոյնը՝ — բայց այժմ աստուածացեալ, — սոյն եւ ի ծնունդ փրկչին, Թափօր աւագ ուրբաթ երեկոյին եւ Շնորհաւոր սուրբ զատիկ՝ երկնաշունչ քերթուածոց մէջ։

Գողտրիկ բանաստեղծութեան չքնաղ են՝ **Ալիք Ծովեզ-րին**, **Առ Ստեփան Մամիկոնեան**, **Որսանորդի նամակը** եւ **այլք**։ Առաջնոյն մէջ ինք բանաստեղծն է, որ Թափառական ի Ռուսաստան եւ հեռի ի սիրելեաց՝ կը տառապէր կարօ-տագին։ Յունիսի օր մ'է. կը վազէ ծովեզրը՝ արտասուա-լից աչերով, լուր կը խնդրէ ալիքներէն.

« Ալիք, ալիք,
Տըւէք խապրիկ
Յիմ սիրելեաց,
Որք անմոռաց
Են միշտ սըրտիս.
Գալիս գալիս՝
Լուրեր բարիս
Տուէք պանդըխտիս »։

Անցեր է վերջին չարատանջ ձմեռն իւր հիւանդագին կենաց. ապրիլը կ'ողջունէ զինք պատուհանէն. դուրսը կը լսէ ծիծռան ձայնը, սիրտը կը յուզուի, եւ կ'ըսէ անոր.

« Սալ դու, ծիծեռնակդ իմ գարնանաւետ,
Սլացի՛ր ու գընա մօտ իմ Ստեփանիս,
Մի թեթեւ գրիչ տուր քո նախշուն թեւէդ՝
Որ չուշացընէ զիւր նամականիս »։

Կը փակենք հոս այս գլուխը, վախելով ջլատել եւ նուաղեցնել սոյնպիսի կտորակներով այն ախորժ ազդեցութիւնը, զոր պիտի ունենան կարդացողք՝ Ադամեանի քերթուածոց ամբողջական ընթերցմամբ։



# ԳԼՈՒԽ Դ

## ԱԴԱՄԵԱՆ ԻԲՐ ԻՄԱՍՏԱՍԷՐ

Այդ անունը չենք տար Ադամեանին այն իմաստիւ՝ որով որ եւ է քաշքշուած գրական մարդ կրնայ իմաստասէր կոչուիլ. — եւ կամ երբեմն առանց խորհել անգամ կարենալու՝ նոյնպէս կը կոչեն... իրենք զիրենք. այս մեր հաշուէն դուրս է։ — Անոր հակառակ, Ադամեան բուն իսկ իմաստասիրական հմտութեամբ արժանացոյց զինքն այդ անուան։

Ի սկզբան յիշեցինք Մրձի մէջ լոյս տեսած յիսուն նամակները, որոնք առ հասարակ գործոյ կամ բարեկամական խանդակաթ սիրոյ թղթեր են. եւ հետեւաբար գրական արժէք չունին, բայց լաւ կը պարզեն գրողի հոգին եւ սիրտը։ Ասոնց մէջ կայ մին, թիւ 35, գրուած 1889 տարւոյ աւգ. 30ին, ի մխիթարութիւն մտերմին՝ նորա քրոջ մահուան առթիւ։ Այդ հիանալի է իւր բովանդակութեամբ. աղո՛ր մէջ Ադամեան հանդիսացաւ մի իմաստասէր։ Յիրաւի իւր բանաստեղծութեանց մէջ այլ ցոյց տուաւ նա իւր իմաստասիրութիւնը, բայց հոս ընդարձակագոյն կերպիւ յայտնեց իւր հաւատքը եւ համոզումները։ Յիշենք եւս՝ թէ այդ թուղթն աւելի վարդապետական է քան թէ վիճաբանական՝ որ իւր յիշեալ հանգամանաց չէր պատշաճեր։ Հանդերձ այսու դա աղամանդ է մեր գրականութեան համար։ Չէինք փափաքեր՝ որ զայն գրելու տխուր առիթը կրկնուէր. բայց կը ցանկայինք՝ որ այդպիսի թղթեր շատ լինէին. եւ արդեօք չկա՞ն նա եւ այլոց քով։ — Դառնանք տեսնել թղթոյն բովանդակութեան մէջ նորա իմաստասիրական տեսութիւնքը։

Ծանօթ են Նիւթապաշտ իմաստասէրք, որք իրենց բոլոր

կարողութիւնը մարմնոյն աչաց վերայ ամփոփած, կ՚ուրանան ամէն ինչ՝ ուր չեն հասներ անոնք. եւ հետեւաբար չեն ուզեր ճանաչել տիեզերաց անտես արարիչը եւ հոգին։ Աղամեան իբր քրիստոնեայ իմաստասէր՝ հակառակ էր անոնց։ Նա կը հետեւէր «հոգեկան աստուածային բարձր փիլիսոփայութեան». եւ կը զարմանայր նոցա վերայ, որ ուրիշ փիլիսոփայութիւն կը դաւանէին։ Կ՚ընդունէր նա՝ թէ ուր մեր միտք կամ զգայարանք չեն հասներ, հոն պէտք է հաւատոյ թեւոց վերայ ապաւինել. հաւատոյ, որոյ հիմունքը նոյն իսկ բնութեան մէջ են. եւ այդ կերպիւ գտած էր զԱստուած։ Իւր այս համոզումն այսպէս կը պարզէ Աղօթում եմ ես առ այն քերթուածին մէջ.

«Փոյթ չէ բընաւ ինձ դիմել իմ խեղացը կորովին,
Երբ ամէն ինչ իմ շուրջը բացատրում է ինձ նորան.
Մի՛ թէ արժա՞ն եմ ես մարդս տեսնել ըզնա աչքերով.
Բաւական չէ՞ որ իմ սիրտ նորա սիրոյն է խորան»։

Մենք տեսանք՝ թէ ինչպէս յափշտակուած կը խօսէր նա Աստուծոյ վերայ մահուան անկողնոյ մէջ, խօսակցութեան պահով, նիւթով եւ լեզուաւ յիշեցնելով մեզ զՍոկրատ։ Նա Աստուծոյ վերայ այս գաղափարս ունէր ըստ իւր նամակին. «Կը պաշտեմ զԱստուած, համոզուած լինելով՝ որ աղբիւրն է սիրոյ, արդարութեան, բարւոյ եւ ներդաշնակ ճշմարտութեան և օրինաց»։

Կը հաւատար նա եւ հոգւոյն, զոր «բղխած» կը համարէր գերագոյն էակէն՝ «որին պաշտում է՝ Աստուա՜ծ աղաղակելով»,

«Ջորն ըզմայլմամբ անուանէ՝ իմ հայր եւ տէր ըստեղծող»։

Եւ չէր կարող ընդունել՝ որ նա յետ մահուան ոչընչանայ. նորին հակառակ՝ «մարմնոյ ապականութիւնն է, կ՚ըսէ նոյն թղթի մէջ, որ կը վերակենդանացնէ հոգին. գերեզմանը կեանքի օրօրանն է. մարմնական մահը հոգե-

կան ծնունդ է»։ Հոգին յետ մահուն «կը պահպանէ իր ինքնաճանաչութիւնը աւելի որոշ կերպիւ՝ քան թէ մարմնոյ մէջ եղած ատեն»։

«Տարիներից ի վեր, կը յաւելու, խորհում, կարդում եւ մշակում եմ այս սուրբ եւ բարձր գիտութիւնը, ուսումնասիրելով Եւրոպայի հին եւ նոր փիլիսոփաները, լաւ քննելով եւ ըմբռնելով Քրիստոսի երկնանուէր վարդապետութիւնը»։

Առ այս իրեն մի ուրիշ շաւիղ ընտրած էր ոգեհարցութիւնը, որում յարած էր բոլոր սրտիւ, մանաւանդ վերջերը։ Շատ գիշերներ բարեկամներով կանաչ սեղանի շուրջ նստած, կը կոչէր իւր հօր, մօր եւ ուրիշ իրեն սիրելի եւ մեծարելի հին եւ նոր անձանց հոգիները, հարցումներ կ՚ընէր, գաղտնիքներ կը փնտռէր։ Այսու, կ՚ըսէ, «շատերի նման ես էլ արտասուալից աչքերով եւ երախտագէտ սրտով համոզուեցայ եւ ընդունեցայ այն անհերքելի աստուածային ճշմարտութիւնները, որք փոքր առ փոքր տարածուելով պիտի զարգացնեն մարդկութիւնը, նրան առ Աստուած բարձրացնելով»։ — Այդ ճշմարտութեանց «արտասուալից աչքերով եւ երախտագէտ սրտով համոզուել եւ ընդունելը» կը ցուցնեն՝ թէ ինքն այլ ի սկզբան անոնց նկատմամբ ունեցեր է՝ թերեւս ընթերցմամբ նիւթապաշտ մատեններից՝ տարակոյսներ եւ տատանումներ (1)։ Նորա այս խոստովանութիւնը գեղեցիկ օրինակ մ՚է մեր իմաստասէր երիտասարդաց համոզուելու՝ թէ կրօնից ճշմարտութիւնքը մերժելը կամ արհամարհելը տակաւին տհաս եւ թերուս մտաց արգասիք է։

Աղամեան կը հեգնէ Ռիւշթոյ պաշտօնեայքը, որք իրենց

1. Բաւ է՝ որ այդ խօսքը հարատամանաբար, բարեկամին վերայ ազդելու համար ըսած չլինի. որովհետեւ ուրիշ անգամ այլ բերանացի ըսեր է՝ թէ «երբէք սուրբ կրօնիս վերայ տարակոյս ունեցած չեմ». զայս յետոյ աւելի ընդարձակաբար պիտի տեսնենք։

ուսումն «աւարտել են» (փակագծի մէջ կը յաւելու՝ «ու-սումը երբէք չաւարտիր») Գերմանիոյ մէջ՝ ընթերցմամբ քանի մի չնչին փիլիսոփայից, որք «իրանց ծուռ վարդա-պետութեամբ եւ անձնապաստան խելքի հպարտութեամբ ցամաքացրել են մարդուս հոգին, եւ իրենց գրքերով մի պատ են հիւսել ու բարձրացրել մարդկանց աչքին՝ որ չի կարողանան տեսնել զԱստուած»: Յետոյ մարդոյս հոգ-ւոյն անմահութիւնը եւ մեծին Աստուծոյ գոյութիւնը հաս-տատելու համար, Թողլով՝ կ'ըսէ՝ աշխարհիս ստեղծմանէն ի վեր մարդկութեան տուած անհերքելի փաստերը, Թող-լով կռապաշտութեան Թանձր խաւարի մէջ անմահին Աս-տուծոյ եւ հոգւոյ անմահութեան յանկարծ հաւատացող եւ քարոզող Սոկրատը կամ Պղատոնը, ոգիներու երբեմն եր-բեմն տուած յայտնութիւնները, Բրահմանաց, Բուդդայից ու Հնդիկ կրօնաւորաց (փաքիր) աստուածապաշտ վարդա-պետութիւնը, «չնայելով՝ որ նոցա գիտութիւնը անհա-մեմատ բարձր է հիմակուան մեր նիւթապաշտների գի-տութիւնից,... գանք մի միայն մեր հոգւոյ բնազդմանն ու մտքի տրամաբանօրէն լուրջ դատողութեանը»: Ապա իբր աւելի ապահով եւ մերձաւոր աղբիւր փաստից՝ կը սկսի զննել բնութիւնը, եւ հոն «մի չնչին խոտի, մի Թիթռան, մի կաթիլ ջրոյ գոյութեան,... ամենայետին մի սողունի, մի անբան կենդանւոյ կենաց մէջ» անգամ կը գտնէ նա-խախնամ աջ մի եւ նպատակ մի: Կը քննէ մարդոց կազ-մուածի եւ վիճակի մէջ գտուած անհաւասարութիւնը, մարդ-կային գործոց իրերաց հակառակութիւնը. եւ ասոնց եւ բոլոր բնութեան մէջ եղած գաղտնի դաշնակաւոր կապը զննելով եւ դիտելով, գոգցես կը տեսնէ եւ կը շօշափէ զԱստուած: Ապա կը ցուցնէ՝ Թէ իմաստուն, արդար եւ բարի է նա մեր երկրիս վերայ անպատեհ եւ անհարթ կար-ծած դիպաց եւ գործոց մէջ:

Առ այս գեղեցիկ է հետեւեալ կտորը. «Եթէ լաւ տես-նենք եւ մտածենք, կը տեսնենք՝ որ մեր շուրջը ամեն ինչ

սէր, իմաստութիւն եւ հայրախնամ գթութիւն է. ամէն ժամուն մէջ մի արցունք կայ՝ ժպտին արժէքը դուրս բերելու համար, ամէն ուրախութեան մէջ մի տխրութիւն. ինչպէս ամէն սեւ գրեր մութ յատակի վրայ կ'որոշուին, եւ ամէն մութ գրեր՝ սպիտակ կամ լուսաւոր յատակի վրայ. օրը գիշերուան եւ գիշերը օրուան հակապատկերն է, նոյնպէս հոգին էլ մարմնոյն. զի մարմինը գիշերն է հոգւոյն, ուր բոլոր երկրային ցած կրքերովն ու ձգտումներովը. եւ այդ գիշերուան խաւարին մէջ՝ խիղճն ու բանականութիւնը մեզ ջահ են առաջնորդ, որպէս զի հոգեպէս ճանչնանք զԱստուած, չդատենք նորան՝ մեր աշխարհի վրայ տեսնուած անկատար եւ աններդաշնակ դէպքերի վրայ հիմնուելով, ու մեր երկրային վշտերովն ու կրքերովը։ Եւ այն ժամանակ պիտի գտնենք ու տեսնենք այն Աստուածը, այն բնութիւնը, որ արդար, իմաստուն եւ բարի է, եւ ոչ անխիղճ»։

Հոգւոյ գոյութիւնը մի տեղ կ'ուզէ հաստատել նոյն ինքն մարդոյս ներքին վկայութեամբ. երբ, կ'ըսէ, «ընկերին բարիք անելով, զգան իրանց սրտի խորքում մի անբացատրելի սուրբ եւ խաղաղ ուրախութիւն, արդեօք ի՛նչ բացատրութիւն կը տան այն զգացմունքին. արդեօք կը յանդգնի՞ն ասել՝ թէ այդ զգացումը, այդ երջանկութիւնն էլ նիւթից լինի»։ — Իսկ ի պաշտպանութիւն հոգւոյն անմահութեան կ'ըսէ. «Ի՞նչ է յանցանքը վատ ծնող խեղճին եւ արժանիքը բարի ծնողին։ Ինչո՞ւ առաջինը լինի մարդասպան, խարդախ եւ բթամիտ, եւ երկրորդը հանճարեղ բարի կամ տաղանդաւոր։ Եթէ երկուսն էլ ոչընչից են գալիս՝ կրկին հոգեպէս էլ ոչընչանալու համար, ի՛նչ անարդար բան է այդ եւ ի՛նչ յիմար աններդաշնակութիւն է այս՝ յաւիտենական իմաստուն ներդաշնակութեան մէջ»։

Երկիրս նորա համոզմամբ՝ փորձանաց վայր մ'է. երջանկութիւն կարելի է գտնել «շատ քիչ անգամ, դորա համար՝ որ մարդիկ երջանկութիւնը նիւթական հաճոյքների

մէջ են փնտռում եւ միշտ զուր է գնում իրանց ջանքը։ Հոգեկան ձգտումների եւ վայելքների մէջ կարելի է միայն գտնել ճշմարիտ երջանկութիւնը»։ Ասոր համար նա վերջերը կը խրատէր իւր բարեկամներն «աննիւթանալ»։

Իւր տղայութեան ժամանակ դիմագծութեան եւ գանկաբանութեան վերայ ունեցած հաւատքը միշտ պահեց, «Մարդիկ, կ'ըսէ, մեծաւ մասամբ ծնւում են՝ դէմքի գծերի, կամ գանկի ելեւէջ ուռոյցների վրայ ունենալով իրանց լաւ կամ վատ յատկութեանց շօշափելի նշանները, եւ որոնց մասին այլ եւս չէ սխալւում գիտութիւնը»։

Իսկ մարդոց երկրի վերայ ունեցած վիճակի զանազանութիւնը կը մեկնէ «հոգեփոխութեան վսեմ օրէնքով», որ գիտենք թէ հնդիկներէն եւ եգիպտացիներէն սկսած է, եւ զարգացած Պիւթագորայ եւ Պղատոնի ձեռօք։ Ահա թէ ինչպէս կը մեկնէ. «Չարը, կ'ըսէ, արդէն նոր է սկսել իւր մարդկային առաջին գոյութիւնը անասունից»։ Յառաջ տեսանք՝ թէ կ'ընդունի հոգւոյ անմահութիւնը եւ Աստուծմէ լինելը. իսկ հոս «անասունից» բառը նորօրինակ է։ Եթէ այսու հին հոգեփոխականաց պէս կը հասկանայ՝ թէ չար մարդոյն հոգին իւր մարմնոյ մեռնելէն վերջ անասնական մարմնոյ մէջ ղրկուեր է պատժոյ համար, եւ անտի վերստին դարձեր մարդկային նոր մարմնոյ մէջ, սխալ է նախ՝ «մարդկային առաջին գոյութիւն» կոչել զայն. երկրորդ, հոգւոյն անասնական մարմնէն յետ դառնալն՝ ըստ նոյն հոգեփոխականաց նշան է նորա զգաստանալոյն. ուրեմն ըսելը՝ թէ այնուհետեւ դեռ չար է, նոյնպէս հակառակ է հնոց։ Իսկ եթէ «անասունից» բառիւ կը պաշտպանէ բարեշրջման վարդապետութիւնը, — որ է տեսակ մի նիւթապաշտութիւն, — այն եւս հակառակ է բարեշրջականաց, որք նախ՝ մարդկային առանձին աննիւթ եւ անմահ հոգի չեն ընդունիր. եւ երկրորդ, յանասնոց յառաջ եկած կը դնեն մարդկային ազգը, եւ ոչ անհատը կամ «չարն» ըստ Ադամեանի, որ հակառակ է մեր զգա-

յարանաց եւ մտաց։ Հետեւաբար Ադամեանի այդ խօսքը գաղափարաց խառնակութիւն մի համարելու ենք առ այժմ։

Ապա յառաջ կը տանի իւր խօսքը՝ հոգեփոխութեան դրութեան համեմատ. «Թշուառը քաւում է իւր երկրորդ կամ առաջին գոյութեան մի յանցանքը։ Խելացին, զօրեղը՝ ուրիշ մի գոյութեան մէջ բարւոյն շնորհիւ արժանացել է այդ կրկին շնորհաց, որպէս զի իւր նմանները զարգացնէ։ Հարուստը կամ փորձուելու է ենթարկուած, եւ կամ այն ստակը որ ունի իւր մէջ, անցեալ գոյութեան մէջ գործած բարութեանը պարգեւն է... Հարիւրաւոր հատորներ կան գրուած անհերքելի փաստերով ստուգելու համար՝ թէ մարդուս հոգին ենթարկուած է բազում անգամներ մարմին հագնելով կենաց պայքարին մէջ զտուելու, փորձուելու, զարգանալու եւ մաքրուելու նիւթական կրքերից»։

Յայտնապէս կը տեսնենք այդ վարդապետութեան հին հոգեփոխութեան հետ նոյնութիւնը։ Մեր կողմանէ բանագրօսութիւն կը լինէր թերեւս՝ զայն մարդոյս մի եւ նոյն կենաց մէջ կրած վիճակի պէս պէս փոփոխութիւնքն իմանալ. իսկ «բազում անգամներ մարմին հագնելը՝» մարմնոյ մանկանց բոլոր կենաց մէջ քանի մի անգամ կատարած ամբողջական փոփոխութիւնքը։ Որովհետեւ ուրիշ տեղ մ'այլ կ'ըսէ այնպիսի խօսք մի, որ մի եւ նոյն մարմնոյ մէջ վիճակի յիշեալ փոփոխութիւնքը չդնելու կամ չընդունելու երեւոյթն ունի. «Ի՞նչէ պատճառը, կ'ըսէ, որ մինը ծնի լաւ շրջանի մէջ, լաւ զարգանայ, լաւ ապրի, հանգիստ էլ մեռնի, եւ դէնը գտնուող ընկերը՝ որ հաւասար եղբայրն է նորա՝ Աստուծոյ առաջ, ծնի վատ շրջանի, վատ օրինակաց մէջ, վատ ապրի եւ վարթար մեռնի». ուրեմն այդ վարթար ապրած հոգին պէտք է՝ որ ուրիշ անգամ այլ ծնանի նոր մարմնով՝ «մաքրուելու նիւթական կրքերից» եւ լաւ մեռնելու համար։ Զայս մենք կը հետեւեցնենք։ Իսկ բոլորովին անհնար կը թուի մեզ՝ «Զարը արդէն նոր է

ընկնել...» խօսքը ուրիշ կերպ մեկնել՝ քան ինչ որ ի վերեւ մեկնեցինք։

Միւս կողմանէ գիտենք՝ թէ Աղամեան «լաւ քննելով եւ ըմբռնելով Քրիստոսի երկնաւոր վարդապետութիւնը»; եւ ինչպէս հիւանդութեան ժամանակ գրած է՝ թէ «Ես միշտ հաւատացեալ եղած եւ մնացած եմ, երբեք Աստուծոյ, աստուածային իրաց եւ սուրբ կրօնիս վերայ տարակոյս ունեցած կամ սկեպտիկեան եղած չեմ», պէտք էր համոզուած լինել այնու՝ եւ իւր իսկ փորձով՝ թէ մեր հոգին կենաց զանազան վիճակներէն անցնելու համար հարկ չէ որ բազում անգամներ մարմին հագնի. պէտք էր հաւատալ եւ կը հաւատար իւր աչաց, որք կը վկայէին՝ թէ մարդ մի եւ նոյն մարմնով կը ճաշակէ կենաց թէ դառն եւ թէ անոյշ պտուղները. եւ բիւրաւորք՝ որ նախ մի մարմնոյ մէջ չարագործք էին, փորձուելով զտուելով, նոյն մարմնոյ վախճանէն շատ տարիներով կանուխ արդէն փոխուած եղած էին «լուսափայլ հաւատացեալ հոգիներ» «մերձեցած այն աղբիւրին՝ որից բղխած էին». եւ որոց համար ստուգիւ «գերեզմանը ճշմարիտ կեանքի օրօրանն» եղաւ, եւ այլ պէտք չեն զգար կրկին մարմնանալու՝ երկրորդ անգամ մաքրուելու համար։

Մենք նորա հին հոգեփոխութեան չհաւատալոյն յենարան ունինք նոյն նամակի մէջ գտուած այս խօսքն այլ. «Մարդըս մի անգամ չէ՝ որ ծնում է եւ ապրում, այլ մի քանի անգամներ; (այսինքն) իւր գործոց եւ իւր յառաջադիմութեան ջանքին համեմատ վիճակը դէպ ի բարին փոփոխելով, կեանքից ի կեանս անցնում, զարգանում եւ մաքրւում է հոգւով». որով կ'իմանայ սոսկ վիճակի փոփոխութիւնը։

Մենք գիտենք դարձեալ՝ թէ հոգեփոխութեան հին վարդապետութիւնն զհոգին անսահման ժամանակաւ երկրիս վերայ կը պահէ, շրջել տալով անթիւ մարմնոց մէջ; մինչեւ մաքրուելով՝ ի վերջոյ կը հասնէ մի երանական վիճակի, զոր Պղատոն մեկնեց հազարամեայ երկնային վայելք

մի ; կամ մեղաւորին համար ընդերկրեայ նոյնչափ ժամանակի տանջանք մի. յետ որոյ դարձեալ ծնանել կու տայ՝ կատարեալ կամ անկատար մարմնով՝ ըստ նորա նախկին վարուց. եւ այսպէս շարունակաբար։ Իսկ Ադամեան կը գրէ բարեկամին՝ թէ քոյրդ «աւարտել է իւր երկրային կենաց շրջանը (ոչ շրջանները), եւ մարմինը տուել է ապականութեան. այլ հոգին, հաւատացած եմ, անմահութեան մէջ քո մօտդ պիտի հսկէ քո վրայ.... Դուք (նորա) ժամանակաւոր աւանդապահն էիք երկրիս վրայ, եւ (Աստուած) առաւ երբոր կամեցաւ.... Քոյրդ երջանիկ է այժմ իւր հոգեկան վիճակին մէջ»։

Մենք գիտենք դարձեալ՝ թէ հին հոգեփոխականք բարի հոգւոց վարձատրութիւնը՝ բարի մարդոց կամ սուրբ անասնոց մարմնոց մէջ, եւ չար հոգւոց պատուհասը՝ չար մարդոց կամ պիղծ անասնոց մարմնոց մէջ տեղափոխուելը կը համարէին. որով եւ երջանկութիւնը կամ թշուառութիւնը այս աշխարհիս վերայ կը դնէին։ Նոյնպէս եւ Պըղատոն, որ անոր վերայ կը յաւելոյր ժամանակաւոր անմարմնաբար վայելքը կամ տանջանքն այլ։ Իսկ Ադամեան կը գրէ՝ թէ «երջանկութիւնը չէ յայսմ աշխարհի». «երջանկութիւնը խաբուսիկ եւ օտար մի բան է մեր աշխարհին վրայ»։ Եւ դեռ նոյն տարւոյն կը նուագէր Առ Աստուած.

«Թէ իմ կենաց եւս արեգակ
Աւարտէ փոյթ իւր շըրջանակ,
Հոգիս ի քեզ տեառն արարչիդ
Կամի սլանալ մաքուր՝ վըճիտ.
Ցայնժամ արդեօք քեզ սիրափար
Պիտ՝ առնուս ինձ ոգեաց ի պար»։

Այսպիսի վկայութեանց թիւ չկայ նորա գրութեանց մէջ։ Իսկ ինչպէս ուրեմն այդ հոգեփոխական եւ քրիստոնէական միմեանց հակառակ գաղափարները մի ու նոյն ժա-

մանակ կը վարդապետէ Ադամեան։ Արդեօք գաղտնի կապ մի չկա՞յ ասոնց մէջ. փնտռենք։

Իւր ազնիւ մտերիմն, առ որ կ'ուղղէ Ադամեան իւր խօսքեր, «տարաբաղդաբար, կ'ըսէ, ծնած եւ մեծացած է այնպիսի մի երկրի մէջ, ուր միայն նիւթն է ուսմանց եւ պաշտամանց առարկայ, եւ ուր հոգեկան աստուածային բարձր փիլիսոփայութեան վրայ գրեթէ գաղափար անգամ չունին»։ Իմաստասիրական այդպիսի չքրիստոնեայ վարդապետութեանց շրջանի մէջ ապրողին ցուցնելու համար՝ թէ նիւթէն վեր մի բան այլ կայ, հոգի կայ, Ադամեան յարմար դատեր է՝ գիջանելով Նորա մտաւոր վիճակին, դիմել ուրիշ չքրիստոնեայ՝ բայց զայդ հաստատող վարդապետութեանց, որք աւելի մօտ ունին յիշեալ շրջանի մէջ քան քրիստոնէականքն։ Այս պատճառաւ է, որ մերթ իւր մտաց յատուկ քրիստոնէական գաղափարքն՝ ակամայ, գուցէ եւ կամաւ, եկեր խառնուեր են փոխ առեալ չքրիստոնեայ գաղափարաց հետ, եւ ատի յառաջ եկեր է ան- միաբանութիւնն իւր խօսից մէջ՝ զոր տեսանք։ — Այս մեկնութեամբ՝ կ'արծեմ՝ անստգիւտ դուրս կ'ելնէ Ադամեան հոգեփոխութեան վտանգաւոր վարդապետութեան միջէն։ Զայս աւելի կը հաստատեն իւր զարմանալի վախճանը եւ մահը, զոր պատմեցինք արդէն։

Ահա ասոնք են Նորա իմաստասիրական գլխաւոր տեսութիւնքն, որք դժբաղդաբար թուով աւելի չէին կարող լինել այս թղթոյն մէջ, որոյ նպատակն էր՝ ինչպէս յառաջ ըսինք՝ մխիթարել մի վշտացեալ եղբայր՝ Նորա քրոջ մահուան պատճառած ցաւերէն, ցուցնելով՝ թէ յետ մահուան դեռ կենդանի է իւր քոյրը, և կենդանի Աստուծոյ քով կը բնակէ։



# ԳԼՈՒԽ Ե

## ԱՂԱՄԵԱՆ ԻԲՐ ՎԻՊԱՍԱՆ

*Վիպասանական տաղանդը ցոյց տուաւ նա Անկոչ հիւրին մէջ, զոր շարադրեց յամին 1885, եւ Գրական եւ պատմական հանդէսն հրատարակեց իւր առաջին գրոց մէջ՝ յամին 1888, յորմէ առնլով դրինք նա եւ առաջիկայ քերթուածոց ծայրը:*

*Այս վէպ Տփղիսի ընտանեկան կենաց մի երեւան է. ընտիր, ճաշակով եւ սիրուն գրուած մի՝ որ մեծ հաճոյք կ'ընծայէ ընթերցողին: Ասոր մէջ կը ներկայանան մեզ չորս գլխաւոր դէմքեր: Մի Գողթունի, պատկեր զեղծ բարոյից եւ կեղծաւորութեան, որոյ աստուածն է դրամը, զոր իւր սրտին ամենէն մերձաւորներէն աւելի կը սիրէ: Երանուհի՝ նորա միամօր դուստրը, բոլորովին ընդդիմակ իւր հօր, ներքին շնորհօք արտաքինը ճոխացուցած, որ ինքնանուէր ողջակէզ կը լինի ծնողին բռնաւոր շահախնդրութեան: Զարեհ անուն իշխան մի, ճոխ՝ միայն ոսկւով, խապառ անարժան Երանուհւոյն, որ կը խնդրէ նորա առ ինքն կարկամած աջը, եւ դեռ չընդունած՝ պատճառ կը դառնայ նորա արտասուաց՝ որ կը մարեն նորա կենաց նորավառ ճրագը: Ի վերջոյ՝ յանկարծերեւեաց Արտաշ մի, նոյն ինքն անկոչ հիւրը, կայծա՞կ թէ սուր երկնից վրէժխնդրութեան, ահաւոր՝ անողոք. որ մի վայրկենի մէջ կը զարնէ կը փշրէ Գողթունւոյն բոլոր յոյսը, եւ նորա կեանքը դառն դատակնքոյն կը մատնէ. որով եւ կ'աւարտի վէպն:*

*Ինչպէս կը տեսնենք, վիպին նիւթը նոր չէ մեզ համար ըստ տեսակին: Այլ մին է հայ կենաց մէջ պատահած այն հազարաւոր դիպուածներէն, յորս ծնողաց իրենց իշխանութիւնն անիրաւ եղանակաւ եւ անարդար չափով գոր-*

ծածկէն հետեւած են եւ կը հետեւին ցարդ սոսկալի աղետներ։ Այս մասին գրուած են նա եւ ուրիշ վիպեր, որոց մէջ գեղեցկագունից կարգը դասելի է այս, որ ամենայն յարմարութիւն եւ կատարելութիւն ունի՝ զգացընելու մեզ մեր յառաջդիմացութիւնը քաղաքակրթութեան եւ քրիստոնէական դաստիարակութեան մէջ։

Թէ ինչ ոգւով եւ լեզուաւ գրուած է այդ, ընթերցողք արդէն կը տեսնեն։ Բայց կարեւոր է ծանօթանալ նա եւ Ագամեանի ունեցած տեսութեանց՝ նկատմամբ վիպասանութեան, կամ ընդհանուր խօսքով՝ գրականութեան։ Նա գրականութեան — ինչպէս եւ այլ ամէն բանի — մէջ կը խորշէր ի կեղծեաց, թէպէտ եւ գեղեցիկ լինէին, եւ միայն իրականը կը սիրէր։ Բայց իրականի մէջ այլ աւելի մեծը, նշանաւորը եւ ազգօւն կ'ընտրէր. նորա շրթանց վերայ կը թռչտէին միշտ այս բառեր. բարի, ճշմարիտ, գեղեցիկ եւ վսեմ։ Այս մասին մէջ իրեն օրինակելի ուսուցիչ ընտրած էր զՇէքսպիր. եւ կը տեսնենք՝ որ այս վիպին մէջ նոյնը սիրել եւ կարդալ կու տայ Երանուհւոյ։ Դարձեալ կ'ուզէր նա՝ որ գրականութիւնը միշտ հրահանգէ եւ բարձրացնէ զմարդ. հետեւաբար իբր անիմաստ եւ սպականիչ՝ կ'ատէր գաղղիացի իրապաշտ վիպասանները, Ալ. Ֆանբրագիօ քերթուածին մէջ յանուանէ անգոսնելով զԶոլա եւ զայլս,

« Որք վատտակք, լոկ փայլելու ունին ջանք.
Թէրեւս դոքա իրենց կեանքից էլ գոհ չեն,
Հրրճուանք փընտռեն լոկ նիւթէն եւ ոչընչէն ».

որք փոյթ ունին՝ կ'ըսէր դարձեալ՝ մարդոյս մէջ կեղտոտը եւ չնչինը միայն յայտ բերելու։ Եւ յաճախ կը գանգատէր այլոց՝ թէ դաղիական իրապաշտութիւնը մեր մէջ այլ ծաւալել սկսած է եւ մոռացնել ճշմարիտ եւ հիմնաւոր գրականութիւնը։ « Ինչո՞ւ, կ'ըսէր, այդ երկրաքարշ մարդոց ետեւէն կ'երթաք, փոխանակ հետեւելու լուսափայլ հաւատացեալ հոգիներու... ինչո՞ւ Պարիսի մոլութեանց պատ-

կերնները կ'ուզէք մեր մէջ տարածել »։ Նորէն հակառակ՝ կը գովէր, կ'ըսեն, ռուսական վիպասանութիւնը, որպէս թէ կը ջանայ ազնուացնել եւ բարեկարգել ժողովրդեան բարքը։

Ահա այս տեսութեանց կաղապարի մէջ ձուլուած է իւր վէպը. խորտակիչ անբարոյականութեան, նենգութեան եւ շահասիրութեան։ Հայ ժողովրդեան օգտելու միակ ճանապարհը՝ նորա ցաւերը նորա առջեւ բանալու մէջ նկատելով էր, որ իւր վիպին նիւթը հայ կենցաղէն ընտրեց. Հակառակ մեր արդի օտարամոլ գրագիտաց եւ օրագրաց, որք ուրիշ ազգաց բարուց նկարագիրներն, որ անծանօթ են ի մեզ, նոցա վիպաց թարգմանութեամբ պարզելով մեր ժողովրդեան առջեւ, կամ ոչ մի շահ՝ եւ կամ յաճախ ծանր վնաս կը գործեն։

Աղամեանի այս վիպին գեղեցկութիւնը կը կայանայ հետեւեալ յատկութեանց մէջ։ Բնական է եւ զգայուն։ Իւր նկարագիրները մանրախոյզ հետազօտութեամբ կենդանի եւ իրական են յարդարուած։ Հոգւոց եւ բնաւորութեանց ծածուկ եւ մթին խորշերը միշտ յերեւան կու գան վառ գոյներով։ Որչափ մեզ ծանօթ է, Աղամեան այս միակ վէպը գրած է. բայց ասոր մէջ ցոյց կու տայ մի վարժ գրիչ եւ ընտիր ոճ։ Թերութիւն մի եթէ կայ, թերեւս այս է՝ որ Արտաշի խօսակցութիւնը փոքր ինչ երկայնաբան եւ հետեւաբար ճապաղ է. ուր այնպիսի ճգնաժամի մէջ համառօտութիւնն աւելի ազդու կը լինէր։ Բայց ուրիշ կողմանէ վիպին ամբողջութիւնը գեղեցիկ է եւ պատուաբեր հեղինակին։



# ԳԼՈՒԽ Զ

## ԱԴԱՄԵԱՆ ԻԲՐ ՔՆՆԱԴԱՏ

*Վիպասանը նա եւ քննադատ հանդիսացաւ իւր մի գրութեամբ՝ սոյն անուամբ, Շէքսպիր եւ իւր Համլէտ ողբերգութեան աղբիւրն ու քննադատութիւնները, որ է մի փոքր գիրք, տպ. ի Տփղիս յամին 1887։*

*Իւր գործոյն վախճանը կը յայտնէ յառաջաբանին մէջ հետեւեալ խօսքերով. «Տեսնելով ազգիս սէրն ու եռանդը՝ առ այն տիեզերահռչակ հանճարն, քաջալերուեցայ. եւ ուզելով նոցա լաւ ծանօթացնել Շէքսպիրին, աշխատեցայ օրոշ տեղեկութիւններ հաւաքել նորա վրայօք, եւ հաղորդել հասարակութեան»։*

*Այս գիրքը կազմուած է չորս մասերէ։ Առաջինն է տեղեկութիւն Շաքսպիրի կենաց եւ գրական գործոց վերայ։ Երկրորդը՝ նորա Համլէտ ողբերգութեան նիւթը կամ պատմութիւնը։ Երրորդը՝ նոյն Համլէտ ողբերգութեան աղբիւրը։ Չորրորդը՝ քննութիւն Համլետի բնաւորութեան եւ բարուց։*

*Ինչ որ կը պահանջուի լաւ քննադատի համար, Ադամեան լիովին ցոյց կու տայ այդ գործոյն մէջ։ Նա կարդացած է այդ նիւթոյն վերաբերեալ բոլոր քննադատական գրուածները, եւ առատ հմտութիւն քաղեր։ Եւ անոնց վերայ կը յաւելու նա եւ իւր առանձին հզօր տեսութիւնքը, յորս՝ կը գրէ՝ «ինձ զօրաւիգն եւ բնաբան եմ դրել երեւելի հեղինակաց վճիռն եւ դատողութիւնքը»։ Կը հաստատէ կամ կը մերժէ ուրիշ քննադատից կարծիքները, երբ իւր մտաց համաձայն կամ հակառակ կը գտնէ։ Եւ ոչ միայն Համլետի, այլ եւ նորա հետ յարընչութիւն ունեցող անձանց եւ դիպաց մասին կարեւոր ծանօթութիւննե-*

րով՝ ճոխացուցած է իւր գիրքը։ Իսկ գրութեան ոճն է ման-րակրկիտ, այլ սեղմ, իմաստալից, եւ գրաւիչ ուշոյ եւ ա-խորժի։ — Ի գովեստ իւր գործոյն՝ մէջ կը բերենք Հ. Ղ. վ. Ալիշանի թուղթը՝ 1887ի սեպտ. 20ին գրած։

Ազնիւ եւ ճարտար Պարոն,

Ամսով առաջ՝ Պր. Խաչատուր Կարամուրզա այս կող-մերս գալով, տուաւ ինձ Ձեր նուիրած հեղինակութիւնը, որ կենդանի վկայութիւն մ'է Ձեր եզական հանճարոյն, թէ ոչ իբրեւ լոկ արուեստաւոր դերասան կը հանդիսանաք, այլ եւ իբրեւ արուեստագէտ եւ քաջ ճանաչող գերահըռ-չակ թատերաբանից հանճարոյն, զոր կենդանացնէք յայլ-եւայլ թատերս։ Արդէն մեր Բազմավէպ օրագրի մէջ ալ հրատարակուած էր Ձեր վրայօք ծանօթութիւն մի, որ կրնար վկայել, թէ ո՛ր եւ է ազգային հանճար պատուական է եւ յաչս մեր։

Հետաքննութեամբ ծայր ի ծայր կարդացի գրածդ եւ հաւնեցայ։ Մաղթեմ Քեզ յառաջադէմ յաջողութիւն յեր-կրաւոր թատերս, եւ ապահովութիւն երկնաւորին, ուր հան-դիսանան առաքինին յամենայն արուեստից։

Աղօթարար Հ. Ղեւոնդ Մ. Ալիշան

Ադամեան գործոյս յառաջաբանին մէջ կը դրէ. «Քիչ ժամանակից կրկին ի լոյս կ'ընծայեմ նորանոր հետազօ-տութիւնք, Օթէլլօի, Արքայ Լիրի, Գրիբաէդօվի Խելաց վիշտ կատակերգութեան, եւ ընդհանրապէս թատերական արուեստի վրայօք»։ Այդ հետազօտութիւնք արդեօք դեռ չէի՞ն պատրաստ, թէ պատրաստ էին եւ անտիպ մնացին, կամ այժմ ո՞ւր են։

Եղո՜ւկ որ Ադամեան չունեցաւ ժամանակ գրականութեամբ պարապելու եւ բազմաթիւ այդպիսի գեղեցիկ գործեր ըն-

ծաղկելու ազգին։ Այլ մանաւանդ եղո՛ւկ, որ այնքան շուտ թռաւ մեր ձեռքէն, եւ չկրցանք վայելել իւր գրականօրէն պտղաւէտ ծերութիւնը, զոր կը խոստանար մեզ՝ ամ քառամէ աւելի եռանդեամբ, ողջօրէն, եւ հմտաբար մերձենալովն գրական ասպարիզին։



## ԳԼՈՒԽ Է

### ԱԴԱՄԵԱՆ ԻԲՐ ԼԵԶՈՒԱԳԷՏ

Այս մասին մէջ զարմանալի կարողութիւն մ'ունէր Ադամեան՝ ամենատուր յիշողութեանը շնորհիւ։ Իւր ծանօթք կը վկայեն՝ թէ օտար լեզուներէն տեղեակ էր լատիներէնի, անգղերէնի, իտալերէնի, գաղերէնի, ռուսերէնի, նոր յունարէնի եւ թուրքերէնի։ Յայտնապէս գիտենք՝ թէ վերջին չորս լեզուները ոչ միայն գիտէր, այլ եւ կը խօսէր։ Ռուսերէնի համար Նովորոսեան հեռագիրը կ'ըսէ՝ թէ «կը խօսէր կանոնաւորապէս»։ Իսկ գաղերէնի համար կը պատմեն՝ թէ հիանալի կերպով կ'արտասանէր. այնպէս՝ որ զինք լսող գաղիացին կը շփոթէր, իրեն ազգակից կը կարծէր։ Իտալերէնը վերջին ժամանակները կ'ուսանէր՝ յԻտալիա երթալու դիտմամբ։ Պետրբուրգի հրէական լրագիր մ'այլ կը գրէ. «Նա կը խօսի եւ կը խաղայ տասներկու լեզուներով»։ Տասներկու թիւն անծանօթ է մեզ. իսկ այդչափ լեզուաց խաղալու գաղափարն անշուշտ հնարած է առասպելաստեղծ համբաւն։ Այս՝ օտար լեզուաց նկատմամբ. դառնանք այժմ խօսել հայերէնին վրայ։

Ադամեան երկու գաւառաբարբառով խօսած է։ Իւր ծննդավայրը թողլէն յառաջ բնականօրէն կը խօսէր մայրենի քաղաքին բարբառովն, որով եւ գրած է իւր քեր-

թուածոց առաջին համարը։ Երբ անցաւ ի ռուսահայս, նոյն բարբառն իրեն սեպհականեց, կամ աւելի ճիշդ՝ նոյն հոլովելու եւ խոնարհելու եղանակը. եւ այնպէս խօսեցաւ եւ շարագրեց այնուհետեւ կատարած երկասիրութիւնքը։ Բայց երկրորդ բարբառին վերայ տակաւին կը տեսնենք առաջնոյն ազդեցութիւնը, Համլէտի քննադատութեան մէջ աւելի, եւ Անկոչ հիւրին եւ Նամակաց մէջ նուազ։ Իւր լեզուն երկու բարբառոց մէջ այլ անոյշ եւ ողորկ է։ Եւ թէ մին եւ թէ միւսն աւելի ճոխ, ընտիր եւ դրական են նորա քով քան զոր առանձին կը խօսուին կամ կը գրուին իւրաքանչիւր գաւառաց մէջ։

Հայերէն լեզուն նորա գրքերուն եւ առօգանութեան մէջ այնչափ փափկացած եւ քաղցրացած էր, որ ոչ միայն Հայ ականջաց, այլ նոյն իսկ օտարաց շատ հեշտ կը հնչէր։ «Այն լեզուն, կըսէ Նովորոսեան հեղագիրն, որով նա կը խաղայ, թէպէտ հայերէն է, այլ ոչ բնաւ կոկորդային. այլ քաղցրահնչիւն, հեշտալուր, եւ բաւական այլափոխուած լեզու մ'է. գոգցես խառնուրդ մի լինի անգղիական եւ իտալական լեզուաց։ Մեզ ծանօթ հայերէնն՝ Ադամեանի բերանին մէջ այն է, ինչ որ հրէականը գերմաներէնի համեմատութեամբ. իսկ առօգանութիւնն աւելի եւս ընտիր է։ Այնպէս՝ որ իտալերէն եւ հայերէն չհասկացողի համար մի եւ նոյն է լսել զՕթելլոյ հայերէն կամ իտալերէն. իսկ գերագանցումն ճաշակի խնդիր է»։ Այս նկատմամբ օտարաց դատաստանները դեռ աւելի պիտի լսենք հետեւեալ գլխոյն մէջ։

Ադամեան կը խորշէր մեր լեզուի մէջ ճարակած գաղիաբանութենէ, հանդերձ քաջ վարժ լինելով գաղղերէնին. եւ կ'ըսէր այլոց. «Ինչո՞ւ մեր լեզուն, որ աւելի կորով ունի քան փափկութիւն, որ աւելի ոսկր ունի քան ջիղ, կ'ուզէք ճկել գաղիական արդի հիւանդոտ եւ անարիւն գրականութեան նրբութեանց»։ Թէպէտ եւ իւր գրուածոց մէջ գործածուած կը գտնենք երբեմն այդ լեզուին եւ այլոց բառեր՝ առանց հարկի։

Իսկ տաղաչափութեան մէջ մեծ փոյթ ունէր բառից ընտրութեան։ Հոս աւելի համարձակ ընթացաւ. չէր փախչեր նա եւ նախորդաց վայելուչ գործածութենէ, եւ հին լեզուի հոլովներէն, բայց սահմանական ներկայ եւ անկատար եղանակաց հին ձեւերէն, եւ նախնեաց բառերէ. որոյ համար եւ սեղմ եւ կոկ է իւր քերթուածոց լեզուն։ Բայց ռուսահայ բարբառով շարադրածոց մէջ, ինչպէս է մեր հրատարակած հատորը, շատ տեղ պակաս է ողորկութիւնը, մանաւանդ դիմորոշ յօդից անյարմար գործածութեան կողմանէ։ Եւ այդ՝ այն բարբառոյն բնութեան պատճառաւ, որ աղքատ՝ թոյլ եւ անդէպ է տաղաչափութեան, ըստ որում սովորաբար կը տեսնենք բնիկ գրողաց ոտանաւորաց մէջ. — Թէպէտ եւ այդ թերութիւնը մասամբ մի եւս գրողաց՝ տաղաչափական արուեստին անհմտութեան ընծայելի է. — ի բաց առեալ՝ որք գիտեն օգտուիլ հին հայերենէ եւ միւս գաւառական բարբառներէ, ինչպէս ըրաւ Ադամեան, եւ կորով դնել անոր մէջ։

Բանաստեղծ, իմաստասէր, վիպասան, քննադատ եւ լեզուագէտ Ադամեանի սոյն հնգամանեայ նկարագիրը կընքենք իւր մի նշանաւոր խօսքով, զոր կը գրէ յՕդեսսայէ 1887 տարւոյ նոյեմբերին՝ առ բարեկամն. «Այս տեղ գիտնականաց եւ գրագիտաց ընկերութեան ... մէջ պատուոյ անդամ ընտրուեցայ. եւ ընկերութեան կողմից պատգամաւոր եկաւ ինձ ծանուցանել այդ»։



# ԳԼՈՒԽ Ը

## ԱԴԱՄԵԱՆ ԻԲՐ ԴԵՐԱՍԱՆ

Այս գլուխը փոխանակ սեաւ մելանի, կը փափաքէի գրել մի այնպիսի նիւթով՝ որ միայն մեր դերասանի վերայ գրելու համար հնարուած լինէր. եւ կը փափաքէի ունենալ մի լեզու՝ որ ստեղծուած լինէր սոսկ այս անզուգական հանճարը իւր իսկութեան մէջ ներկայացնելու համար։ Շատ ամպեր որոտացին, շատ հեղեղներ թափեցան Ադամեանի արձակած փայլակներէն. և մեզ ուրիշ բան չմնար հոս, բայց եթէ այդ սահաններէն ժողովել ափի մէջ քանի մի կաթիլ, եւ նուիրել մեր ընթերցողաց։

Կարեւոր է նախ մի թեթեւ ակնարկ պարզել դերասանութեան նորա հայրենեաց մէջ ունեցած նախկին վիճակի վերայ։ Կ. պոլսոյ հայոց մէջ թատերախաղութեան սէրը եւ խորհուրդը կը ծագի 1840 թուականի մօտերը, երբ իտալացիք սկսեր էին յաճախել հոն։ Մկ. Պէշիքթաշլեան եւ Սրպ. Հեքիմեան, որք իրենց աշակերտութեան ժամանակ Վենետկոյ Ռափ. վարժարանի մէջ արդէն ընտանեցած էին այն նորութեան, սկսան ողբերգութիւններ յօրինել եւ թարգմանել. եւ՝ քաջալերելով Միջագիւղի երիտասարդները՝ ներկայացնելու զանոնք, սկիզբն տուին հայ թէատրոնի։ Այսպէս անցան քանի մի տարիներ. եւ ահա յետ 1850 թուին խումբ մի երիտասարդներ զիրար յորդորելով, Պերայի մէջ հիմնեցին հայոց Արեւելեան թատրոնը, սկսան մեծ եռանդեամբ խաղալ, եւ շուտով համբաւ հանեցին. եւ հետ զհետէ յառաջադիմելով, իրենց յաջողութեամբ զարմանալի կը լինէին նոյն իսկ եւրոպացւոց։

Ահա «այդ միջոցներումն էր, կ՚ըսէ Վրոյր, որ մի սիրունիկ տղայ թողած ամեն ինչ, թափառում էր թատե-

բաբեմերի վերայ, դերասանների խմբերում եւ նոցա տըներում։ Դա Աղամեանն էր. նա իւր բոլոր ուշադրութեամբ հետեւում էր մեծ դերասանների խաղերին, թէ նոքա ինչպէս էին խօսում, բարկանում, տանջւում եւ մեռնում»։ Այդ ժամանակ դեռ հազիւ չորեքտասանամեայ էր։

Հայրը տեսնելով որդւոյն միտումն այդ արուեստին՝ յորմէ սաստիկ կը խորշէր, յաճախ բարկութեամբ կը յանդիմանէր զնա։ Այդ կը նմանէր՝ հրամայել ջրոյն որ դէպ ի վեր հոսի։ Պետրոս երդմամբ խոստացաւ հօրը կամաց հնազանդել. բայց շատ անգամ, ընտանի էր, մոռանալով խոստումն, «գիշերները, կ՚ըսէ Նովորոսեան հետագիրն, խոյս կու տար ի թէատրոն. գաղտագողի կը մտնէր բեմի ներքին կողմն, եւ անկեան մի մէջ ծածկուած՝ հիացմամբ կը շնչէր թատերական օդը»։ Հայրը զինք թէատրոնէն հեռացնելու համար շատ հնարներ փնտռեց. այդ պատճառաւ էր՝ որ նա եւ զանազան արուեստաւորաց քով աշակերտութեան տուաւ, եւ ի մեծ ցաւ եւ ի ցասումն իւր հայրական սրտին՝ տեսաւ նորա ոչ միոյն մէջ չյաջողիլը։ Ի վերջոյ յուսահատած, եւ միանգամայն տեսնելով՝ որ իւր անպատիւ համարած արուեստի մէջ պատիւ եւ յարգանք կը վայելէր թատերերգակ եւ բանաստեղծն Սրապիոն Հէքիմեան եւ այլք, զիջաւ որդւոյն՝ ըսելով. «Գլուխդ քարին, ես այլ եւս մեղաւոր չեմ»։ Ո՞վ կրնար չափել Պետրոսի ուրախութիւնը։

Առաջին խաղն որուն մասնակցեցաւ նա, Գոցցիեւի աշխարհակալն էր, որոյ մէջ ինքն սպայ մի կը ներկայացնէր, եւ իւր բոլոր արտասանելին պիտի լինէր այս խօսք. «Մեռի՛ր, դաւաճան»։ Նա գիշեր եւ ցերեկ աշխատեցաւ պատրաստել իւր մասն մեծ ուշադրութեամբ. եւ երբ բեմի վերայ արտասանեց զայն՝ սուրը գետին նետելով, այնքան կատարեալ հանդիսացոյց իւր դերը, որ յուզեց մինչեւ անգամ իւր ծանօթ հանդիսականաց սրտերը. եւ ամէն մարդ գովեց նորա նախկին խաղը։ Պետրոս այդ գիշեր ուրախութենէն քուն չեղաւ։

Նոյն տարին խաղաց Հեքիմեանի առաջնորդութեամբ, եւ տակաւ սկսաւ բարձրանալ իւր բեմական պաշտաման մէջ, եւ շահել հասարակաց սէրը՝ իւր օրէ օր ցոյց տուած յառաջնուն կորովով եւ զգացմամբ, հրապուրիչ դիմօք, մաքուր արտասանութեամբ եւ ներդաշնակ ձայնիւ։ Ժողովուրդն Ադամեանի վերայ ուրիշ աչօք կը նայէր՝ քան նորա միւս խաղակցաց. յայտնի կը տեսնէր նորա ապագայ բարձրութիւնը, որոյ առջեւ ամէն լեռներ պիտի բլրանային։

Գեղարուեստասէր իշխանն Յակոբ Պալեան, արքունի ճարտարապետ եւ կառուցող Միջագիւղի բարեսէր ընկերութեան գեղեցիկ թէատրոնին, յափշտակուելով Ադամեանի ձիրքերով, առաւ զնա իւր քով, եւ առատապէս կը հոգար նորա ամէն պիտոյքը։ Նորա նիւթապէս եւ բարոյապէս օգնողներէն մին եղած է նա եւ տէր Նշան Օտեան, զոր ինք դերասանը « պաշտպանս ու տէր » կը կոչէ։

Իսկ նորա դերասանական հանճարոյ զարգացման նպաստող կը հռչակուին՝ ժամանակին երկու նշանաւոր դերասանքն, Էքշեան եւ Ֆասուլեաճեան։ Բայց « մենք գիտենք, կ'ըսէ Վրոյր, որ ինչպէս դոքա հին դպրոցի հետեւող էին, նմանապէս Ադամեան նոր սկսելիս... Անցաւ ժամանակ. Ադամեան աւելի մեծ կոչումն ունէր. նա զգաց հին դպրոցի սխալները. ինքնաշխատութեամբ ուղղեց եւ կազմակերպեց իւրը »։ Առ այս ձեռնտու ունեցաւ նա եւ թատերական արուեստին վերաբերեալ նորագոյն գործերը, զորս բոլորն այլ կ'առնուր՝ կը կարդար միշտ։

Ժամանակ օրագիրը 1867 ի մարտի 11 ի թուոյն մէջ կը գրէ՝ թէ նոյն ամսոյ 7 ին Նաուումեայ թէատրոնի մէջ խաղացեր են Յեսեֆեանի Վարդանանց ողբերգութիւնը, յորում Ադամեան դիւցազին որդին կը ներկայացնէր. եւ կը յաւելու. « Շատերը կը հաւաստէին՝ թէ այս տարի եւ ոչ մէկ թատրոնի մէջ եւ ոչ մէկ ներկայացման այնչափ բազմութիւն եղած է »։ Իսկ յամին 1869 մտաւ Վարդովեանի նշանաւոր խմբի մէջ ի Սկուտար, եւ հոն սկսաւ խաղալ։

Ադամեանի համբաւն անդադար կ'աճէր. ժողովրդեան շրթանց վերայ միշտ նորա անունը կը սաւառնէր: Այդ բանն անհանդուրժելի էր առ հասարակ Կ. պոլսի իւր խաղակցաց եւ խմբապետաց, որք աստեղաց նման կը ստիպուէին հետ զհետէ տեղի տալ Թատերաբեմի դեռածագ արեգական: Այս պատճառաւ յաճախ իւր եւ նոցա մէջ յառաջ կու գային գժտութիւններ, որոց համար բեմը շատ անգամ կը զրկուէր իւր անզուգական զարդէն:

Վարդովեան բոլոր Կ. պոլսի մէջ իրեն սեպհականած լինելով հայերէն եւ Թուրքերէն լեզուաւ ներկայացնելու իրաւունքը, ամէն դերասան ստիպուած էր անձին զրկմամբ հպատակել նորա հաճոյից եւ ծրագրին: Այդ լուծն անտանելի եղաւ շատից, որք անդադար կը քրթմնջէին. եւ գլխաւորապէս Ֆասուլեաճեանի, եւ Ադամեանի՝ որ բնաւ յանձն չառաւ՝ — եւ ինք միայն էր ամենուն մէջ չզիջանողը՝ — Թուրքերէն խաղալ: Եւ ահա նոյն 1869 տարւոյն մէջ մի օր սոքա անցած ի գլուխ ազատասիրաց, գարնան մեղուաց պէս ճեղքեցան Վարդովեանի խմբէն, եւ չուեցին ի Նոր Նախիջեւան: Հոն, կ'ըսէ Վրոյր, Ադամեան «տիրապետում էր բեմին. համակրութիւն եւ գնահատութիւն դէպ ի երիտասարդ տաղանդը հետ զհետէ աւելանում էր»: Կ'անցնի քանի մի ամիս. եւ ահա օր մի կը լսէ գոյժը Կ. պոլսի հրդեհին, եւ հօրը կրած մեծ վնասուն՝ զոր յիշեցինք յառաջ, եւ կը փութայ կարօտեալ ծնողին օգնութեան. բայց ինքն այլ կարօտ հաւասար անոր, եւ մինչեւ անգամ ճանապարհի գինը դժուարաւ գտնելով:

Այն օրէն տասն տարի անցաւ: Ադամեան այդ միջոցի մէջ շատ սակաւ խաղացած է ի Կ. պոլիս, Թէատրոններէն հայերէն լեզուին գրեթէ իսպառ հալածուած լինելոյն համար: Իւր քաղաքը Թէատրոնի յարգը բաւական չգիտելով, չէր գիտացած յարգել նա եւ իւր դերասանի հանճարը, եւ քաջալերել՝ որ յառաջ գայ, զարգանայ: Եւ Ադամեան կը սպասէր՝ թէ երբ բախտն իրեն ձեռք պիտի տայ: Իւր

օրերը կ'անցուներ նկարչութեամբ, որպէս զի կարենայ ապրուստ գտնել: Ի նմին ժամանակի չէր դադարած եւս քան զեւս մշակելէ իւր տաղանդը, եւ քաջ սերտեր էր մի քանին Շագսպիրի գերերէն:

Այդ առանձնութեան տասներորդ՝ տարին 1879, Տփղիսի մէջ կազմուելով թատերական խումբ մի, նորա շրջահայեաց աչքը նշմարեց իսկոյն Կ. պոլսի մէջ անտես մնացած փայլուն ադամանդը, հասաւ վերայց զայն՝ իւր ճակատին վերայ դնելու համար. եւ նորա շքովն սկսաւ մեծ հռչակ հանել: «Բարձրացաւ, կ'ըսէ Վրոյր, Սէր առանց հանճարման ներկայացման վարագոյրը. եւ հասարակութեան աչքերին ներկայացաւ այն՝ որի մասին մինչեւ այն ժամանակ գաղափար չունէր: Բաց ի շնորհալի, գեղարուեստական խաղից՝ հայ լեզուն հնչում էր բեմից մի բոլորովին անծանօթ քաղցրութեամբ եւ ներդաշնակութեամբ. նա դիւթում էր լսելիքը, նա իբրեւ կակղեցուցիչ սպեղանի՝ թափուում էր մայրենի լեզուի համար անտարբեր սրտերի վերայ եւ նրանց փափկացնում: Հասարակութիւնը այդ գիշեր դուրս եկաւ թատրոնից բոլորովին կախարդուած: Այդ օրուանից հասարակութեան կարծիքը դէպ ի հայ թատրոնը բոլորովին բարեփոխուած էր»:

Ադամեանով բարձրացած այդ խումբը նախանձորդներ իսկ ունեցաւ իւր դէմ: Եղան հոն նա եւ անկեղծ քննադատողներ զԱդամեան, գովելով նորա արժանիքը եւ ձիրքերը, եւ մատնացոյց լինելով ինչ ինչ ուղղելի կէտից վերայ, որոցմէ նա շատ օգտուեցաւ, ըստ որում կը խոստովանէր յաճախ. եւ ինչպէս իւր յառաջադիմութեան մեծապէս նպաստեր է Տփղիս, նոյնպէս ինքն այլ անոր թատերական ճաշակի զարգացման: Իւր այդ քաղաքին վերայ գրած քերթուածէն կ'երեւի՝ թէ որչափ կը պաշտէին զերեար ինքն եւ այն: Բայց ամէն բանէ աւելի զինք կատարելութեան հասուցին իւր ջանքը, եւ լեզուագիտութիւնը՝ որ բանալին էր եւրոպացի թատերական գրուածոց քննասիրութեան:

Հոն Տփղիսի մէջ բոլորովին հմտացաւ իւր Շաքսպիրին, եւ ուշի ուշով հետամուտ եղաւ՝ մեծ ողբերգակի ոգւոյ եւ զօրութեան կաղապարին մէջ ձուլել իւր կարողութիւնը. գործեց, եւ կատարելապէս յաջողեցաւ: Այնչափ մեծացաւ հոն յաչս ժողովրդեան իւր արժանաւորութեամբ, որ իւր ազդերը միշտ գունաւոր լապտերաց մէջ կը գրուէին: Մի անգամ հանդիսականաց մոլեգնութեան ժամանակ՝ բուռն աղաղակաց հետ օդոյ մէջէն սուրալով՝ տեղացին բեմի վերայ արանց գլխարկներ եւ կանանց հովահարներ: Ժողովուրդը դրեթէ միշտ շրջապատած կը տանէր զնա իւր բնակարանը՝ կեցցէ՛ գոչելով: Ադամեան զգաց վերջապէս՝ թէ անթերի էր իւր արուեստին մէջ, եւ թէ ժամ է իւր մարզարանէն՝ Տփղիսէն դուրս խոյանալու իւր անուան ետեւէն, որ գընացեր հասեր էր մինչեւ Կաւկասի եւ Ռուսաստանի ծայրերը: 1880ին փոքրիկ խմբով մի ելաւ երեւեցաւ Ախալցիխէ, Ախալքալաք եւ Աղեքսանդրուպոլ քաղաքաց, եւ ցոյց տուաւ՝ թէ կատարելութեան ամենանուրբ գագաթը հասած արուեստագէտ մ'էր ինքն: Հետեւեալ տարին անցաւ ի Գանձակ եւ Շուշի, եւ երրորդ տարին ի Ռուսաստան՝ իւր փառաց լայնածաւալ ասպարէզը:

Նախ քան հոն երթալը կը վարանէր նա, մտածելով թէ հայ լեզուաւ խաղալով ռուսաց առջեւ՝ ինչպէս հաճելի պիտի լինէր նոցա, որք միայն այդ լուրը լսելով՝ սկսեր էին արդէն ծիծաղել: Սակայն քաջալերուելով ծանօթներէն՝ գնաց: Եւ երբ ներկայացաւ թատերաբեմի վերայ, ռուսաց ծաղրը հիացման փոխուեցաւ: «Ադամեան, գրեց Նովորոսեան հեռագիրը, թէպէտ կը խաղայ մեզ իսպառ անծանօթ հայերէն լեզուաւ, բայց այնու ամենայնիւ գեղեցկագիտական անսահման հաճոյք մի կ'ազդէ, եւ իւր խաղը տեսնողաց յիշողութեան մէջ խոր հետքեր կը թողու»: Եւ խորհուրդ տուաւ՝ միայն հայերէն լեզուաւ խաղալ, եւ մի՛ բնաւ գաղերէն, զոր ոմանք իբր աւելի հաճելի լեզու՝ կը նախադասէին քան զհայերէնն: Ի Կիշ-

նաեւ Շաքսպիրի Ոթելլոյի ներկայացումը տեսնելով ռուսք, ըսեր են. « Երբեք մի ուրիշ լեզուաւ այսքան գեղեցիկ չէ կարելի արտայայտել այդ բուռն կրքերը »։

Հոս հարկ է մեզ յիշեցնել՝ թէ այն ժամանակ, երբ Ադամեան ի Ռուսաստան կոխեց, դեռ նոր մեկնած էին անոր իտալացի մեծահռչակ դերասանքը Ռոսսեան եւ Սալվինեան, եւ տակաւին վառ էր ռուսաց մտաց մէջ նոցա անմոռանալի յիշատակը։ Այս ուրեմն Ադամեան կամ բնաւ պիտի չերթար հոն, կամ եթէ երթար՝ պիտի ջանար արուեստի մէջ հաւասարել իւր նախորդաց կամ գերազանցել, եթէ կ՚ուզէր ընդունելութիւն գտնել։ Յետոյ պիտի տեսնենք մենք՝ թէ այդ որ մասին մէջ յաջողեցաւ։

ԶԱդամեան տեսնելու հաճոյքը նախ Ռուսիոյ Մոսկուա քաղաքն ունեցաւ 1883ի սկիզբը, ուր գնաց հրաւիրանօք հայ ուսանողաց։ Իսկոյն յառաջին ներկայացման Կորրադոյի դերին մէջ՝ արժանացաւ նա յիշեալ ամենամեծ դերասանից վայելած շքեղ ընդունելութեան։ Երկրորդ անգամ ներկայացաւ Շաքսպիրի Համլետի դերի մէջ. հոն մեծ հետաքրքրութեամբ եկեր խմբուեր էին իբր հանդիսատես՝ քաղաքին գրեթէ բոլոր դերասանք եւ դերասանուհիք։ Ժողովուրդն զմայլած, յետ երկրորդ արարուածին կը նուիրեն գեղեցկաշէն ոսկի ծխատուփ մի. եւ յետ երրորդին՝ սեղանոյ թանկագին ամբողջ սպաս մի, համակ արծաթեայ ոսկեզօծ։ Հայ ուսանողներն այլ սարդենի պսակ մի, զոր յիշեալ արուեստակիցք իւր տերեւաթափ կ՚ընեն, պահելու համար յիշատակն այն դերասանին, զոր ստուգիւ մեծ գտան եւ համեմատ իւր համբաւոյն։

Իսկ քաղաքին օրագիրք անսովոր հիացմամբ խօսեցան։ Մոսկուայի թերթիկը (1) գրեց. « Ադամեան այնպիսի Համլետ մ՚է, որուն կրնայ նախանձել որ եւ է եւրոպական թատերաբեմ »։ Երաժշտական եւ թատերական բանբերն (2)

1. Մոսկովսկիյ լիստոկ։ 2. Մուզիկալնիյ ի Թեատրալնիյ վեստնիկ։

այսպէս գոչեց զարմացմամբ. « Հայ դերասանները Գ. Ադամեան Գուշկինի թէատրոնին մէջ հրաշքներ կը գործէ »։ Նոյնն ուրիշ անգամ. « Նա Համլէտի մէջ սքանչագոյն գտեր իւր մի ընթացքով (մօրն հետ բեմի վերայ), զոր ոչ Ռոսեանի, ոչ Սալվինեանի, եւ ոչ միւս Համլէտաց եւ Համլէտկաց քով տեսած չենք ». Նա աւելի ցոյց կու տար՝ կ'ըսեն՝ մտաց կորովի թափանցկութիւն եւ խանդաղատանք։ Նոյնը խորհրդածեց եւս՝ թէ ձայնն այնքան զօրաւոր չէ. որով « կարծես՝ թէ անբաւական է ընդարձակ թատերաց մէջ խաղալու »։ Իսկ Ռուսական օրագիրը ([1]) պարզապէս վճռեց. « Ոչ Ռոսեան եւ ոչ հռչակաւորն Սալվինեան կը հաւասարին Ադամեանի՝ Համլէտի դերին մէջ»։ Մենք դժուարաւ պիտի հաւատայինք այդ բանին, եթէ հայք լինէին այդ վկայողներ. եւ առաջին հմուտ ռուս քննադատներ են ադոնք։

Հմուտ քննադատներ՝ ըսինք. եւ յիրաւի հանրածանօթ իր է՝ թէ ռուսաց մէջ այսօր թատերախաղութիւնը մեծապէս զարգացած է։ Եւ թէպէտ չունենան Իտալիայ նման գերազանց արուեստագէտներ, սակայն ունին անթերի ճաշակ արուեստին, եւ գիտեն քաջ ընտրութիւն ընել արուեստագիտաց մէջ։ Արդ՝ երբ այդ ռուսք, — որք յամենայն դէպս ցոյց կու տան՝ թէ չեն կարող տանել կովկասեան հայոց քան զիրենք յառաջադիմութիւնն ի Ռուսիա, եւ կը ջանան միշտ աղարտել նոցա անունը, — ամենայն ուրեք այդպէս միաձայն խոստովանեցան հայ դերասանին գերազանցութիւնը յիշեալ նշանաւոր իտալացի արուեստագէտներէն, այդ վկայութեան անկեղծութեան եւ ստուգութեան նկատմամբ չենք տարակուսիր։ Մանաւանդ երբ կը տեսնենք՝ թէ Լերմոնտեանի (ռուս) Դիմակահանդէս ողբերգութեան Արբենինի դերին մէջ այլ եթէ հասկացողութեան եւ եթէ կատարման մասին զԱդամեան գերա-

1. Ռուսսկիյէ վէդոմոստի։

զանց գուանեցին քան զիւրենց ազգակիցն իսկ Պիսարեան, որ ցայնժամ առաջինն էր ի Ռուսիա այդ խաղի մէջ։ Ժամանակակից լրեր (1) անուն օրագիրն ըսաւ. Ադամեան «այդու ցոյց տուաւ՝ թէ ոչ հանճար միայն ունի, այլ նա եւ խորագնին միտք, եւ քննական ընդարձակ ձիրք»։

Ադամեան նոյն տարին գնաց նա եւ ի Նիժնի Նովգորոդ, ուր մի քանի անգամ հրաւիրեցաւ կուսակալէն՝ իւր ապարանից մէջ իրեն սեղանակցելու։ Իսկ 1884ին դիմեց ի Պետրբուրգ։ Նորա անհագին հռչակն արդէն դիւթեր էր մայրաքաղաքացւոց միտքերը. եւ հազիւ ներս մտաւ, նշանաւոր օրագիրք ողջունեցին իւր գալուստը։ Իւր խաղերուն հետ սկսան տեղալ նա եւ ճոխ քննադատութիւնք՝ միշտ հիացմամբ լի, մանաւանդ Համլետի նկատմամբ, որ էր նորա առաջին պարծանքը։ Արուեստ (2) հանդէսը գրեց. «Հայ դերասանը Պ. Ադամեան առաջին անգամ բեմ ելնելով Համլետի դերի մէջ, լիովին արդարացոյց այն գովաբանական յայտարարութիւնքը՝ զոր կը հրատարակէին Մոսկուայի լրագիրք։... Համլէտն արդէն չափազանց տեսած է ժողովուրդը. նորա դերը դժուարամատոյց դեր մ'է. անկարելի լինելու չափ դժուարին է դերասանին՝ ճշգրտել իւր վերայ դանիմարկացի տժգոյն երազացնորին անձնը, ուստի եւ հանդիսատեսք յաճախ տհաճութեամբ կը մեկնին թէատրոնէն։...

«Սակայն Պ. Ադամեան կրցաւ բոլոր դժուարութեանց միջէն յաղթական ելնել։ Առանց օրինակելու, առանց նըմանելու հռչակաւոր կերպարանողաց զՀամլէտ, նա ստեղծած է՝ գուցէ սակաւ ինչ ինքնահնար՝ եւ լիովին արուեստագիտական մի տիպ, ամենամանր քննուած եւ հրաշալի նրբութեամբ կոկուած։ Ներկայացման այդ ինքնագիտ սեպհականութիւնն յայնմ է, որ Ադամեան Համլետի խօսից եւ գործողութեանց մէջ դրած է շատ աւելի կիրք եւ

1. Սովրեմեննիե իզվեստիա։ 2. Իսկուսստվո։

*****

կորով, քան Ռոստան եւ աշխարհահռչակն Սալվինեան… Այս առաջին անգամ է՝ որ ռուսական բեմի վերայ այսպիսի բան կը տեսնենք։ Լաւ կը լինէր որ մեր արքունեի դերասանք հետեւէին եւ բան սովրէին իրենց հայազգի արուեստակցէն, որ գուցէ թէպէտ վկայագիր չունի, բայց ունի արուեստագիտական նուրբ ճաշակ եւ դերասանական բարձր հանճար»։

Ոդեսայի Նովորոսսեան հեռագիրը Պետրբուրգի մամլէն կը քաղէ այս խորհրդածութիւնը. «Լինե՞լ թէ չլինել անուանի մենախօսութիւնը կ'արտասանէ ոչ թէ տխրութեամբ՝ որպէս շատեր կ'ընեն, այլ կսկծեցուցիչ վշտով, ի ձեռին այլ դաշոյն՝ որ անշուշտ աւելի կը յարմարի անձնասպանութեան փափաքին։ Երբ… Համլէտ կը ճանաչէ իւր հօր սպանիչը, այդ վայրկենին Ադամեան սաստիկ կատաղութեամբ եւ դժգոհութեամբ չբորբոքիր նման Սալվինեանի, Բառնայի, Բոսարտի եւ այլոց. այլ սոսկմանէն կը քարանայ եւ հեղձամղձուկ հառաչներ կը թափէ Որատիոսի կրծոց վերայ»։

Ադամեան Պետրբուրգի մէջ ապրիլի 30ին խաղալով Կորրադոյի դերը, յետ որոյ քաղաքէն պիտի մեկնէր, սքանչացած բազմութիւնը զինք շրջապատելով, ծափահարութեամբ՝ աղաղակաւ եւ դղրդմամբ կ'ընկերէ մինչեւ իւր բնակարանը, ինչպէս ուրիշ քաղաքաց մէջ։

Ապա անցաւ յԱժտերխան, Ռոստով, Քարկով, Կիշնեւ եւ այլն։ Աժտերխանի համանուն օրագիրը խօսելով Կորրադոյի ներկայացման առթիւ, բաց յայլոց ըսաւ նա եւ՝ թէ հայերէն չեմ հասկանար. «Բայց ինչ պէտք է տեղեակ լինել ներկայացման լեզուին, երբ անոր խաղացողն Ադամեանն է։ Եթէ աշխարհիս վերայ կայ մարդ մի, որոյ միտքը կարելի լինի կարդալ նորա երեսի եւ մարմնոյ շարժմանց մէջ, դա անշուշտ Ադամեան միայն կրնայ լինել։… Կարծեմ թէ չկայ բառ մի, գիծ մի, եւ ոչ իսկ մի նշանախեց՝ որոյ իմաստը նա ըմբռնած չլինի։… Որպիսի՜ նրբութիւն, որ–

չափ գեղումն եւ ո՛րքան իրականութիւն » ։ Իսկ ի Կիշնեւ հայ ժողովրդէն ստացաւ արծաթեայ ատրգենի պսակ մը ։ Եւ յետ ներկայացման երբ կառք նստաւ ի տուն երթալու, հիացման մոլեգնած ռուս եւ հայ հանդիսականք ձիերը կառքէն քանութեամբ արձակելով, իրենք կը լծուին եւ կը տանին ահագին հանդիսիւ ։

1885ին կ'երթայ ի Կիեւ եւ ուրիշ քաղաքներ՝ խաղացանիւ քաղաքացեաց հրաւիրանօք, կրկին եւ երեքկին այցելելով ի Պետերբուրգ եւ Մոսկուա ։ Եւ 1886ին գնալով ի Բագուան, կը դառնայ ի Տփղիս, ուր աւելի փառօք եւ անհամեմատ խանդաղատանօք կ'ընդունին հայ հանճարն անմահացնողը ։ Շարունակելով իւր ճանապարհը Տփղիսէ հայ դերասանից խմբով՝ ի Վլադիկաւկաս, Մոզդոկ, Գեատիգորսկ, Եկատերինոդար, Պոլտաւա, Թէոդոսիա, դարձեալ եկաւ ի Տփղիս ձմերան մօտ. ուր այլ եւ այլ խաղերէ յառաջ կը ներկայացնէ զԼիր արքայ Շէքսպիրի, « որին, կըսէ Վրոյր, վերջերս անչափ սիրում էր՝ մինչեւ գիշերները նորանով զառանցելու աստիճան » ։ Լիր արքայի վերայ իւր քերթուածն այլ նոյն ամիսներ չինեց ։ 1887ին կ'երթայ ի Բաթում, Կերչ, Սիմֆերոպոլ, կրկին ի Թէոդոսիա եւ Սիմֆերոպոլ, եւ հոկտեմբերին կը հասնի յՈդեսսա ։

Նովորոսեան հեռագիրը գովեց նորա խոնարհ մուտքն յՈդեսսա առանց կանխեալ ազդարարութեանց, որպէս կ'ընեն այլք ։ Հոն տալով եօթն ներկայացումներ, « Ցոյց տուաւ, կ'ըսէ նոյն օրագիր, թէ ինքն յանչափս այլափոխ եւ հանճարեղ դերասան մ'է ։ Տեղւոյն մամուլն ի մի բերան համարեցաւ զնա այն ցանկալի հիւրը, զոր գտնելն Ոդեսսայի համար աւելի դժուարին է՝ քան մեծատան յերկնից արքայութիւն մտնելն ։... Այն անձինքը զորս Ադամեան կը կերպարանէ, ձեր մտաւոր աչաց առջեւ իբր իրական անձինք կը պատկերանան, եւ նոցա կիրքն ու վիճակք անջինջ կը դրոշմուին մարդոյս հոգւոյն խորը ։..

« Սալվինեան նախ քան զամէն բան՝ կը զարմացնէ իւր

ուժով եւ նշանաւոր ձայնիւ. Բոսարա՝ կերպարանաց փոփոխութեամբ եւ խաղին նրբութեամբ։ Գ. Ադամեան այդ ամէնն ունելով հանդերձ՝ դարձեալ այնչափ երեւելի չէ. բայց կան աչերն՝ որ ամեններուն յարմար են թատերաբեմին։ Այսու ամենայնիւ կը զգայ մարդ՝ թէ ինչպէս իւրաքանչիւր խաղի մէջ աւելի եւ աւելի կը զմայլի եւ կը դիւթուի Ադամեանի խաղովը։ Կը զգայք զայն՝ ոչ եթէ մտօք, ոչ եթէ այն համոզմամբ թէ նա ընտիր դերասան է, այլ մի ուրիշ անիմանալի զգացմամբ, որ կը ստիպէ զձեզ արտասուք կուլ տալ, եւ սիրել այդ օտար դէմքը եւ այդ օտար լեզուն։

«Նորա ձայնի մէջ գորով կայ, եւ խաղին մէջ յոյժ պարզութիւն եւ վսեմութիւն։ Նորա շարժուածքը չափաւոր եւ շնորհալից են։ Երեք քառորդովը իրական եւ լոկ մի քառորդովը աւանդական լինելոյն համար՝ ոչ մի տեղ ծայրայեղութեան եւ հնաւանդ ազդեցութեանց չդիմեր, այլ նշանաւոր տեղիքը կը պայծառացնէ իւր բոցով, ամենայն ուրեք պահելով անվրէպ կանոն եւ չափաւոր զգացումն։ Դատապարտելոյ ընտանեաց մէջ զինք մորմադեղով (ըարիւքնին) թունաւորելով, մկնաձգական ընդհանուր շարժումներ չգործեր, այլ այնպիսի շարժումներ, որ կը պատահին մորմադեղով թունաւորմամբ։ Այս տեսարանը թատերաբեմի վերայ հանդիսացնելէ յառաջ՝ ասոր նկատմամբ շատ բան կարդացած եւ բազմաթիւ փորձեր կատարած է անասնոց վերայ։... Ջղաձգութեամբ կը խաղան նորա վզին մկունքը. մատները մկնաձգութեամբ կը ծամածռին. բայց աչաց սպիտակուցը չշարժիր, կրծքէն ստէպ խուլ հեծութիւնք չեն ժայթքեր։ Ինչ որ կը տեսնենք հոս, ամէնն օրհասական է, սոսկ տանջանաց երկայնաձիգ տեւողութիւն։...

«Ադամեան առ հասարակ բեմի վերայ յոյժ բնական կը մեռնի, եւ ոչ բնաւ զայրացուցիչ եղանակաւ. եւ իսկապէս այսու է՝ որ այդ վեհ տեսարանը մեծ ազդեցու-

թիւն կը գործէ »։ Եւ Կորրադոյի առ իւր դուստրը յետին արտասանելիք ողջունի մասին խօսելով կ'ըսէ. « Աղամեանի այս ներկայացումը հրաշալի է. միայն ասոր համար կ'արժէ ի թէատրոն երթալ, եւ արտասուքով ձայնիւ աղաղակել. կեցցէ Աղամեան »։

Սոյն խաղին Նոյեմբերի 22ի ներկայացման առթիւ կը պատմեն, թէ հազիւ կը յայտնուէին Կորրադոյի թունաւորման առաջին նշանք, հանդիսականք կը համակուէին անտանելի սարսռով մի, որ իսկոյն զարհուրանաց կը փոխուէր. երբ Կորրադոյ բեմին վերայ կը տանջուէր օրհասական ջղաձգութեամբ եւ մահուան սոսկալի երեւոյթներով, շատերը բնական ազդմամբ կ'ելնեն իրենց թիկնաթոռներէն, եւ կանայք իրենց աչերը կը ծածկեն։ Ոմանք մինչեւ իսկ կը խորհէին՝ թէ մի՛ գուցէ Աղամեան դիպուածով թունաւորուած լինի, մինչեւ իջաւ վարագոյրը, եւ նա կրկին երեւելով փարատեց նոցա կասկածը։

Ոդեսսայի թերթերը (1) խօսելով Համլետի առթիւ եւ յիշելով արդէն շատ անգամ յիշատակուած երկու մեծահամբաւ իտալացի դերասանքը եւ զայլս, կը յաւելու. «Վերջապէս ոչ մի աշխարհահռչակ դերասան տուած է մեզ այնպիսի անկեղծ եւ կատարելատիպ Համլէտ, զոր տուաւ մեզ Պ. Աղամեան »։ Նոյնը գրուցեցին քաղաքին միւս օրագրերն այլ։

Նովորոսեան հեռագիրն Ոթելլոյի ներկայացման առթիւ գրեց. « Աղամեան այս անգամ քան զինքն այլ գերազանցեց... Երբ բեմի ետեւէն կը սկսի լսուիլ նորա ձայնը, հոն Աղամեան այլ եւս մարդկային արուեստի չափէն եւ սահմանէն վեր անցած է եւ մտած աստուածային արուեստի շրջանի մէջ։ Բեմի ետեւէն կը գոչէ հայ Ոթելլոյի ձայնը. սակայն մարդկային ձայն չէ այդ, այլ երկնային որոտումն, որ բնութեան տարերաց հետ կը կռուի։

1. Ոդեսսկի Վեստնիկ։

Ահաւոր դղրդմունք, կատաղի մռնչիւն կը սոսկացնեն զմարդ, եւ սարսափելի դող մի կը սկսի ընթանալ նորա երակաց մէջ »: Ադամեանի այս սկզբէն մինչեւ վերջ անթերի պահել Ոթելլոյի բնաւորութիւնը, « այս ձիրք ամենամեծ իսկ դերասանից հազիւ տրուած է »:

Ոդեսսայի թերթերն այլ ըսաւ. « Ադամեանի կերտուածն ամենեւին նման չէ Սալվինեանի կերտման. (եւրոպացիք զսա առաջին համարած են այդ խաղի մէջ): Հայ ողբերգակն՝ ողբերգութեան մէջ սփռուած ակնարկութիւնքն աւելի ճիշդ իմաստիւ կը մեկնէ, եւ զՈթելլոյ իբր անաղարտ արաբացի կը ներկայացնէ: Երեսը թխագոյն է. այտից գնդակները լայն են եւ ցցուած. շրթները թանձր, եւ կը ծածկեն երկու շար մաքուր եւ սպիտակ ատամները, որ անապատի բնիկ զաւակաց միայն սեպհական են: Ականջներէն կախած է մեծամեծ օղեր, եւ ձեռաց՝ ապարանջաններ անցուցած: Բաւական է որ Ոթելլոյ Ադամեան միայն երեւի բեմին վերայ եւ սկսի խօսել. այն ժամանակ իսկոյն կը համոզուի մարդ՝ թէ արեւելից գաղափարական ներկայացուցիչն է, կորովի եւ ուղղամիտ բնութիւն մի, որ վարժած է անվեհեր դիմագրաւել ամէն վտանգաց »: Յետ աւարտման խաղին՝ իբր տասնուվեց անգամ ի տես կը կոչուի Ադամեան:

Նովորոսեան հեռագրին մի յօդուածագիրը խօսելով Ուրիէլ Ակոստայի ներկայացման առթիւ, կ'ըսէ. « Յառաջ տեսեր էի զԲառնայ: Նա մտացս մէջ դրոշմած էր Ուրիէլի պատկերը. եւ այնուհետեւ չէի ուզեր ուրիշ ողբերգակ մի նոյն դերի մէջ տեսնել, որպէս զի յուշէս չջնջուէր այն անոյշ պատկերը: Բայց յիրաւի չգիտեմ, բարկանամ թէ հիանամ Ադամեանի վերայ, որ հոգւոյս միջէն վանելով զայն, փոխանակ անոր այլ Ուրիէլ մի քանդակեց: Տեսայ՝ ոչ այն կարող Ուրիէլը միայն, այլ հայ արուեստագէտն իմ առջեւ բացաւ այդ կարող մարդոյն հզօր հոգւոյն խորը, եւ յայտնեց նորա հոգւոյն ամենածածուկ խորշերը »: Նոյն

օրագիրը դարձեալ. « Ադամեան հանճար մ'է Եւրիէլ Ակոստայի խաղին մէջ... Հայ դերասանի բոլոր մարմինը կը դողայ, երեսը պատած է մահուան տժգունութեամբ, ցուրտ քրտինք կը ծածկեն ճակատը, հեղձամղձուկ բեկբեկ ձայնը իւրաքանչիւր վայրկեան կ'ընդհատի... երկու վայրկեան եւս, այնուհետեւ ձեր հանդէպ երեւածը մարդ չէ, այլ զարհուրելի ուրուական մի, որ այս եւ այն կողմ կը շարժի, կիսակտուր ձայներ կը հանէ... Սոսկումն զձեզ կը պատէ. ճնշեալ երեւակայութիւնը ձեր դիմաց կը ստուերագծէ գերեզմաններ, մեռելներ... Այո. ոչ միայն դերասան է Ադամեան, այլ եւ անսովոր տաղանդ մի, ընտրելագոյն արուեստագէտ եւ մեկնիչ արդի թատերգական գործոց »:

Օդեսայի մէջ արգելուած էր հասարակաց ցոյցեր ընել դերասանից. բայց քաղաքին գլխաւոր վարիչն անգործադրելի ըրաւ այդ արգելքը՝ միայն Ադամեանի համար: Այնուհետեւ հոն այլ կրկնուեցան Տփղիսի եւ Պետերբուրգի ցոյցերն այդ թատերասէր ժողովրդեան կողմէն՝ աւելի ոգեւորութեամբ եւ ամէն գիշեր:

Ադամեան 1888ի սկիզբը գնաց յԵղիսաբեթգրադ, ուր համանուն օրագիրն ըսաւ՝ թէ Կորրադոյի դերին մէջ « Ադամեանէն աւելի ոչ ոք կրնայ կատարեալ տիպ ստեղծել... պատկեր մի, քան զոր կատարեալը մարդկային կարողութենէ վեր է:... Մենք այնպէս համոզուեցանք՝ թէ անտարակոյս հարկ է զԿորրադոյ Ադամեանի ստեղծագործութեան պտուղն համարել »: Յետոյ երբ զԼիր արքայ եւս ներկայացոյց, ամէն մարդ վկայեց՝ թէ հաւասարապէս կատարեալ էր նա եւ այդ դերի մէջ. եւ թէ Ադամեան բազմակողմանի աննման հանճար մ'է:

Յառաջ տարաւ իւր ճանապարհը կրկին ի Մոսկուա, ապա ի Կազան. եւ անտի եւս հրաժեշտ տալով, փառօք եւ ճոխութեամբ լի նաւու մի պէս՝ նոյն 1888 տարւոյ կիսուն եկաւ մտաւ այն նաւահանգիստը՝ յորմէ ելած էր. այն է՝ իւր

մայրենի քաղաքը Կ. պոլիս: Իւր քաղաքակիցք մեծաձայն ողջունեցին նորա դարձը: Հօն դերասանական նոր խումբ մի կազմուեցաւ, եւ անոր հետ Գաղիպեան Եւր թատրոնի մէջ սկսաւ խաղալ Ադամեան զանազան խաղեր: Թատրը միշտ լի էր խուռն հայ եւ օտարազգի հիացանչ հանդիսատեսօք: Յոյներն անգամ խոնարհելով նորա մեծութեան առջեւ, խնդրեցին որ նա Ոթելլոյի մէջ հայերէն լեզուաւ մասնակցի իրենց:

Վրոյր կը յիշէ զարմանալի դէպք մի, որ հանդիպեր է Կորրադոյի ներկայացման ժամանակ. «Վերջին արարուածին, Կորրադոյի սարսափելի զոհաբերութեան ժամուն՝ երբ նա տառապում էր օրհասականի տանջանքով, օր. Ազնիւ (տասն տարիէ հետէ դերասանուհի), որ Էմմայի դերն էր խաղում, երբ տեսաւ Կորրադոյի ցաւերը, տեսաւ՝ որ... իրանից երկու քայլ հեռու անշնչանում է, վայր ընկաւ ուշագնաց»:

Այսպիսի չտեսնուած եւ չլսուած տաղանդն ու արուեստ ինչ ազդեցութիւն չէր ըներ Ադամեանի քաղաքակցաց վերայ: Եւ յիրաւի, քանի մի Քռիթիքիւսներ, Ովքիոսներ եւ Էդսէդէռաներ ելան ամենամեծ հիացմամբ եւ «Փրանսատենչիկ» գրչաւ նկարագրեցին դերասանը, — կամ աւելի ճիշդ՝ իրենք զիրենք. յօդուածներ, որք Ադամեանի նկատմամբ նոր լոյս չեն ուզեր տալ մեզ, եւ ոչ իսկ այլոց տուածին չափ. — յաւելլով նա եւ՝ թէ «մեզ համար, պոլսեցւոցս համար ինչ մեծ հպարտութիւն, երբ կը մտածէինք՝ թէ մեր ընկերութեան զաւակն էր այն, Պոլսոյ մթնոլորտին մէջ սնած եւ ուռճացած տունկ»: Ո՜վ հպարտութիւն, որ Կ. պոլսի մէջ կը թագաւորես՝ գահդ դրած... օդոյ վերայ: Այդ հպարտ քաղաքի մէջ էր, որ «Գործերս կաղ են, կը կը գրէր դերասանը, եւ քիչ նպաստաւոր. ընդունելութիւն շատ մեծ, փքուած եւ դատարկ գովաբանութիւններ՝ որ շռայլում են ինձ տեղւոյս էֆէնտիները, որոց (բաց ի մի քանի բացառութիւնք) ինչ աստիճանի ինձ համակրելը լի-

ըլլ ինձ տարի Պոլիս վերադառնալ չփափագելս կարող ս գուշակել »։

Այստեղ մի վայրկեան կանգ առնունք, եւ հապաքաղ ընենք անմահ հանճարոյս իւր ետեւ թողած քանի մի կարեւոր յիշատակները։ 1887ին Ոդեսսայի մէջ քաղաքին գեղարուեստական ընկերութեան թատերգական ճիւղին պատուոյ անդամ կը կարգուի՝ ընկերութեան նախագահին յատուկ Թղթովն եւ Նուիրակաւ։ Փր. Կոպպէի Դարբնաց գործադուլը գաղերէն լեզուաւ արտասանած է ռուսաց հանգուցեալ Աղեքսանդր կայսեր եղբօր՝ Միքայէլ մեծ իշխանի առջեւ, եւ նորա գոհութեան արժանացած։ 1888ին կը գրէ՝ թէ հրաւիրուած է Ռումանիոյ մայրաքաղաքին մէջ՝ թագաւորին եւ թագուհւոյն առջեւ քանի մի մենախօսութիւն արտասանել, կամ ներկայացնել՝ եթէ խումբ գտնուի. գնա՞ց թէ ոչ, չգիտենք։ 1889ին այլ կը գրէ՝ թէ հրաւէր ընդունած է՝ ի ներկայութեան սուլտանի ներկայացնել զՈթելլոյ՝ Աստեղ հովոցի մէջ, սակայն տկարութիւնը թոյլ չէ տուած։ Եւ կը պատմեն՝ թէ պալատականք տեսնելով նորա յոյժ բարեկիրթ խօսակցութիւնը եւ ձեւերը, զրուցեր են. Պէտք է զսա տեղւոյս դերասանից ուսուցիչ դնել։ Մե՜ծ պատիւ։

Անբաւ են եւ անպատմելի ամէն տեղ կատարուած նորօրինակ խանդավառ ընդունելութիւնքը եւ թանկագին նուէրքը՝ որոց զոմանս յիշեցինք արդէն։ « Եթէ, կ'ըսէ մի թղթին մէջ, ընդունած ծաղիկներս եւ լսած գովեստներս կարելի լինէր ոսկւոյ փոխարկել, Ռոշիլտի հետ մրցելով՝ գուցէ ես սնանկացնէի նորան »։ Իւր մեծադիր կենդանագիրն հրատարակուած է քանի մի պատկերազարդ ռուս հանդիսից մէջ։ Բազմաթիւ ոսկեգիր գեղազարդ ուղերձներ, ներբողական նամակներ եւ տոմսեր ընդունած է հայ եւ օտարազգի պետական եւ այլ մեծամեծ անձներէ, ընկերութիւններէ, արքունական համալսարաններէ եւ այլն։ Հոս կը զետեղենք իբր մին հարիւրաց՝ ծիրունի Նահապետին հե-

տեւեալ գեղեցիկ Թուղթը, 1888ի փետր. 21ին գրուած. զոր ի բերան ուսած էր Ադամեան, եւ Մխիթարեան Հայրց հետ տեսութեան ժամանակ կ'արտասանէր, բանաստեղծին պատկառանաց համար յոտին կանգնելով։

Իմ Ազնիւ Պարոն,

Ես հաճութեամբ ընդունեցայ մեր ազգային դերասանաց ճարտարագունին պատկերը, որոյ առջեւ՝ դեռ ըստ բնութեան կարգի կամ հասակի՝ ընդարձակ թատր կայ հանդիսանալու։ Դու կանխաւ խնդրելովդ՝ յայտնի է որ նոյնպէս հաճութեամբ պիտի ընդունիս զպատկեր անոր՝ որոյ թատեր հորիզոնն արդէն ամփոփուած կը տեսնես իր դիմաց եւ ալեաց մէջ։ Հանդիսացիր Դու երբեմն Համլէթ եւ երբեմն այլոց կերպարանօք, եւ այն ժամուն երեւէ պէտք կրիւք. այլ երբ դիմակն եւ օտար ձեւերը թօթափես, պահէ միշտ Քու բնական դիմակդ, այնպիսի դիմակ՝ յորում անջնջ երեւի Աստուածատիպ կնիքն, որով հաստատեցաւ մարդ ի պատկեր Արարչին, եւ զարդարի քրիստոնէական շնորհօք եւ անխռով կրիւք։

Ասկէ 56 տարի առաջ ի Պոլսէ ի վանս գալուս՝ ընկեր ունէի Ադամեան Յակոբ մի, որ՝ չգիտեմ՝ Քու հօրեղբա՞յրդ է թէ ա՞յլ մօտ ազգական. նա գրաւական է զՔեզ ալ յիշելուս, մնալով

Աղօթարար Հ. Ղեւոնդ Մ. Ալիշան

1888 տարւոյն դեկտ. 30ին տեղի ունեցաւ Ադամեանի քսանեւհնգամեայ թատերական կենաց յիշատակը, որոյ գործադիր ժողովը կազմուած էր Կ. պոլսոյ նշանաւորագոյն եւ հարուստ անձերէ, որոց անուանք դրուած են Յոբելեանի տետրակին սկիզբը։ Հանդիսին մասնակցեցան միայն իւր քաղաքակիցք. վասն զի դերասանն յանձն չա-

ռու այլոց Թախանձանաց համեմատ գէթ երկու ամիս սպասել՝ որ ռուսահայք եւ ռուսք այլ մասնակցէին, որով յաջփառաւոր պիտի լինէր։ Սակայն այս հանդէսն իրեն փոխանակ ուրախութեան՝ ցաւոց առիթ եղաւ հետեւեալ պատճառներով՝ զոր կը պատմենք՝ իւր Թղթերէն քաղելով։

Կ. պոլսոյ մէջ եղան բաւական չարանախանձ լեզուներ, որք դէմ զինեցան նորա թէ համբաւոյն եւ թէ հանդիսին։ Ասոնց մէջ գլխաւորն էր Գ. Նիկողոսեան, որոյ անիրաւութեան դէմ կը գանգատի Այվազեան, առանց սակայն թշնամանելու զնա. «Մտածում եմ, կ'ըսէ, թէ ի՞նչ եմ արել արժանալու համար այդ հալածանաց. ես ոչինչ չեմ գտնում խղճիս վրայ»։ Իսկ հանդիսին գործադիր ճարտասան տեարք եթէ ոչ իրենց, գոնէ կ'երեւի՝ թէ դերասանի շահուն համար չեն խմբուած։ «Յոբելեանիս, կը գրէ նա, ոչ դրամի՝ ոչ էլ յայտնի մի նուէր, մի 5 կոպեկանոց՝ բան յիշատակի համար գոնեա՝ չեմ ստացել. Արեւելքի մէջ գրուածները սխալ բաներ են»։ Եւ կը յաւելու՝ թէ տպեր են իւր կենսագրութիւնը (անշուշտ Տօնապետեանի գրածն) առանց հարցնելու իրեն, — ա՛յդպէս կ'ընեն ո՛ր եւ է շնորհ, — եւ յետոյ պահանջեր են 1440 դահեկան։ Մի պսակ են նուիրեր, եւ փոխարէն պահանջեր 170 դահեկան, որպէս թէ հեգնէին ըսելով. Դո՛ւ զքեզ կը պսակես, ոչ մենք։ — Վերջը կը յաւելու՝ թէ ժողովոյն շատ անդամներ անտեղեակ էին այս վերջին գործոյն։ — Միով բանիւ այդ գործադիր ժողովն ամէն ծախս Այվազեանի 160 օսմ. ոսկւոյ չափ հասութէն կը հանէ, յորմէ կը մնայ իրեն լոկ 70 ոսկի։

Այս բոլորը, ինչպէս ըսինք, ինք դերասանը կը պատմէ, համեստաբար նա եւ խնդրելով բարեկամէն՝ որ գաղտնի մնան. զորս ուրիշներէ եւս լսեր եւ կարդացեր ենք։ Մենք կը լսենք դեռ ուրիշ իրեն մահացուցիչ դիպուածներն ի Կ. պոլիս՝ ա՛յլ ժամանակի եւ հանգամանաց մէջ պատահած։ Բայց լսենք այն տխուր յիշատակը՝ զոր այդ քանուհինգամեակը թողեր է իւր վերայ. այս ինքն է, Ծաղկի ա-

ւանդելոյն համեմատ, « Նոյն գիշերը ուրիշ միջադէպ մըն ալ չափազանց յուզուած, գրեթէ ամբողջ գիշերը տանջուած էր. եւ երկրորդ առաւօտ կ՚արթննար կոկորդի սաստիկ ցաւով մը. Ահա ճիշդ այն օրէն երեւան եկաւ իմ հիւանդութիւնս » ըսեր է մի օր: Ի՞նչ է այդ միջադէպը. մեր ըսած անախորժ դիպաց մի՞ն արդեօք՝ թէ ուրիշ բան:

Յիրաւի, այդ քսանեւհինգերեակն Ադամեանի փառահեղ չահատակութեանց՝ գրեթէ եւ կենաց՝ սահմանաքար մի եղաւ: Բախտն՝ որ այնչափ ժպտեցաւ անոր, անգթաբար վճռեց, Բաւ է:... Դերասանութիւնն արուեստ մ՚է, որ տարաժամ մահուան դատակնիքը սովորաբար միշտ իւր հետ ունի: Գրեթէ ամէն օր բռնադատել ինք զինքն զգալու այնպիսի կրքեր, ինչպէս են ողբերգութեանց սպառիչ կրքերը, զորս իւր կենաց մէջ բնաւ պիտի չպատահէր կրել, եւ կամ հազիւ երբեք, եւ այն՝ բնական կարգաւ. ահա քաջարուեստ դերասանի կենցաղը: Ի՞նչ դառն վիճակ: Զգայն ինչպէս ամէն շնչաւոր էակի կեանքը, նոյնպէս եւ կենաց ծախիչ հուրն է: Ամէն անհատ իւր սեպհական զգայն ունի, եւ իւր կեանքն այնու չափուած է. եւ երբ բազմաց զգայը կը միացնես մի անհատի վերայ, հարկ է՝ որ այնչափ աւելի շատ սպառի այն: Ադամեան ոչ միայն իբր քաջ դերասան ենթակայ էր այդ սպառման, այլ եւ իբր բնաւից գերազանց, յայտնի է՝ թէ ամենէն աւելի զգալով եւ կրելով, քան զամէնն արագ պիտի շիջանէր. մանաւանդ իւր այն ոչ շատ զօրաւոր կազմով: Ո՞րչափ հեռի էր իւրմէ՝ թատերաբեմէն դուրս կրել ի ծնօտին իւր Լիր արքայի ձիւնափայլ ալիքը:

Իւր աւերն՝ ինչպէս պատմեցինք յառաջ, կոկորդէն սկսաւ, այն մերթ գեղեցիկ եւ մերթ ահաւոր ձայնի աննման փողոյն խանգարմամբ: Այդ անողորմ ախտն առաջին անգամ 1888ին ձմեռան Մոսկուայի մէջ թեթեւակի ձգած էր իւր նետը, եւ անցեր գնացեր: Նոյն տարին երկրորդ անգամ զարկաւ ի Կ. պոլիս, ինչպէս յիշեցինք.

բայց Վրոյր երկրորդ հարուածը 1889ի գարնան կը դնէ, Գերայի մէջ մի հանդիսի պահուն, ուր կը յայտարարէ ժողովելոց՝ թէ անկարող է գոհացնել զիրենք։ Սակայն ընդհանրապէս կ'աշխատէր եւ կը յաջողէր յաղթել իւր տկարութեան բեմի վերայ, առ այս գործածելով սաստիկ ըմպելիներ, որք կոկորդը բանալու ժամանակ գուցէ կենացն այլ վնասեցին։ Նոյն տարին հրաւիրեցաւ ի Զմիւռնիա, ուր ներկայացոյց իւր գլխաւոր խաղերը՝ սովորական մեծ ընդունելութեամբ ժողովրդեան կողմէն. տկարութիւնը չկրցաւ արգելուլ իւր յաջողութիւնը։ Բայց երբ խաղաց Աղեքս. Դիւմայի Գինը, նա այդ երեկոյ վերջապէս յաղթուեցաւ իւր թշնամիէն. «Փոխանակ մշակուած, ներդաշնակ ձայնի, կ'ըսէ Վրոյր, լսում էր խուլ հնչիւններ։ Այդ երեկոյեան նման ձախորդ խաղ առաջին անգամ էի տեսնում որ Ադամեան խաղաց։ Իջաւ վարագոյրը. Ադամեան յուսահատած՝ դէն շպրտեց սուրը, որով սպանում էր Մէնվիլին, գլուխը սկսեց խփել պատերին եւ փետել մազերը։... Երբ հանդարտեցնելու համար մտայ իւր սենեակը, ընկաւ կրծքիս վերայ, լալիս էր բարձրաձայն եւ կրկնում. Եղբայր Վրոյր, ի՞նչ պիտի ընեմ ես. ի՞նչ պիտի լինի իմ պատիւս, իմ անունս, իմ ապրուստս»։ Նոյնպիսի ձախորդութեամբ վերջացաւ Կորրադոյի ներկայացումն այլ. «Նոյն լացն ու ողբը, նոյն սպանիչ յուսահատութիւնը։ Նա զգում էր՝ որ հիւանդութեան ժանիքը սեղմած իւր կոկորդին, քարշում է, ուզում է գլորել իրան փառքի այն բարձրութիւնից, որտեղ կանգնած է ինքը։... Նա հետզհետէ հրաժեշտ էր տալիս այն անմահ ստեղծագործութիւններին, որոնց այնքան գեղարուեստօրէն եւ բնական պատկերացնում էր, եւ որոնք սպառեցին իւր անգին կեանքը»։

Հիւանդութիւնը նոյն տարւոյ յունիսին ստիպեց զինքն Զմիւռնիայէ ի Կ. պոլիս դառնալ, ուր յետ քանի մի երկրորդական խաղերու՝ ներկայացոյց վերջինը՝ Սէր առանց համարման. եւ այն խաղն, «որը Տփղիսում բացաւ նո-

րան փառքի դռները, նոյնը փակեց նորա դերասանական փառաւոր գործունէութիւնը»։ Մենք գիտենք՝ թէ այսուհետեւ ինչ պատահեցաւ. ուստի փութանք կնքել մեր խօսքը յաջորդովս։

Վրոյրի ըսածին համեմատ՝ Ադամեան աւելի քան երկհարիւր ողբերգական, թատերերգական եւ կատակերգական դերեր ներկայացուցած է։ Առաջնոց մէջ յոյժ երեւելի են ցարդ յիշուածները։ Այդ օտար խաղուց հետ Ադամեան կը պայծառացնէր իւր վեհ արուեստիւ հայկականներն այլ, ինչպէս Արշակ Բ՝ Պէշիկթաշլեանի. Սմբատ Բ, Համամ Ա. Հեքիմեանի, եւ այլն։ Իսկ կատակերգականներին նկատմամբ չխօսուեցաւ օրագրաց մէջ. սակայն իւր ծանօթք կը վկայեն՝ թէ այս մասին մէջ այլ մեծ յաջողութիւն ունէր. եւ արդէն գիտենք՝ թէ բնութեամբ կատակասէր էր. բայց շատ չէր խաղար՝ երկրորդական համարելով զայն։

Արդարեւ մեծ եւ անփոխարինելի է մեզ համար Ադամեանի արդիւնքը։ Նա մեր մէջ յառաջ մղեց դերասանական արուեստը, զարգացոյց եւ կատարելութեան գագաթը հասոյց՝ հաւասար եւրոպացւոց. չըսե՞նք նա եւ գերազանց։ Եւ կրնայ համարձակ բերանով, լայն թոքերով գոչել՝ թէ Այդ գործն, այդ մեծ գործն իմս է։ Դարձեալ հայ բեմ՝ որ նախ քան զինքն պատմական հին դիպաց հանդէսարան մ'էր, յայսմ եւս բերաւ հաւասարեցոյց եւրոպականին, նորա վերայ հանելով կենսական նիւթեր. համոզուած լինելով՝ թէ թէատրոնը բարուց դպրոց մ'է, եւ հոն պէտք է բարոյից վերայ ազդող նիւթեր ներկայացնել։ «Դուք քահանայքդ, կ'ըսէր՝ խօսելով նոցա հետ, հետամուտ էք զմարդ գերբնականապէս կրթելու ամպիոններէն, իսկ ես թատերական բեմերէն օրինակներով կը ջանամ համոզել ուղիղ բարոյականին հետեւելու եւ չարէն զգուշանալու, ցուցնելով թէ միոյն եւ թէ միւսոյն հետեւանքները»։

Ռուս խոհական քննադատք, ինչպէս տեսանք, գերադասեցին զնա քան զՌոսսեան, Սալվինեան եւ զայլս։ Բայց

զայս եւս բաւականաչափ խորհրդածեցի՞ն արդեօք՝ թէ նա նոցա պէս գեղարուեստից աշխարհի մէջ չծնաւ. նոցա պէս յեւրոպա դաստիարակութիւն չստացաւ. եւ անոր հակառակ՝ ծնաւ մի քաղաքի մէջ, ուր դերասանութիւնը քան զինքն հազիւ փոքր ինչ յառաջ էր ծնած: Եւ երբ այսպիսի անյաջող հանգամանաց մէջ եկաւ հասաւ եւ անցաւ իսկ անոցմէ՝ սոսկ իւր հանճարով եւ քրտամբ, ուրեմն նա ուրիշ բան չէր, բայց եթէ ըստ իւր դաստիարակին գերը. Ամպերպոյեանի երգածին՝ «հրէշ բնութեան»:

Բայց եղո՜ւկ որ այդ պարծանքը իւր կենաց հետ կապուած էր: Այն հրաշալի տաղանդը, այն աննման խաղերը իւր հետ սեւաւ փոսի մէջ պիտի տանէր թաղէր. նման դարի մ'ի գլուխ բուսած այն ծառոյն, զոր փոթորիկը պտղովք հանդերձ կը խլէ՝ կը տապալէ ձորի մէջ: Նա լաւ ըմբռնած էր իւր ընտրած արուեստին այդ դառն պայմանը. ուստի եւ ցաւօք կը գրէր Դերասանն եւ Առ Ցանբագիո քերթուածոց մէջ.

«Նըկարչին մնայ գէթ յիշատակն ի կըտաւ,
Փիդիասայն ի կըճի.
Կ'անհետանայ քեզ հետ հանճարն, եւ զդիմակ
Կ'ուտէ հողոյն սեւ ճըճի...
Պատանք՝ կեանքիդ լինին թատեր վարագոյր,
Մարին լոյսեր, դադրին խաղք »:

« Ինձ հետ թաղուին այն տեղ հոգւոյս թանկագին
Զաւակներն էլ, Համլէթ, Ուրիէլ, Լիր եւ Քին.
Դո՛ւ Ալփասլան՝ որ սիրեցիր զՕթէլլօ,
Մի՛ թողուր գէթ զայն գերեզման խոթելոյ »:

Տխո՜ւր բախտ: Այլ եւ նորա բեմի լոյսերուն հետ մարեցաւ հայ ազգի փառաց ջահն եւս: Նորա կեանքը մեզ համար անոյշ՝ այլ վաղանցուկ երազ մ'եղաւ: Փառաւոր վարսամ մ'էր, անցաւ՝ եւ այլ պիտի չդառնայ: Բայց ո՛հ,

ուստի՝ կը ծածկէր իւր սրտին մէջ այն կասկածը՝ թէ իւր թողած միակ ժառանգութիւնն՝ իւր անունն այլ կրնար մոռացութեան տրուիլ, որով կը դանդաղէր.

« Պատմութիւն, նա գուցէ զքեզ օր մի յիշէ
Յապագայում՝ թէ հաճի »:

Մի՛ վախեր, ո՛վ մեծդ. քո ազգի պատմութիւնը ոչ թէ մի օր, կամ երբ հաճի, այլ յաւիտեան եւ ամենայն խանդաղատանօք պիտի հնչէ քո անմահ անունդ: Դու կաս եւ կը մնաս, մինչեւ ազգակիցներէդ մին կ'ելնէ քո հասած բարձրութեան, եթէ յաջողի՛: Բայց կը մնաս եւ այնուհետեւ անմոռաց՝ իբրեւ առաջին փառք եւ պարծանք հայ թատերաբեմին:

Հ. Վ. ՀԱՑՈՒՆԻ



# ԱԶԴ

Սոյն քերթուածները շնորհեց մեզ համազուգելոյն ազնուական հօրեղբայրը՝ տէր Լորենցիոս Ադամեան, գեղեցիկ մտածութեամբ մի խնդրելով՝ որ հրատարակենք զանոնք առանձին գրքուկով, ի յիշատակ իւր սիրելի եղբօրորդւոյն։ Իւր ղրկածները թուով վաթսուն էին, նոյն ինքն դերասանի գրչաւ եւ ստորագրութեամբ, — բաց ի վեց փոքրիկ թարգմանութիւններէ, հինգն ի ռուսերէնէ եւ մին գաղղիերէնէ, որք չեն գտանիր առաջիկայ հատորոյս մէջ։ — Ասոնց վերայ բարդեցինք նա եւ հետեւեալները, Հովահար, Ամպն եւ ծաղիկ, Պահապան Հրեշտակ, Արքայն Լիր կամ Ապերախտ աղջիկներ, Դերասանն, Ուսանողի Նամակը եւ Առ Ֆանթազիօ, քաղելով ազգային օրագրերէ՝ որ կային մեր քով։

Տպագրոյս մէջ քերթուածները ժամանակագրական կարգաւ զետեղեցինք, որով տեսնուի թէ նոցա եւ իւր կենաց մէջ եղած կապը, եւ թէ իւր ամ ըստ ամէ ունեցած մտաւոր եւս աւելի զարգացումն։ Եւ մենք ուրիշ փոփոխութիւն չըրինք, բայց միայն բնագրոյն մէջ կամայ թէ ակամայ սպրդած ուղղագրական վրիպակները սրբագրել։

Տէր Լորենցիոս նոյն դիտաւորութեամբ շնորհեց մեզ նա եւ Ադամեանի ըրած հաւաքածոյն, զոր յիշեցինք իւր կենսագրութեան սկիզբը. եւ կը յուսանք՝ թէ ապագայն պիտի փութացնէ անոր հրատարակութիւնն այլ՝ առաջիկայիս սիրայօժար ընդունելութեամբ ազգին կողմանէ։

### 1879

### ԱՌ ԿՈՅՐ ԵՐԱԺԻՇՏՆ

## ՎԱՍԻԼ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

(Գրեալ ի տան իմ բարեկամ Գ. Մելիքփաշայեանցի)



Հոգիդ վըսեմ, աչքերդ կոյր,
Կեանքըդ ի՛ մութ սեւաթոյր.
Երգերդ ունին սըրտիդ բոյր,
Այլ արուեստդ է երկնից քոյր:

Լաւ է՝ աշխարհս չի տեսնես,
Դա ցաւոց է ասպարէզ.
Հոգւովդ երկինք թէ ելնես,
Պէտք է զայն մեզ ուղարկես:

Բազումք չունին այն լեզու՝
Այնքան անոյշ խօսելու,
Որքան ձայն քոյ մատներու՝
Մեր սըրտերուն ազդելու:

Օ՛ն, դու մեզ հետ մնացիր միշտ,
Ո՛վ երկնային երաժիշտ,
Որոյ ճաշակն տաս մեզ ճիշդ.
Խոյս տան քենէ ցաւն ու վիշտ:

## 1880

### ԱՌ ՎԱՆԻՉԿԱՑ ՇԱՏԻՆՕՖՖ

Խընծոր երես, վարդ շըրթներով Վանիչկայ
Վազէ տան մէջ ուրախ զըւարթ՝ թըռչնոյ պէս.
Երբոր ասեմ, ինչո՞ւ վազես, ո՞ն ինչ կայ.
Նա աւելի շուտ հեռանայ իմ գըրկէս:

Երբ ժըպտումէ՝ գինւոյ բաժակն ի ձեռին,
Մենք ծիծաղից մեռնինք. երբոր կու խօսի,
Կարծես քընքոյշ պուլպուլն երգէ պարտիզին,
Երբ ծըռելով ասէ մընջիկ, ó [illegible]:

Հօրը միակ հըրեշտակն է Վանիչկան.
Այլ չըգիտեմ՝ թեւերն ո՞ւր տեղ է թողած.
Երևի՝ նրանց կըտրել է մայրն սիրական,
Որ չի փախչի՝ թէ տան դըռներն գըտնէ բաց:

---

## 1882

### ՔՐԻՍՏՈՍ ՅԱՐԵԱՒ Ի ՄԵՌԵԼՈՑ

Ձատիկըն հասնի, վերջանայ պասը.
Թագաւոր դառնայ կովի քալպասը.
Տէրտէրն օրհնելով՝ այնքան փող շահուէ,
Որ հաւկիթն անգամ ամաչած կարմրէ.
Փորին ուրար, ձեռքին մաշտոց,
Քրիստոս յարեաւ ի՛ մեռելոց:

Թէպէտ շատեր կան, այն օրն քաղցած են.
Ո՛չ թէ պաս, այլ միշտ նոքա ծոմ պահեն.

Նրանց համար փակ է հարուստին քսակը,
Մինչ. բանայ Քրիստոս իւր գերեզմանը.
Վասըն տնանկաց տառապելոց՝
Քրիստոս յարեաւ ի՛ մեռելոց:

Զատիկն հարուստին աւետէ ուրախ
Ճաշեր եւ գինիք եւ գառանց մատաղ.
Նոցա պասեքը նոխ է քաղցրամած,
Այլ տնանկին հացը սեւ ու մըքլոտած.
Մինչ հաւասար իրայ որդւոց՝
Քրիստոս յարեաւ ի՛ մեռելոց:

Թաղըն ճաշակով հագուած նոր զգեստներ՝
Ամեն մին գընայ քաւել իւր մեղքեր.
Ողջ եկեղեցեաց զանգերը խըփեն.
Եւ վաղն էլ կըրկին միմիանց կը խաբեն:
Մեղաւորաց, վասն արդարոց՝
Քրիստոս յարեաւ ի՛ մեռելոց:

Կարծեմ շատ անհամ բան է եւ բթամիտ՝
Զատիկին հագուած տալ դէս դէն վիզիթ.
Քառասուն հատ տան մի օրում մըտնել,
Մի եւ նոյն խօսքերն ամեն տեղ կըրկնել
Ծանօթներին և տընեցոց,
Քրիստոս յարեաւ ի՛ մեռելոց:

Այն է ծաղրելին՝ որ ման եկողներ
Շատը նրանցից են, որ ժամ չեն մըտներ,
Օրացոյցով լոկ իմանան տօներ.
Ղըրկեն մըտերմաց եւ այցատոմսեր
Եւ նամակաց ծրար ու կապոց,
Քրիստոս յարեաւ ի՛ մեռելոց:

Մեզ մօտ էլ եկաւ մի պարոն մեծփոր,
Պատրաստի գընուած շորերն սեւ ու նոր.

Իբրեւ չի լըսուած մի բան, մեզ ասաւ՝
Թէ Քրիստոս երէկ յարութիւն առաւ.
Մենք ասինք՝ այդ գիտենք վաղուց,
Քրիստոս յարեաւ ի՛ մեռելոց:

Եթէ վիզիթով գընաք ուտարաց,
Տանտիկնոջ հետ էլ երբոր սըրտաբաց
Գոշտի թէ անէք, տանտէրն ժըպտերես
Գուցէ չ՛ հաւանի ձեր Խրիստոս վօսքրէս,
Ասացէք. հաւերոյրն չլինի ձեզ խոց.
Քրիստոս յարեաւ ի՛ մեռելոց:

---

## ՔԵՐԹՈՂՆ ՄԱՀԱՄԵՐՁ

Ի՞նչ ես խորհում, ով քերթող,
Նորայքամակ եւ տըխուր.
Աչքերդ ուղղած ի՛ սեւ հող,
Քնարդ էլ ի՛ սուգ քեզ պէս լուռ:

Թանաք եւ թուղթ քոյ առջին
Բոլոր անգործ կու հանգչին.
Թանաքին պէս սիրտդ էլ սեւ.
Դէմքդ այլ ունի գոյն թըղթին,

Ինչ որ դու մի ժամանակ
Նորա վերա գրում էիր.
Այժմ ի՛ ճակատ անգունակ
Երեւումես անխըտիր:

Դու անցեալն ես երազում,
Եւ ներկայից սարսափած՝

Ի՛ զուր տեղ ես որոնում
Ապագան մութ՝ քօղարկած:

Միայնութեան քեզ ընկեր,
Աւա՜ղ, չ՚ունիս ոչ ոքին,
Եւ ոչ շանըղ գանգրահեր,
Որ լիզէ ոտդ խընդագին:

Միայնութիւն է օրրան
Սեւ ու մըռայլ խորհըրդոց,
Որ գըլխիդ վրայ ծանրանան,
Չինչ վիհեղէն մի ծանրոց:

Ցիշատակներն կեղեքիչ
Ի՛ բա՜ց վանիր, ո՜ն, մըտքից,
Որ գան իբրեւ յափշտակիչ՝
Գողնալ ժըպիտն քոյ դէմքից:

Դու յիշում ես անդադար
Հըրճուանաց այդ տարիներ,
Որ տգէտ, անհոգ, փըրահար
Վազում էիր դաշտն ու լեռ:

Եւ ինչ է պէտք այժմ յիշել
Այդ սիրահիւս օրերը,
Երբ սիրելիդ անարգել
Շնորհում էր քեզ իւր սիրտը:

Ինչ՞ու այնքան պարզամիտ
Հաւատացիր յ՚այն պահուն.
Թոռմած ծաղիկն այդ սըրտիդ
Դարել է փուշ, ցաւ անհուն:

Չըգիտէիր որ կեանքում
Սէր, հըրճուանք եւ ցընծութիւն

Քաղցր եմ՝ գրաւիչ ըսկըզբում,
Ցետոյ մեզ տամ տըխրութիւն:

Ամեն ունի մահ եւ կեանք,
Ճակատագրին է վըճիռ.
Վայլէ սիրոյն լոկ հըրճուանք,
Իւր մահը դու մի՛ գրաւիր:

Երբ նա մեռնի, ապրիր դու.
Քաղէ նրանից մեծ օգուտ.
Այն է՝ լինիլ փորձառու
Եւ կեանքի մէջ միշտ հըմուտ:...

Այլ ուշ հասաւ իմ խըրատ,
Չի մաշուել էր սիրելով.
Գերեզմանին խորխորատ
Փորել էր սէրն իւր ձեռով:

---

## ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ

### Ա.

Սայրաքաղաքին ամեն կողմն էր զարդարուած.
Օրն էր մի մեծ տարեդարձի, բերկրանաց.
Մութ երկնից տակ՝ քաղաքի մէջ բիւր ջահեր,
Հուրք պէնկալեան թօթափէին լոյս աստղեր:
Կարծես երկիրս վառած հրազներ անհամար՝
Ուզէր մըրցիլ երկընքի հետ աստղավառ:
Ամեն փողոց եւ ամենայն պատուհան՝
Վառում էին կանթեղ, բուրմունք զանազան.
Այն շլացուցիչ լոյսերի մէջ եւ ծըխին՝
Լըսուէր ուրախ շըշընկոցը ամբոխին:

Ամեն տեսակ դաստակերտի ժողովուրդ,
Ռամիկ, աղքատ, սինլքորուաց մի խառնուրդ,
Կենդանամռունչ գետի նման միմեանց
Հըրմըշտկելով կը ճըղքէին գըտնել անց:
Նուագարանաց եղանակի քաղցր հընչիւն
Եւ մինչ յիշոցք արբեցողաց և գոչիւն՝
Խառնըւելով միմեանց հետ, մեծ աղմուկ
Կազմում էին, որ պատճառէր շատ տաղտուկ.
Եւ մանաւանդ այն կանթեղներն կիսավառ,
Սեւ պատրոյգներ, որ կը ծըխին անդադար,
Գարշահոտութեամբ մըթնոլորտը լըցնէին.
Քըսակահատք եւ սրիկաներ գողունի
Ցափշտակէին ժամացոյցն ըստ շըղթայի.
Արձակելով գլխատան կեղտ յիշոցներ,
Հարուածէին շատի համեստ ականջներ:
Տարօրինակ էր այդ գիշեր. ըստուգիւ
Ով որ սիրէր գերդաստանին իւր պատիւ,
Նա դուրս չէր գար ամենեւին, այլ ի՛ տան՝
Անցուդարձը կը դիտէր ի՛ պատուհան:

Բ

Սակայն մի պահ թողնենք լոյսերն այն պայծառ,
Խուժդուժն, աղմուկ փողոցների մէջ խաւար.
Մըտնենք տեսնել, ուր հազիւ թէ նըշմարուի
Մի տընակին աղօտ լոյսը ճըրագի.
Չի այն թաղի բընակիչներն չըքաւոր
Ունին միայն ուտելու հաց մի կըտոր.
Ու վառելու՝ փոքրիկ ճարպոտ մի ճըրագ,
Աղքատութեան պըլպըլուն եւ խեղճ նըշանակ,
Որ իւր տիրոջ միայն քիչ լոյս կը շնորհէ,
Նրա խեղճութեան միշտ օրադարձն կը տօնէ:
Անդ կիսատուեր սենեկին մէջ ողորմուկ

Մին կայ նըստած, խորհի գըլուխն ի՛ յարմուկ.
Քառասունին արդէն կինի նա հասած.
Նա հայր է խեղճ՝ երեք անմայր զաւակաց:
Երկու օր էլ չեն կերած դեռ մի պատառ.
Բոլորն ծախուած, չ՚ունին ծածկոյթ մի պատառ.
Այժմ էլ չի կայ ոչ ըզբաղմունք՝ ոչ վըճար,
Որով երբեմն հացիկ գնելու գըտնէր ճար.
Սեւեռ աչքով նայի ի՛ քուն իւր որդւոց,
Առաջ հանճոյք եւ յոյս սըրտին, այսօր խոց:
Եւ հանդիսին էլ պատճառով փակուած էր
Գործատունը, գործաւորք էլ ողջ ցըրուեր:
Նա խորհում է. գուցէ որդիքս էլ չզարթնին
Քաղցի քընից, ճիշտ եւ նըման սեւ մահին.
Սակայն պէտք է, ոհ Տէ՛ր Աստուած, այն ժամին
Օգնել նոցա. սակայն մուրա՜լ... չէ՛ դիւրին:
Բայց ո՞ւր դիմէ, ու՞մ պատմէ իւր վըճակը,
Ի՞նչպէս յայտնէ իւր տառապանքն ու քաղցը.
Ո՞վ ուշ դարձնէ ողորմելի մուրացկին,
Եւ ո՞վ կը տայ ողորմութիւն՝ հացի գին:
Ողջ քաղաքը իւր զբօսանօք ըզբաղուած՝
Գիտնալ չուզէ՝ որ կան մարդիկ դեռ քաղցած.
Գուցէ արբեալ այժըմ իրա նըմաններ,
Դէս դէն ման գան. ինքըն ինչո՞վ է տարբեր:

Գ.

Նա մի րոպէ երկինք նայեց աղօթաւոր,
Գոչեց. Աստուա՛ծ, դո՛ւ մի՛ թողներ ինձ անոք:
Տանից դուրս գնաց թոյլ ու տատանամ ոտքերով.
Նրա նեցուկն էր լոկ որդւոց սէրն ու գորով.
Այլ անօթի ծարաւ, գլուխը պըտոյտ գար.
Իւր շուրջն ամեն առարկաներ մըթընճար.
Զի շահերի այդ լոյսերը փայլ ի՛ փայլ՝

Արգիլէին որոշ տեսնել ոտից քայլ:
  Գնաց ի՛ խարխափ, կանգնեց մի տան յանդիման,
Ուր ածէին երգք եւ նուագք զանազան.
  Ծաղիկներով սարգած պճնեալ դռան միջից՝
Արբած, թմրած սիրուց՝ գինուց՝ հաճոյքից,
  Գային ի՛ տես տեարք եւ տիկնայք նազելի,
Խեղճ տնանկին հակապատկերք ծաղրելի.
  Ուր շքեղ կառքեր ըսպասէին դռան առաջ՝
Ընդունելու իւրեանց հիւրեր բաղդահաճ:...
  Այն րոպէին ջրոց հեղեղներ ի՛ տարափ
Իջան երկնից, շիջան լոյսերն հըրատապ.
  Իւրաքանչիւրն խառնիճաղանճ ըշտապէր՝
Ի՛ գիշերի պատըսպարան որոնէր:
  Այլ այն թըշուառ հայրըն՝ որ թէթեւ
Ունէր ցընցոտ մի լաթի կտոր ուսին վերեւ,
  Անձրեւին տակ իբրեւ ցամաք շիւղ յարդի՝
Կորած անհետ ի՛ գիրկ անհուն մի դաշտի,
  Գլորուեց շըրջեց գետին դողդոջ իւր մարմին,
Որ շօշափէր արդէն մահու գերանդին.
  Ինկաւ յ՛առուակ այն անձրեւի ցեխավար.
Եւ ամեն ինչ տիրեց կըրկին մութ խաւար:
  Լըռութիւնը թագաւորէր ամեն կողմ.
Դեռ գիշեր էր. սակայն յանկարծ ցըրտիկ հողմ
  Առաւօտեան աւետաբեր իբրեւ շունչ՝
Վանեց ամպերն, եւ երեւցան աստեղց փունջ:
  Արշալուսոյ թեւերը ջինջ ոսկեզոյն
Չէր աւետած վերադարձը դեռ արփւոյն,
  Երբ չորեքին հոգիների մի խըմբեակ
Գնացին բաղխել երկնից հիւրընկալ սուրբ դըռնակ:



# ՏՓՂԻՍ

Եթէ ես գնամ մէկ օր Տփղիսից՝
Պահելով նորա յիշատակն անբիծ,
Ուր որ էլ լինիմ՝ միշտ պիտի խօսեմ
Նորա գովեստը, ու կարօտ քաշեմ:
　　Շատ բաներ ունիմ գովելու համար,
　　Ո՞ր մէկըն ասեմ. անթիւ անհամար.
　　Ուրախացուցիչ գինին ոսկեփայլ,
　　Սազանդարն ու պար, երգեր այլ եւ այլ,
Անոյշ կլիման, օդը եւ ջուրը,
Լուսնակին հայլի, փրփրացող կուրը,
Փառաւոր ճաշեր, ուր տեղ թամադան՝
Օգնականին հետ գինւոյ մէջ կ'լողան:
　　Վերջապէս, վառվռուն արեւը պայծառ
　　(Զննայելով որ լինծ տըւաւ Քաթառ,)
　　Փակում է շուտով ծըմեռուայ դըռներ,
　　Եւ հրաւիրում է գարնան ծաղիկներ:
Հիւրասիրութեան յիշատակն ազնիւ՝
Չը պէտք է ջընջուի սրտիցըս վաղիւ.
Որ օտարականն այս տեղ գըտնումէ,
Քաղաքն ու քաղքցին սիրում՝ մընումէ:
　　Տփղիսում մարդըս միշտ ուրախ կ'ապրի
　　Բարեխօսութեամբ սըրբոյն Դաւիթի.
　　Նա էլ՝ կարծում եմ, դեռ սուրբ չըդառած՝
　　Լաւ թամադայ էր, մեծ անուն հանած:
Եւ ինչո՞ւ չ'կարծել՝ որ Նոյ նահապետ
Այս տեղից տարաւ տապանում իւր հետ
Լաւ գինիք, որ երբ աշխարհ ջուր լըքցուեց,
Իւր ըմպելիքից նա չըզըրկըւեց:
　　Շատ քէֆ անելու Տփղիս մի բանտ է.
　　Լեռանց շըղթաներ մեզ կը կաշկանդէ.

Մինչի կողմը փոս՝ մի գինւոյ թաս է.
Ննազաթով չի խմող՝ խելքից պակաս է:
Բայց ես առաւել այժան գովեստի՝
Մոգական մի բառ կայ շատ հիանալի.
Որ եթէ մի դարդ կամ վիշտ ունենաս,
Կը մխիթարուիս՝ թէ ասես. Մախլամա:

---

## ՈՒՂԵՐՁ ԱՌ ՔԵՐԹՈՂՆ
## ՏԻԳՐԱՆ ԱՃՈՏ

Եթէ խարոյկին ճարճատող բոցեր
Սրլանան յ'եթերս՝ կապուտակ ծըխով,
Թէ գարնանային ծաղկաբաց ղըռներ
Հրաւիրին ծիծառն՝ իւր փոքրիկներով.

Թէ ընութեան ի՛ գիրկ՝ ամեն ինչ դիմէ
Մի նըպատակի, նորանից գրաւուած,
Առուակըն ի՛ գետ, գետն ի՛ ծով վազէ,
Սիրտն ի՛ խինդ՝ ի՛ սէր, հոգին առ Աստուած.

Ինչո՞ւ այժմ էլ ես սըրտովըս բոլոր՝
Հոգւով յափշտակուած առ քեզ չըղիմեմ,
Երբ սիրահամբոյր երգօք ծաղկոլոր
Ինձ զըրաւում ես, ով ոգի՛դ վըսեմ:

Քու երգերում մէջ գըտայ երկնային
Այն կայծըն, որոյ եղայ սիրահար.
Այդ՝ Աստուած կու տայ միայն քերթողին,
Որ մարդիկ երկնից առնեն գաղափար:

Միմիանց անծանօթ՝ թէպէտ հեռու ենք,
Բայց արդէն ըզգամ քեզ մըտերմութիւն.
Կարծեցի՝ վաղուց հոգւով եղբայր ենք՝
Երբ ինձ ազդեցիր քու խանդիդ աւիւն:

Ցետոյ, դու քերթող, այլ ես դերասան.
Դու ունիս քընար, ես կըրից դիմակ.
Ճանչնալու քի՞նչ պէտք քաղքավարութեան.
Միթէ Ողիմպեայ չե՞նք յետնաբընակ:

Ասումեն, հազիւ քսանեւչորս գարուն
Անցնելով գըլխիցդ՝ մազերդ են կորզել.
Բայց մի՛ վըհատիր, գէթ մէջը սիրուն՝
Անոյշ՝ անթառամ ծաղկունք են թողել:

Բուրմամբ այդ ծաղկանց ես ըզմայլեցայ.
Նազլուի մահը երբոր կարդացի,
Աչքերըս լացին, հոգւով տըրտմեցայ
Նորա շիրմին վըրայ, ըզքեզ սիրեցի:

Աստուած թող պահէ քոյ կէնճ արեւը,
Երեք վըշտերըդ ցընծութիւն դառնան.
Այս՝ քեզ իմ մաղթանք եւ իմ բարեւը.
Մանաւանդ մի օր յարգըդ թող ճանչնան:

Եւ այն սեւ աչաց ածուխն՝ բոցն ու կըրակ,
Որ անշուշտ խանդիդ աղբիւրքն են գողտրիկ,
Վա՛ռ պահէ երկինք ի՛ սէր ներդաշնակ,
Որ կարես երգել սէրն եւ գեղեցիկ:

Յառա՛ջ, բարեկամս, յառաջ եկ ի՛ լոյս,
Այդ խանդովդ ազնիւ մի՛ մնար դու ի՛ ստուեր.
Լոյսը չէ՛ կարող ծածկըւիլ, տալ խոյս.
Նորա պաշտօնն է հալածել զ՛գիշեր:

Երգէ՛, մի՛շտ երգէ, քաղցրիկդ իմ պըւէտ.
Աշխարհքն ու կեանքը ունայն է եւ փշոտ.
Գոնէ դու՛ վարդեր մեզ թափէ քնարէդ,
Այլ քեզ դափնիներ, ո՛վ Տիգրան Աշոտ:

## ԽԵ՛ՂՃ ՈՒՍԱՆՈՂ

Դեռ հազիւ կայ տասն եւ ութը տարեկան.
Ըզգայուն սիրտ, դէմքըն աշխոյժ՝ դուրեկան.
Տանեաց ներքեւ բնակարանն է մի անկիւն,
Ուր ծըմեռան լըսուի միայն մըռընչիւն:

Եթէ հնացած մի զգեստ ունի, գիշերուայ
Վերմակ լինի, որոյ ներքեւ կը դողայ.
Այլ ցերեկին դըրսանով դուրս գալ ամաչէ,
Այդ պատճառաւ նա բոլորից կը փախչէ:

Չի դըպրոցի վերատեսուչն ասել էր՝
Որ այն շորով նորան դըպրոց չ՚ընդուներ.
Նա էլ սաստիկ յուսահատուած հեռացաւ՝
Քաղցած փորով, հոգին տըրտում, սիրտն ի՚ ցաւ:

Մէկ նայեցէ՛ք ուսանողին դէմք գունատ,
Որոյ պյտեր արցունք ծածկեն լոկ առատ.
Սառ սենեկին մէջ տակաւին այրումէ.
Գուցէ սըրտի կըրակից դեռ փոխ առնումէ:

Մինչդեռ անդին՝ քամակը տաք, փորը կուշտ,
Գըլուխնին լիք քամիներով մի փամփուշտ,
Լաւ զարդարուած քանիսը կան՝ որ ոսկին
Կ՚ասեն՝ փայլի առաւել քան փայլ մըտքին:

Խեղճ ուսանողն պատրաստում է ապագայ,
Մինչ ներկայում նեցուկ պատառ հաց չըկայ.
Անցելյն մէջ նա որբ մընաց իւր ծնողից,
Իսկ այժմ, աւա՜ղ, մոռացուած է ողջ ազգից:

Տըւէք ուրեմն ուսանողին չըքաւոր,
Դուք որ առողջ եւ ունեալ էք ունեւոր.

Շահու՝ փառաց համար թէ կ՚տաք օտարին,
Նրան էլ տըւէք՝ փոխէ ի՛ շահ ձեր ազգին:

Մոռացութեան ժայռին ներքև բողբոջած
Նա մի բոյս է, պալատիզներից արտաքսած.
Մի՛ կոխոտէք զէթ նորափթիթ այդ բուսիկ՝
Որ վայելէք ապագայում իւր բարիք:

Տըւէք, տըւէք իւրաքանչիւր մի մի բան՝
Ի՛ սէր Ազգի, ի՛ սէր ազնիւ մարդկութեան.
Զարհամարհենք հատ ցորենին, որ ի՛ հող
Մի օր ամբողջ դաշտ դառնալու է կարող:

Ներկային հետ մեր յոյսերն էլ փըճացան,
Ապագային պէտք է անել վարուցան.
Լաւ է նրանից՝ որ անտարբեր ունի փող՝
Այն մարդասէր, խեղճ եւ քաղցած ուսանող:

---

## ԱՌ ՄԱՅՐՆ

Ամենայն բան է անցաւոր
Այս աշխարհում հեշտ՝ վաղանցուկ.
Ուշ կամ վաղիւ հաճոյք բոլոր
Վերջանում են ի՛ ցաւ ի՛ սուգ։
Գարունն անցնի, ծաղկներ թոռմին,
Լռէ թռչնիկն անտառասէր.
Նոյնպէս մարդն էլ ըզգայ ցըրտին՝
Որ հասնումէ կենաց ձըմեռ:
Ամեն անցնին, չեն թողուլ հետք՝
Ինչպէս սիրոյ խաբուսիկ նետք.
Գեղեցկութիւն էլ մերկանայ
Իւր ծիրք սիրոյ եւ մահանայ:

Դուք էլ, տիկին միշտ նազենիկ,
Մի օր անշուշտ կը թառամիք.
Ժամանակին անգութ մանգաղ՝
Քանդէ ալդէ ողջ կաղ քող կաղ:
Թէ փորձութեան այս խեղճ ծորում
Մըթազնին վաղ ժըպիտ՝ խընդում,
Ցոյց լինի ձեզ որ դուք մայր էք,
Դեռ մի որեշտակ՝ այլ թեւաբեկ:
Դուք յանձնած էք ձեր զաւակաց՝
Այն թեւերն որ ձեզ են տըրուած,
Որ սըրբութեան շաւղով սլանան
Երբոր նըրանց ցոյց տաս ճամբան:
Գեղեցիկ է սիրել կընոջ՝
Իբրեւ սիրոյ տունկ ի՛ բողբոջ.
Այլ պաշտելի եւ պըտղատու
Կենաց ծառ է՝ մայր սիրարկու:
Հաւատացէք, բամբիշդ ազնիւ.
Ժամանակին անգութ անիւ
Երբէք աշուն՝ ձըմեռ չ՚ունի,
Մօրկան փառաց զարնանային:

---

## 1883

## ՄԱՀԱԳԱՐՏԻՆ ԸՆԿԵՐԸ

Բանտարկուած մի քառակուսի սենեկում,
Սեւ՝ անթափանց պարսպօք խոնաւ ու տըրտում,
Աղօտալոյս պատուհանից երեւի
Երկնից կապոյտ, երբեմն սատեղք գիշերի:
Մահապարտին ոտիցը մօտ՝ լուսազուրկ
Կայ մի բուսիկ, բանտոն արած իւր խանձարուրք.
Նա օրից օր աճէր քիչ քիչ բարձրանար,
Միայնութեան իբրեւ ընկեր վըշտահար:

Աքսորելոյն թուէր կարեկից նա միակ,
Ծաղկելով այն խոնաւ փլատած պատին տակ.
Կարծես թէ ժպիտ՝ լեզու ունէր խոստմնալից,
Թէպէտ նրա պէս լքեալ անյոյս բոլորից:
	Բանտարկելոյն արցունքն էր ցօղ բուսեկին.
	Գունատ՝ անբոյր, այլ յուշ ածէր միշտ լուսին
	Յիշատակը խաբ անցելոյն, սիրելեաց՝
	Որոց այտեր իւր թերթիցն աւել էին թաց:
Թաց ու խոնաւ՝ արտասուքից միշտ աղի,
Այն խեղճ տունկը օրից օր էլ նըւաղի.
Չի երկուսն էլ էին ի՛ մահ դատապարտ,
Մինն յանցաւոր, այլ ծաղիկըն էր անպարտ:...
	Բանտապանը մի օր գըտաւ նրան մեռած.
	Ձեռքին բռնէր այդ բոյսիկը չորացած,
	Որ իւր ծոցում ծածկեալ թոյնով աննըման
	Փըրկել է զայն անարգանքից գըլխատման:

---

*1884*

## ՀՈՎԱՀԱՐ

Սատանայ չէ՛, զի չունի պոչ ու կոտոշ.
Հրեշտակ էլ չէ, զի զոյգ թևերն են պակաս.
Ուղիղն ասեմ, արարած մ՚ է անորոշ,
Ո՛ւր որ լինի՝ պատճառէ միշտ մեծ վընաս:
	Սատանայի աչքեր ունի մեղմ և կրակ՝
	Ձըգողական մի զօրութեամբ անմըռունչ.
	Շըրթանց վըրայ մեղուների երամակ՝
	Կարծես՝ դըրել են մեղր և խայթոց, ծաղկանց փունջ:
Մի նայուածքով կարող է տալ մահ եւ կեանք,
Ձեռքն ինկնողը հեշտ եւ շուտով չ՚ազատիր.
Գուցէ ի՛ հող կը գըտնէ նա զիւր փըրկանք՝
Եթէ սիրով պաշտէ նորան ծընրադիր:

Նա մի հրեշտակ ըստեղծուեցաւ նախապէս,
Այնքան սիրուն, որ ստեղծողն իսկ ըզմայլուեց.
Փոփոխամիտ սակայն թեթեւ թռչնի պէս՝
Թռչըտելով սիրտ էր մաշում իբրև ցեց:
Եւ Աստուծոյ հըրամանացն աննմազանդ՝
Բացակայ էր շատ անգամ երկընքից,
Չի այն տեղ էլ անխըղճաբար աստ եւ անդ՝
Աղէտ գործէր, սէր տեղալով աչքերից:
Արարիչն իսկ ըրտմըտելով՝ յետ առաւ
Հըրեշտակի նորա թեւոց գէթ մինը.
Եւ նա մնացած անզոյգ թեւով՝ գլորուեցաւ
Ինկաւ յ'աշխարհ, եղաւ մեր մայրն ու կինը:
Սիրենք նորան՝ գեղեցկութեամբն ըզմայլած.
Պաշտենք նորան՝ անցեալ վիճակն յիշելով.
Ուր որ հանգոյք կամ աղէտ կայ անմոռաց՝
Նա է պատճառ, կը յայտնըւի շատ շուտով:
Սուրով՝ կրակով ըսպաննողին կայ օրէնք
Կախաղանի եւ կամ պատժոյ գըլխատման.
Բայց կինն որ մեզ կը տայ թէ մահ, թէ գեհենք,
Դարձեալ սիրոյ, ներողութեան է արժան:
Որովհետեւ նա հրեշտակ է միաթեւ,
Եւ աւելորդ այդ թեւն ունի միշտ ծերին,
Կը գործածէ իբր հովահար մի թեթեւ.
Նորա զեփիւռն՝ արծարծէ մեզ հուր դժոխքին:



# Ի ՄԱՀ ԱՌԱՔԻՆԱՋԱՐԴ
# ՀՕՐՆ
# ՑԱԿՈՎԲԱՑ ՍՈՒՐԷՆԵԱՆ

*Սառնամանիք սառ երկրումը հիւսիսի՝*
*Ծածկեն ճշխարքն առաքելոյն Ցիսուսի.*
*Անյազելի հողում եղաւ նա աւար,*
*Նա՝ որ հայրն էր մեր ամենից հաւասար:*
*Բայց յիշատակ նորա երբէք չէ՛ մեռած.*
*Նա միշտ կ'ապրի մեր սրտերում տրխրամած:*
*Այն սառ երկրում օրինակով՝ սիրով ջերմ*
*Պըտղաբերեց ազգայնութեան սիրոյ սերմ.*
*Օտարաց մէջ իւր կըղերի լոկ տիպար,*
*Հայ խմբեակին պաշտպանն էր եւ պատիւ տար:*
*Նա միշտ կ'ապրի եւ կը մընայ անմոռաց*
*Մեր սըրտերում. ո՛հ, նա բընաւ չէ՛ մեռած:*
*Փիլիսոփայ՝ եւ մարդասէր աշակերտ*
*Այն Աստուծոյն, որոյ Խաչի սիրակերտ*
*Ըստուերին տակ՝ կը հաւաքէր իւր փարախ,*
*Բազկատարած, անոյշ ժըպտով եւ ուրախ:*
*Նա ճոցանում հոգւով կ'ապրի, չէ՛ մեռած.*
*Գերեզմանը մարմինն է միայն գըրաւած:*
*Այո՛, կ'ապրի սըրբակըրօն ծերունին.*
*Եւ իւր ըստուերն որմոցը վրայ տաճարին*
*Կը սաւառնի. եւ ոտքերուն իւր հետքեր՝*
*Սուրբ խորանին սստինճանաց զարդ են դեռ,*
*Ուր տեղ այնքան հոգիներ է ըսփոփած,*
*Նա ճոցանում, ո՛հ, բընաւին չէ՛ մեռած:*
*Մարմին Տեառըն ընդունող կը տար նա հոգւոյն,*
*Իսկ իւր հացը՝ կեանք աղքատին եւ որբոյն.*

Տընում՝ հոգւով Աստուծոյ էր նա դրացի․
Խօսք Քրիստոսի տանը դընէր ի՛ գործի․
Տար ապաստան, մըխիթարանք եւ կուշտ հաց․
Նա աղքատի սըրտումն ապրի, չէ՛ մեռած։
Ապրի նաև գրականական կրկէսում,
Իւր գեղահիւս եւ օգտաւէտ գրքերում․
Ապազային մի անաչառ պատմութիւն
Պիտի գովէ նորանում նախ մարդկութիւն։
Այլ ազգութեան շահին մէջը միշտ արծարծ,
Իբրեւ մի բոց պիտի փայլի, չէ՛ մեռած։
Միշտ սըրբութեամբ պիտի լինի յիշատակ
Այն արդարոց, որք յ՚անթառամ ի՛ պըսակ
Բարի գործոց բողբոջեցին իրենց օրեր՝
Մինչեւ անգամ տաղանդազեղ սերունդներ։
Իւր զաւակաց հոգւում գործում, չէ՛ մեռած․
Պիտի մընայ միշտ նոցանում տըպաւորուած։
Պիտի ապրիս, պատկառելիդ իմ հայրիկ,
Ամենայն տեղ՝ խըրճիթին մէջ աղքատիկ,
Խեղճ եւ անտէր ուսանողին իսկ յարկում,
Նա մանաւանդ իմ պանդըխտի այս սըրտում,
Որ թէպէտ այժմ սուրբ շիրմէդ էլ հեռացած,
Համբոյր արցունք տալով կ՚ասէ՝ չէ, մեռած։
Չի կենդան է ինձ համար քոյ յիշատակ․
Խնամքով պահէ երախտագէտ քոյ զաւակ․
Գերեզմանըդ լեզու ունի կենդանի,
Ցիշատակըդ տայ բաբախիւն սըրտերի։
Այո՛, դու միշտ պիտի մընաս անմոռաց․
Քանի որ մեր սըրտին խըփես՝ չե՛ս մեռած։
Միայն այդ է վըշտահար եւ ցաւալի՝
Որ տեսնելու չենք էլ պատկերդ սիրելի․
Եւ ոչ անոյշ ձայնըդ հեզիկ լըսելու։
Եթէ նոքա ենթակայ են կորչելու,
Ամենայն օր թող մեր հոգին քեզ օրրան,
Նորից այնտեղ ծընիր, կանգնիր քոյ խորան։

## *1885*

## ԱՐԵՒԱԿԷԶ ՑՈՐԵԱՆ

*Հանդարտ եւ առոյգ, գերանդին շալկած,*
*Ուրախ դէպ ի՛ դաշտ դիմէ շինական.*
*Ուր ոսկեայ հասկերն միմեանց ընդգըրկած,*
*Այգուն հեզ շընչով շարժին եւ պար գան:*
*Հորիզոնըն ջինջ, սառ, պայծառերանգ,*
*Որ դեռ յըղի է ջահովն արփենի,*
*Ո՜հ, ո՜րքան յոյսեր, եւ ո՜րքան պատրանք,*
*Գոյն, առատութիւն բերէ աշխարհի:*
*Դեռ. վերի մասը երկնից կամարին*
*Մութ է, խորհրդաւոր վարդկապոյտ գունով,*
*Նըման՝ շըրջափակն աչաց նոր հարսին,*
*Որ սիրտ բաբախէ փեսին սպասելով:*
*Ահա երկրիս էլ խաւար գոլորշին*
*Թըռչունք թեւերով մեղմիկ կը վանեն.*
*Լերինք ի՛ դաշտաց զատուին որոշին,*
*Բոյսք եւ կենդանիք միմիանց ողջունեն:*
*Ծիծաղ է համայն հըրճուանք եւ խընդում.*
*Համաձայն հաւերն եւ ծագունք անգամ*
*Խաղ, ժըպիտ խառնեն իրենց երգերում,*
*Ովսաննայ հաստչին երգեն միակամ:*
*Գեղջուկն յուսալիր աղօթէ մընջիկ,*
*Խաչակնքելով ճակատն քըրտնաթոր.*
*Պատրաստէ իւր սուր մանգաղն հանդարտիկ,*
*Հընձել իւր ճըգանց արդիւնքը բոլոր:*
*Սակայն ը՛ւր աւաղ.... ալեւն կենսաբեր....*
*Խամրած է կիզած ցորեանքն իւր արտին.*
*Նորա չեն տար կեանք աղի արցունքներ.*
*Ցօղը չի վայլեր չորացած հասկին:*

Այլ գեղջկին դրացի հարուստ մեծատուն
Ունի բարեբեր պտղալից այգի.
Նա երբ դուրս ելլէ տանից առաւօտուն,
Նորան ամեն ինչ արտադրէ ոսկի:
Սակայն դու մի՛ լար, եղբա՛յր ցաւագար.
Թէպէտ մեծարեմ արցունք քո աչաց՝
Որք արդար՝ վըսեմ զանգատով են վառ,
Քան ժըպիտ դրացւոյդ՝ ոսկոյն պէս դեղնած:
Ջանա՛ լոկ տեսնել յ'այս հակապատկեր
Դիմակ մարդկային վըշտաց խաբուսիկ.
Կու լաս՝ զի արտիդ այրեցան հասկեր,
Մինչ խըղճով տանջւողք ժըպտին հաւասիկ:
Զի տիեզերաց փըրկիչըն հանուրց
Ասաց. «ամբարըշտին յաջողի յ'երկրի».
Ջեն կիզիր նորա ո՛չ այգին, ո՛չ խուրձ,
Նա որ խեղճութեամբ աղքատին բերկրի:
Բայց ո՛հ, խե՛ղճ է նա առաւել քան դու.
Նորա զուարթ օրերն վաղ անցնին անհետ,
Զինչ քո արցունքներ որ հոսին աղու.
Այլ դու' տի ժըպտիս եւ հըրճուիս յաւէտ:
Գիտցի՛ր որ կեանքը նման պատերազմի
Պսակօք եւ շիրմով միայն վերջանայ.
Գերեզմանի՛ն վրայ հաշտութիւն բազմի,
Եւ նա ամենի արժան վարձքը տայ:
Արտասուե՛նք ուրեմն, եղբայր իմ գեղջուկ.
Զի լա՛ց է տալիս ժըպիտն անզըթին,
Որն որ կենացն հետ շիջանի ի' սուգ՝
Իւր արտաշըքեղ շիրմին մէջ մըթին:
Մի սանդուղ գըտնես զուցէ շիրմին քով,
Ինչպէս նահապետն Յակովբ երազեց.
Դէպ ի' հայրենիք բարձրանաս հոգւով,
Անդ գըտնես քո գանձ՝ զոր չ'ուներ բնաւ ցեց:

---

## ԱՄՊՆ ԵՒ ԾԱՂԻԿ

Դեղնած են, չոր մարգագետին և լերինք.
Կիզէ արեւ ջերմ յուլիսի.
Սարսափ՝ ծարաւ պատէ երկիր,
Ըսպառնալի՛ք սեւ օրհասի:

Տըխրի բնութիւն, լռէ ճըպուռն իսկ սըրինգ·
Աւեր, կիզեալ, ցամաք դաշտում,
Կը տատանի խեղճ մի ծաղիկ,
Որ բոյր ունի դեռ իւր ծոցում.

Սակայն օրհասն ըզգայ արդէն մօտալուտ.
Ողորմագին երկինք նայի,
Ուր կայ կըտոր մ՚ամպի թափառ,
Զարդ կամարին այդ ամայի.

Ալէկոծեալ իբրեւ նաւու կողոպուտ,
Առագաստի նըման սպիտակ,
Հողմահալած, հըպարտագին
Ման գայ յերկինս դալկագունակ:

Ձայն տայ ծաղիկն. «Ամպի՛կ, գըթա՛, պահ մի կա՛ց,
«Այդ ջըրերից գէթ մի կաթիլ,
«Որով քո ծոցն է միշտ յըղի,
«Ցօղէ ցօղնոյս իմ նըրածիլ:

«Ո՛հ, մի կաթիլ բաւ է կարճիկ իմ կենաց,
«Փոխարէն տամ անոյշ բուրում·
«Կա՛ց, մի՛ գընար, ո՛վ անողորմ,
«Ըլսիր ո՛րքան քեզ եմ խընդրում».

Բայց նա խըրոխտ, մինչեւ անգամ հովանին
Իւր զըլացաւ պապակելոյն,
Որ քիչ առ քիչ կորագըլուխ՝
Կը թառամէր մռայլ եւ անգոյն:

Շըրջակայի տունկերն ամեն միասին
Հրատապ, դեղնած եւ փոշեպատ,
Ցամաք, նիհար, գօս ճիւղերով
Շըշնջէին մռունչ յուսահատ:

Անգութ ամպը դեռ հեռանար արհամարհ,
Սիգանալով լայննար, ուռէր,
Ժանգի նըման կարմիր դեղին.
Մահու լռութիւն երկրում տիրէր:

Գանգատն ու ողբ՝ լըքեալ ծաղկին հէգ խոնարհ՝
Լըսեց երկինք, և ի յարգանդ
Ամբարտաւան ամպին ի կող
Խրեց կայծակներ որոտաշանթ:

*
* *

Օձագալար ամպրոպ շանթեր՝
Սէգ ամպիկը պատառ պատառ
Բաժանեցին, եւ իւր մասունք
Ըսքօղեցին արեւն հրավառ:

Եւ ջերմաջերմ շիթք անձրեւաց
Ձերդ արտասուք ընկճեալ ամպին,
Ոռոգեցին զերկիր ցամքած,
Եւ կեանք տըւին դաշտաց ծաղկին:

Նա որ առաջ բարձր էր՝ գոռոզ,
Կարծէր իրեն երկինք գար նեղ,
Ցոյցս ծաղկին՝ առատահոս
Առուակ կազմեց ի՛ տիղմ ի՛ ցեխ:



# ԱՅԼԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ՀՆԱՑԱԾ ՀԻՆԳ ԿՈՊԷԿԱՆՈՑԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

Ժանգոտած կանանչ մի լըքեալ դըրամ
Ծովեզերքի վրայ մնացել էր անշարժ․
Ողբական ձայնով պատմէր իւր անցեալն
Այնտեղից անցնող զանազան անձանց․
Ես ժամանակով մի բարձըր լերան ծոցումը խրուած,
Մի մեծ պըղընձի բազմաճիւղ հանքի մասն էի կազմում,
Տարերքիս խառնուած, բնական դիրքիցըս գոհ եւ բաւական:
Զըզիտեմ ո՞ր թըշուառական
Անգութն արդեօք մըտածելով՝
Գըտաւ մեր այս բընակարան․
Եւ արդեօք ո՞ր չարաճըճիկն
Պատռեց կողերն այդ կոյս լերան․
Ու մեքենայք դնելով՝ գործիք,
Հարուածներով բըրչի՝ ուռան
Մեզ փըշրեցին եւ ջարդեցին․
Յետոյ մեր կտոր փըշուրները,
Փայտեայ արկղաց մէջ լեցըրին:
Որոց հետ նաեւ ես էլ դըրուեցայ՝ սեղմուած ու պընդուած
Մի սայլի վերայ, որն որ յամրաքայլ ճռալով, ճըչալով,
Զորս գոմէշ լըծած, տարաւ մեզ հասցուց մի մայրաքաղաք․
Տեղաւորեցին մեզ մի մեծ տան մէջ՝ լիքըն աղմուկով.
Ուր Աստուած միայն տեսաւ վերեւից մեր քաշած տանջանք:
Նախ ջրով լըւացին․
Մաս մա՛ս բաժնելով՝
Մեզ միմիեանցից․
Դասակարգելով,
Յետոյ կաթսայում լեցուցին կրկին
Եւ հալեցուցին տալով վառ կըրակին․

Սառեցքնելով՝ դարձեալ փըշրեցին.
Միայն այս անգամ փոքր ինչ խընամքով.
Բայց նորից մըտանք հընոցին 'ի բով:
Այլ այն տեղից դուրս՝ դեռ չէինք սառած՝
Որ մեզի տըվին բիւրաւոր հարուած
Երկըթէ ծանըր մեծ ուռանների,
Ու փոխարկուեցանք տափակ թիթեղի.
Ա՜խ թէ զխտնայիք՝ ի՛նչպէս տանջուէի:
Տափակացած, ճըմրած, յըղկած
Սատանայի մեքենայով,
Քառակուսի երկայն դիրքով,
Կըրիկ կըրիկ մեզ ջարդեցին.
Ընկերներուս հետ քովէ քով՝
Կը տեսնէի նոցա տանջանք.
Ես էլ նրանց հետ ինկայ կողով
Եւ հընչեցի ինչպէս զանգակ.
Այն մեր ցաւոց ու տանջանաց
Բողոքըն էր եւ աղաղակ.
Սակայն նոքա չի հասկացան,
Ծանու սիրով կուրցած անյագ:
Մի ամբողջ գիշեր մընացինք հանդարտ
Այն կողովին մէջ. յըղկըւած էինք
Բոլոր մարմինով, կըրած ու փայլուն.
Բայց այլակերպած. լեզու չունէինք
Որ մեր ցաւն յայտնենք այն դահիճներուն:
Եւ պառաւտեան չի ծագած դեռ լոյս,
Եկան խառն ի' խուռն, ու դըժոխային
Անթիւ մեքենայք յայսկոյս եւ յայնկոյս,
Մըթնոլորտին մէջ անիւք դառնային:
Տէ՜ր Աստուած. դարձեալ մեզ առին տարին.
Խումբ խումբ ածելով երկաթ դասի մէջ,
Ուր. մօտ մի ցուցանք դիւական զործի,
Ինձ էլ իմ կարգին առաւ իրեն տակ.

Այնպէս մէկ ճըմլեց, որ թէ պոռայի,
Տունը քանդըւէր ողջ հիմն ի յատակ:
Այս փորձանքից յետոյ կըրկին
Երբ գլորուեցայ մէջ սընտուկին,
Ինձ ըզգացի մի դըրամ ողորկ,
Ինչպէս բոլոր եղբարքս ու քորք.
Մեր վերայ էլ տպագրել էին
Թուանըշանը հինգ քաբիկին.
Իսկ միւս կողմն էլ թագաւորին
Երկգլուխ արծիւն գեղեցկագին,
Որոյ շուրջը եզերքին կից
Պսակ էր կազմում դափնոյն տերեւ,
Որ մի ատեն լերան վերեւ
Դըրացի էր մեզ յարատեւ,
Հիմակ իմ վրայ նորա պատկեր
Քանդակեցին իբրեւ ընկեր.
Գուցէ այդ էր իմ տանջանաց
Լրումըն վախճան, թերեւս պարգեւ:
Աջ ու ձախ կողմերս, նոյնպէս մեքենայք չարչարումէին
Զանազան մետաղք. եւ երբոր նոքա ինկնային արագ
Կողովների մէջ, դեղին եւ սպիտակ, վառվռուն փայլերով,
Նոցա վրայ յանկարծ ես նըշմարեցի ուրիշ նըշանակ,
Տաս կամ տասն եւ հինգ, քըսան քաբիկի թուանշաններով,
Հինգ ռուբլինոցի: Սաստիկ նեղացայ՝ իմ չընչին արժէք
Բաղդատելով նրանց. սակայն ըզգալով տեսակս ու գոյնըս
Անարգ պըղընձի, խոնարհեցուցի գլուխըս վըշտաբեկ,
Եւ այդ մետաղաց շողշողմանց մէջ իսկ փընտռեցի բոյնըս
Նախկին լեռնական: Թէպէտ ունէի ես ինքս էլ մի փայլ
Շիկագոյն կարմիր, բայց աւա՜ղ, նա չէր այնպէս դիմացկուն,
Ինչպէս ոսկւոյնը. գիտէի որ շուտ կը սեւնամ մըռայլ.
Իմ առաջ դըրուած նըման եղբարցըս հընացած անգուն,
Որոնցից կըրկին նորեկ դըրամներ պիտի ձուլէին.
Ո՜հ, քանիցս արդեօք այն տանջանքները նոքա կրել էին:

Դէզ դէզ բաժանուած,
Ու հաստ կըտաւի տոպրակների մէջ մեզ զետեղեցին.
Ու դուրս տանելով տանջանարից,
Ուր լոկ սեւ երես
Կային խումբք մարդկան,
Որք իբր ուրուական
Մեր շուրջը մանն գային,
Արծաթ ու ոսկի ընկերներիս հետ
Փոխադրեցին մեզ մի նեղ խուցի մէջ,
Ուր ապագայից անտեղեակ տըզէտ,
Ինկանք գետնի վրայ փոշոտ, թաց ու գէճ:
Մի քանի օրից յանկարծ բաց արին
Մեզ պարունակող բերանը պարկին,
Ու մի չոր պարոն նիհար՝ դեղներես՝
Այն տեղից ափով դուրս հանեց ըզմեզ.
Դաս դաս կարգադրեց ողջ իմ եղբայրներ,
Մեզնից մեծ ու փոքր կազմեց գումարներ,
Զանազան մարդկանց բաժնեց հաւասար,
Որոնք առնելով գնացին անապար.
Ոմանց ձեռքին մէջ, ոմանց էլ քսակում՝
Հեռացանք այն տնից՝ ուր տանջանք՝ սոսկում
Տեսած էինք լոկ,
Ցաւէտ անկարող
Անել մի բողոք:
Եւ հէնց այն օրից
Տանջանաց մի կեանք
Ըսկըսանք նորից:
Զունէի դադար ցերեկ ու գիշեր.
Խանութից խանութ, կըրպակից կըրպակ
Գլորուելով, քիչ քիչ գըրերս կը մաշէր.
Եւ այնպէս անարգ ինձ գործածէին.
Երբեմն սեղանի զարնելով ուժգին,
Շատ հեղ նետուելով սատիկ բարձրերից՝

Վիրաւորուէի ճպմբու քարերից:
Ա՛խ, տէ՛ր իմ Աստուած.
Եթէ գիտնայիք՝
Թէ ինչ են մարդիկ
Ապերախտ, անգութ,
Մետաղաց գերիք.
Որք կեղծիքով սուտ
Նըմաննին խաբեն
Թալանեն ըստէպ.
Ամեն բան չափեն
Շահերնուն ի՛ դէպ:
Ո՞ր մէկն ասեմ, ո՞րը պատմեմ,
Մին քանիսը միայն յիշեմ.
Զոր օրինակ, շատ ման գալով վաճառանոց ես ինկայ.
Օրական հաց, պարէն գնելու՝ ամբոխն այն տեղ միշտ կու գայ.
Ուր դիպուածով քսակը մըտայ մի լաւ հագուած պարոնի,
Որ ինձ տարաւ ուղիղ մի տուն մեծ, ընդարձակ, անուանի.
Այդ՝ քաղաքին պանդոկըն էր, ուր շատ ճամբորդք կը գային:
Այն տեղ դըրսուանց երեւցած մաքրութեանը՝ զարդերին
Համաձայն չէր ներքին վիճակն. խոհանոցը մանաւանդ,
Ուր քըսանից աւել ծառայք եւ օգնականք աստ եւ անդ
Գնային գային, շոգիների ճենճի հոտում լողալով.
Ուր աղախինք սենեակներում աղտն ու մուրը մաքրելով,
Գային այն տեղ պընակ լուանալ այդ կեղտոտած ձեռքերով.
Այլ խոհարարք երկու մատով քըթի կեղտերն մաքրէին,
Նոյն մատներով ճաշերի վրայ աղ ու համեմ սըփռէին:
Հոտած միսերն, աշխած համեմն՝ արտաքուստ լաւ զարդալած
Տային իբրեւ թարմ կերակուր անդ յաճախող ճամբորդաց:
Այս տեսնելով, փառք տուի առ տէր՝
Որ ես չ'ունեմ մարդկանց նըման
Մարմնոյ անթիւ՝ բիւր պահանջներ,
Ոչ կերակրոց ճաշակման,
Ոչ ըստամոքս, ոչ որովայն,

Ոչ փոր, ոչ սէր, ոչ ախորժակ,
Որով լափեն միշտ ամենայն,
Եւ կերածնուն են անզուշակ:
Ահա սոքա են լոկ պատճառ,
Որ նորութիւն դարձան ձեր մէջ
Որովայնի ցաւն ու քաթար:
Անդ խոհանոցի վարպետն ինձ դըրաւ
Մօտիկ մի փոշոտ մութ պատուհանի.
Ուր տեղից մի տալայ զաղտուկ ինձ առաւ
Եղբայրներիս հետ հինգ քարիկանի,
Եւ փութով վազեց կիրակի օրով
Ման գալ աջ ու ձախ քաղաքը հոլով.
Մենք էլ ճեպին մէջ ուրախ հընչելով,
Ներս մտանք քաղաքի պարտիզին դըռնով,
Ուր վիճակախաղ սարքած էին շատ
Հարուստ աղաներ, ի՛ նըպաստ աղքատ
Կամ՛ հիւանդ մարդկանց, եւ կանանց տըկար.
Ուր շըքեղ տիկնայք՝ ժըպտով մարդավար՝
Վիճակախաղի ծախէին տոմսակ,
Նըստած զարդարուն ի՛ զահաւորակ.
Ամեն մի տոմսակն արժէր քսան քարիկ:
Ինձ զողացող պարոնիկ
Խոթեց իւր ձեռքն՝ մընտըրուկ
Գըրպանին մէջ, ու հանեց
Մեզ չորս եղբարս միացրեց.
Խաղատոմսի զինը կազմեց.
Ու նետելով մեզ սեղանին վըրայ թաւշով քօղարկուած,
Որոյ դէմ նստէր մի արիստօքրաթ տիկին գեղանի,
Առաւ մի տոմսակ ու մըտաւ ի՛սրահն դըռներից բաց,
Ուր տեղ բազմութիւնն մի քանի քարիկ ի՛ սէր տոմսակի
Տային աղքատի. եւ շընորհիւ այդ խեղճ ողորմութեան
Տոմսակից էլ թանկ եւ լաւ ընծաներ իրենք շահէին.
Չի կարողացայ ես խելք հասցընել մարդկանց զըթութեան,

Աղքատսկրութեան, ուր ողորմողըն աւելի շատէր քան ո-
Սեղանին վրայ տիկնոջն առաջ (ղորմելին:
Անուշակիր ինձ թողուցին.
Երիտասարդք սիրահառաչ,
Միշտ մեր շուրջը կը դառնային.
Ես նոր ելած գործարանից,
Նախկին փայլս դեռ չէի կորցրեր.
Ճոկուէի հին եղբայրներից.
Տիկինն էլ այդ նըշմարած էր,
Որ քսակն խսկոյն դուրս հանելով՝
Տեղըս դըրաւ մի հին եղբայր,
Այլ ինձ նրա տեղ ծածկեց խնամքով,
Անուշահոտ քսակին ի՛ ծայր:
Այնքան սիրուն էր իմ այն տիրուհի՝
Որ մեղուք նորան ծաղիկ կարծէին.
Մարդկեղէն մեղուք. որոց խումբ բըռնի
Միմիանց հըրելով՝ մեզ մօտենային.
Նրանց մէջ երեք հատ ունէր սիրահար.
Տիկինն էլ նորանց սիրէր փոխադարձ,
Եւ իւր ամուսնից գաղտնի ծածկաբար
Երեքին էլ տար հառաչանաց վարձ:
Խորամանկ տիկնոջ խաղալիկ դարձած,
Զորսն էլ միմիանցից չունէին կասկած.
Զի զմայլեցուցիչ մի ժըպիտ ունէր
Անմեղ հրեշտակի սուրբ եւ երկրաւոր.
Բարեգործութեանց տիրուհի բազմէր,
Մօտն արած մարդըն իւր կոտոշաւոր:
Երեք օր լինէր որ կայի պահուած
Այդ տիկնոջ քսակում՝ արծաթ ընկերց հետ:
Երբէք այսպիսի փափկալի կենաց
Վարժըւած չէի. սակայն միշտ անպէտ
Ու չընչին մետաղ մեզ կը համարի
Հարուստն ազնուական, ու մեծ տանուտէր

Արհամարհանօք մեր վրայ կը նայի.
... Անգո՜ւթ, ապերա՛խտ. Ի՞նչ շուտ է մոռցեր՝
Որ մենք խեղճուկներս հիմնած ենք նորա
Այդ հարըստութիւն, միլեօն րուբլինե՛ր,
Զորս նա հաւաքեց, մինը միւսին վրայ
Դիզելով բոլոր քաքիկանոցներ.
Նա խնամքով պահէր մեզ այն ժամանակ,
Ու մէկ հատն անգամ մեզանից չէր տար
Մուրացկին՝ որ գնէ մի փոքր նըկանակ,
Եթէ իսկ քաղցից մեռնէր, հոգին տար:...

Վերջապէս մի օր պատուհանին դէմ իմ տանտիրուհուն
Եկաւ մի աղքատ մուրացկան կանգնեց. եւ իմ տիրուհին
Հանեց քըսակը, ուր բաց ի' ինձնից՝ մի արժանագին
Պղինձ դրամ չի կար. ու շատ բարձրերից խեղճըս վայր գլորեց,
Անշուշտ ցանկալով ողորմութիւն տալ այն խեղճ մուրացկին.
Այլ ես ինկնալով քարերի վերայ, կողըս ճզմըւեց.
Եւ ոչ ոք չ'լսեց ըզգացած ցաւըս, երբ հըռնչեցի՝ ցի՛ն...
Աղքատն ինձանով այն օրը գընեց մի հատ նըկանակ.
Ու ես մընացի հացագործի մօտ վառ փուռի կողքին.
Ուր տեղ երթեւեկն բանւոր տըղայոց, բոցերն ու վառ կրակ
Յիշեցուցին ինձ իմ անմոռանալի տանջանքս գործատան,
Որոյ շընորհիւ այսպէս թափառիմ զանազան տեղեր.
Ծալկած թուանշանս, շատ արժանագին, սաստիկ անպիտան,
Հազարաւոր կերպ մարդկանց ձեռքերում եղած տարուբեր.
Զա՛թ, այս տեղ խըփեն, բա՛թ, այն տեղ զարնեն գետին ու գլորին.
Ի՞նչ էր իմ մեղքըս՝ որ ինձ էլ Աստուած ոսկի չի ստեղծեց.
Կամ գոնեայ արծաթ, որ մարդիկ փոքր ինչ ինձ էլ յարգէին.
Այլ երբ գտնըւիմ այդ մարդկանց մօտը, որոնք մեծամեծ
Ունին կալուածներ եւ հարըստութիւն, յայնժամ ես իսկոյն
Ինձ գընահատեմ, ըզգալով անշուշտ իբրեւ պինդ մետաղ՝
Զանազանութիւնս նոցա սըրտերից. որոնք կարծրագոյն
Եւ սաստիկ ամուր՝ պինդ են ինձանից, որք չեն տար՝ աւա՜ղ՝
Այն օգնութիւնը իրենց փողերով՝ քաղցած թըշուառին,

Որքան որ ես տամ քիչ քիչ՝ ամեն օր, եղարքս էլ նոյնպէս,
Համապազօրեայ զոնէ մի չոր հաց,
Կարօտ տընանկաց:
Ոսկին լաւ օրուայ ընկերն է մարդուն.
Նա կ՚երթայ այն տեղ՝ ուր կայ լոյս հանդէս,
Բայց մենք կը հասնինք իւր նեղ օրերուն.
Որքան որ մեր վրայ նային արհամարհ,
Երբեմըն հասնի նեղութեան րոպէն,
Ուր ոսկուց թանկ է պըղինձը խոնարհ:
Այսպէս դատելով՝ ես անհամեմատ
Վեր դասեմ ես ինձ, ու չեմ յուսահատ:
Բայց եթէ իմ այս խոհեմ կարծիքով
Ինքըս մխիթարեմ, այլ բնաւ չեմ կարող
Տանջանքըս մեղմել, սաստիկ յօգնելով
Գիշեր ու ցերեկ.. գոնէ ինձ մի գող
Կամ մի ագահ մարդ յանկարծ գողանար....
Թերեւս հանգչէի փոքր ինչ նոցա մօտ:
Սակայն գողն ինձմով ի՛նչ շահ կ՚ունենար.
Նա թէպէտ սրտովն ի՚ դող միշտ երկչոտ,
Որսայ թանկագին արժող առարկան:
Գուցէ ագահը՝ ժուժկալ զարշահոտ՝
Մինչ խակ ինձանով լինի բաւական,
Անհուն գանձին մօտ ինձ էլ պահպանէր,
Ձեւանալով միշտ աղքատ մուրացկան:
Բայց ո՛չ, քա՛ւ լիցի. մի՛ արասցէ տէր.
Այդ փորձանքին էլ մէկ հեղ հանդիպեցայ,
Մի ծեր ագահի ձեռքը ինկնալով,
Գետնափորի մէջ մառան դըրուեցայ
Իբրեւ բանտարկեալ՝ միւս ընկերաց մօտ:
Մընացի այն տեղ անկենդան անշարժ.
Եւ ուրախացայ, երբ նա մեռնելով՝
Խեղճուկ դրամիկըս թափառելու վարժ՝
Նորից սկսայ մարդկանց մէջ հոլով՝

Առաջուան կեանքին իմ աստանդական,
Ի՛ շնորհըս միակ իւր ժառանգ զաւկին,
Որ իբրեւ անխելք մի յիմար անբան՝
Բոլոր ընկերներս մոգեց ամեն դլին:
Գոհ լինէի իմ վիճակից,
Համբերելով հարուածների՝
Կը տանէի արատն ու բիծ,
Եթէ միայն չըքաւորի
Հընար լինէր ծառայել միշտ.
Սակայն ամեն րոպէ վայրկեան
Տէր փոխելը՝ է մեծ մի վիշտ.
Գզրոց, սեղան, երբեմն անկեան
Մութ խորշերում գլորտըկիլ.
Իմ պատճառաւ տեսնել կռիւ
Եւ անլեզու մունջ պապանձիլ.
Մանաւանդ երբ կ՚անեն հաշիւ:
Ո՜րքան խարդախ կեղծ խաբեբայք
Կըրպակաց մէջ խաբում են մարդ.
Վաճառականք՝ նաեւ ծառայք
Մի րոպէում եւ յակընթարթ
Գընողներին երդումով սուտ
Իրենց ապրանք գովաբանեն.
Խեղճ աղքատաց՝ որք գան խանութ,
Որ գներից լաւ տեղեակ չեն,
Երդում տալով Աստուծոյ վրայ՝
Նորանց աւել դիւրաւ խաբեն
Առանց խըղճի եւ անխընայ,
Բաւ է որ միշտ ծախեն շահուին:
Նորանք կոչեն այդ՝ առուտուր.
Սակայն ես ինքս չեմ հասկացած.
Սատանայի այդ խառն ապուր,
Որին մարդիկ են ընդունած,
Գողութիւնից շատ չէ տարբեր.

Միայն դրանում զանազանի,
Որ նրանք Թալնեն բաց անտարբեր,
Այլ գողերը գաղնան գաղտնի:
Հանգչում էի մօտ մի խանութպանի,
Երբ առեւտրրի առթով լինձ տուին
Անտաղանդ տղգ՚տ մի դերասանի.
Կարճլիկ եւ կլորիկ նրման տակառին,
Այլ շատ համարձակ եւ յանդուգըն էր.
Վարքը անհամեստ եւ ապականուած.
Առաջին կարգի երբ դեր կատարէր՝
Գըծէին բեմում մի կատու սատկած:
Թէ ըստ իւր մըտաց ընդունակութեան
Ընտրէր ասպարէզ, գուցէ մարդ դառնար՝
Արժանանալով պատուոյ յարգութեան.
Բայց նա կարծում էր որ ունի հանճար
Մեծ ողբերգական. ընկերքը բոլոր
Վըրան խընդացին, նա չէր հասկանում.
Խելք չի կար խեղճին գըլխումը կլոր.
Նախանձը միայն սիրտն էր կըտրատում,
Եւ անկարգ կեանքից զինուց ոգեւոր,
Դառնալ օրից օր մի դեղնած դըղում:
Նա տարաւ հետը ինձ բեմ թատրոնին.
Ուր որ նենգ ու դաւ ու խայրդախութիւն,
Զանազան տեսակն մարդկանց կըրքերին
Այն տեղ կը տային խօսք, ժամադրութիւն:
Շատ անպատմելի բաներ անդ տեսայ,
Ու միանգամայն ըզգացի զըզուանք.
Անհամեստութեանց թիւ համար չի կայ,
Այն տեղ մի օրում դեւ դառնան կուսանք:
Կային դերասանք հագուած փառաւոր,
Որոնք երեւնին փոշած երբ դուրս գան,
Դառնում են այնպէս գրաւիչ դիւթաւոր,
Որ թիք թիք զարնեն սըրտերն աղջիկան:

Որք պաշտպանութեամբ կանանց վավաշոտ՝
Երբեմն հանճարի կ'ունենան հըռչակ,
Որոց թէ երեսն լըւանաս փոշոտ,
Տակից դուրս կ'ելլայ մի խեղճ իմաստակ:
Դերասանուհիք կան նոյնպէս շատեր՝
Որք չունին տաղանդ կամ սէր արուեստի.
Աջ ու ձախ կ'անեն անուշիկ աչքեր,
Այնպէսով ճարեն միջոց ապրուստի:
Իրենց կողմ շահին մէկն հարուստներից,
Որ անմըտաբար կը շռայլէ ոսկին.
Եթէ վերջանայ, դուրս կ'անեն տանից՝
Որ գընայ տեսնել յատակըն քսակին:
Չինչ բացառութիւն գտնըւին եւըս
Լաւ դերասաններ վարմունքով բարի,
Գուցէ անուանի տաղանդներ թերեւս,
Որ փողը վատնեն զերթ մի ափ գարի:
Մէկ խօսքով, գրեթէ չի տեսայ այնտեղ
Մի լաւ բան, բաց ի' իւր նըպատակից՝
Զոր ասին՝ թատրոնն ըզբօսանք անմեղ
Ջընջէ թերութիւնք վատթար բարքերից,
Չի արուեստական հայլի է բարուց.
Այն տեղ կը դիմեն մարդիկ խըմբովին՝
Մաքրել հոգեկան կեղտերը գըձուձ.
Այլ թէ կեղտոտ է ինքըն իսկ հայլին...
Յայնժամ խեղճերը ինչի՞ մէջ նային:

Այնտեղ լոկ տեսնեն
Փոխանակ վըսեմ
Առաքինութեան՝
Յաղթանակն ու փառք
Զըզուելի նըսեմ
Վավաշոտութեան.
Երգն ու պար անկարգ.
Ուր այր, կին, աղջիկ,

Լիրք եւ անպատկառ
Խաղերի կը գան.
Օրէքայ քօմիք,
Ուր մարդն իսկ արդար՝
Անբարոյական
Կը դառնայ սաստիկ:
Ինչպէս որ ասի, դերասանք մեզի պահել չըգիտեն.
Դուրս ելայ կըրկին այդ մութ դըժոխքից՝
Որոյ հայելոյն նաւանչք բոցեղէն
Շատերին վըրայ թողնում են մի բիծ:
Դրան մօտ ուր որ միշտ տոմսակ կը ծախեն,
Կարծեմ մի միայն երկու օր մնացի.
Տեսայ՝ հաշիւներն ինչպէս խարդախեն.
Ու մեծ զարմանօք լուռ ծիծաղեցի:
Դարձեալ ըսկըսայ գըրպանից գըրպան,
Քըսակից քըսակ, ծոցն աղքատների
Իմ ամենօրեայ կատարել շըրջան,
Երբ յանկարծ ինկայ մօտ մի տէրտէրի...
Տէրտէրի ծոցում քըրտինքից խաշուած,
Օրերով մնացի. նաեւ մի քանին
Իմ ընկերներից ունէր նա պահած,
Ու չէր վըճարեր պարտքը մսագործին:
Եկեղեցնայ մօտ մի շէն գիւղի մէջ հասայ վերջապէս.
Աղքատիկ գեղջկաց ու հողագործաց ձեռքում շըրջէի.
Ուղիղըն ասած՝ խաղաղ էր վիճակս, ու գոհ էի ես:
Ինձ նման՝ իմ գոյնով մարդկանց ծոցումը միշտ գտնըւէի,
Ոլք իմ յարգս աւել կը ճանաչէին քան թէ քաղաքում.
Ուր առանց ոսկւոյ, թղթի և' արծաթի մեզմով գոհ էին,
Ուր առանց դեղի, առանց բըժըշկի ողջ առողջ էին,
Ուր արուեստակեալ կեղծ զարդերի տեղ բնութիւն սիրէին:
Բայց այդ հանգիստս էլ չի տեւեց երկար.
Չի մի խարեբայ ձեռնածու տըկլոր
Այնտեղ զանազան խաղեր կը խաղար.

Օրինակ, չուանում շըրջիկ անմոլոր,
Գընտակներ կուլ տալ, թըռցնել ու կորցնել,
Ցոյց տալ եւ մարմնոյ զօրութիւնք ճարպիկ.
Ի քըթթել ական շուտ անհետացնել
Պըղընձէ դրամներ, ու նրանց կակուղիկ
Ձեռքում մի առ մի սեղմելով ծըռել:
Այս վերջին խաղը սաստիկ դուր եկաւ
Այնտեղ հաւաքուած ամբոխին ապուշ.
Եւ մի գիւղացի իսկոյն մօտեցաւ
Պըղընձէ մի դրամ ձեռքին մէջ վատուժ,
Նետեց խաբեբայ թըշուառականին...
Մըտածեցէք, որ ես էի այն հէգ
Դրամըն խըղճալի. եւ ի՜նչ ահագին
Ցաւեր քաշեցի, երբ ինձ կիսաբեկ
Կորացրուց ուժով անգութ խաբեբայն.
Մէջքիցըս ծըռուած տանջանքով անհուն,
Յիշեցի կըրկին իմ տանջանարան,
Անէծք կարդալով ողջ մարդկանց գըլխուն:

Եթէ գիտնայիք՝
Թէ որքա՜ն զըրկանք,
Նեղութիւն, չարիք
Տըւին ինձ մարդիկ:
Էլ մի ժամ առաջ
Մըտածէի ճար
Միշտ վըշտահառաչ,
Այս կեանքից վատթար
Փրկուիլ ազատուիլ,
Ու գըլորուելով
Երկրից ջընջուիլ:
Սակայն ո՜ւր գնայի.
Ուր որ էլ լինիմ,
Անշուշտ ինձ գըտնեն
Մարդիկ ոխերիմ:

Ա՜խ, տէր իմ Աստուած,
Ողորմէ՛ ու տո՛ւր
Վերջ իմ տանջանաց:

Մանաւանդ զզուանքս աւել սաստկացաւ,
Երբ մի գեղացւոյ խեղճ գերդաստանում,
Ուր ամեն օր գրեթէ տիրէր քաղց ու ցաւ,
Պառկած խղճիլթի մըթին անկիւնում
Իմ մետաղաքարշ ուժովըս բնական,
Ջանայի ժողվել եղբարցս մի քանին
Որ նա կարենայ գէթ իւր օրական
Սընունդը ճարել իւր ընտանիքին:
Այլ կալուածատէրն եկաւ յանկարծուստ՝
Պահանջել պարտքը տարւայ շըրջանին,
Որից չէր կարող խեղճը տալ փախուստ,
Որին անգթաբար անխիղճ թալնեցին:

Եթէ յ'այս աշխարհ
Ինչ որ ես տեսի
Կեանքումս բաղդավար՝
Գըրել հարկ լինէր,
Այնպիսի մի մեծ
Հատոր կազմըւէր,
Որ գուցէ երկրիս
Դառնար ծանըր բեռ:

Առաջին փայլըս կորած էր վաղուց.
Հինգ թըւանըշանս աւրած, աննըշմար՝
Մարդկանց ձեռքերում տարուբերուելուց.
Գոյնս էլ փոխուեցաւ սեւացած խաւար:
Մէկ վախ էլ մըտաւ սրտումըս յանկարծ՝
Որ չըլինի թէ ձուլուելու կըրկին
Գործարան տարուիմ... տըխո՛ւր վերադարձ.
Որից՝ վերջապէս փըրկեց ինձ երկին:
Ջի այդ յափշտակող կալուածատէրը
Մի ծովեզերեայ տան մէջ բընակէր.

Որի կոշտ ծառան գրեթէ ողջ օրը
Հարբած գլորտըկէր։
Մէկ օր էլ այնպէս
Սաստիկ հարբած էր,
Երբոր սահելով
Գըլորուեց ի՛ ծով։
Այլ շուտ սթափելով,
Լողաց ազատուեց։
Սակայն եղբայրներս՝
Ես էլ նոցա հետ՝
Գըրպանիցն ինկանք
Ու ծով թափուեցանք
Ու կորանք անհետ.
Ի՜նչ ուրախութիւն։

Երբէք այդ ծառան մահից ազատուած՝
Այնքան չէր ուրախ աշխարհ դառնալով,
Որքան ես խեղճուկս տանջանքից դադրած,
Ծովերի խորքում հանգիստ գըտնելով։
Երկար տարիներ ննջեցի այն տեղ ի՛ խաղաղութիւն,
Երբոր փոթորկաց ահեղ մըռընչիւն
Ծովըն յատակից ալէկոծեցին.
Բարձրացան ալիք, յորձանք փըրփրածին,
Որք ինձ ծովեզերք յանկարծ գըձեցին։
Ա՛ւ ինձ, ո՛վ անցորդ, կըրկին ծո՛վ նետիր.
Ինձնից քեզ օգուտ՝ խընդրեմ մի՛ սպասիր.
Տես ժանգոտեր եմ,
Մամուռ կապեր եմ,
Երկու քաբիկի արժէքս է մնացեր.
Դարձուր ինձ կըրկին ի՛ ծով իմ դըրախտ.
Գէթ դու մի՛ լինիր անգութ ապերախտ
Քոյ նըմանեաց պէս. որք թէ իմանան
Իմ այստեղ լինելս, անկասկած կը գան
Առնել իբրեւ մի շատ թանկագին բան,

Խոթել ինձ նորից այդ տանջանարան:
Ո՜հ, ազատիր ինձ՝ խընդրեմ՝ այդ տեղից,
Այս դառն աշխարհքից,
Որ սէրն էլ հոգիդ փըրկէ դըժոխքից:

---

## ՎԻԿՏՈՐ ՀԻՒԿՈՅԻ ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Ստաց եւ սըրտի արցունք հոսէ տիեզեր,
Հոգւոյ անմեռ շիջեալ ջահըն նա կ'ողբայ.
Որ արդ անմահ յաւիտենից ի' յ'եզեր՝
Երկրագընտիս՝ թըւի՝ աւել լոյս կը տայ:

Յիշատակն իւր մթագնէ աչքեր մեր մարմնուն.
Նորա՝ որ մեր հոգւոյ աչաց լոյս տըւաւ
Ոգոյն ջահով, որոյ խանդից միշտ անհուն
Տըգիտութիւն մըթութեան հետ խոյս տըւաւ:

Յեղափոխեալ Գաղղիան երբ կը ճըգնէր
Մերթ խուժանին կամ մերթ եսաց լուծին տակ,
Արիւնազանգ հորիզոնում անվեհեր
Փայլեցաւ նա իբր ըսփոփանք երկնաւաք:

Խոնարհեցուց Վաթէռլոյի արծիւն սէգ
Իւր մութ ճակատ, ընկճեալ ի' փառս յեղյեղուկ.
Կամ նորանշան այդ տեսիլքից ահաբեկ,
Որոյ արդէն լըսուէր թեւոց վեհ շըշուկ:

Իրօք ոգին սաւառնաթեւ գայր ի' կռիւ
Կուրծ ընդ կըրծի Պօնաբարթեան թըռչնոյն հետ.
Մարտընչեցաւ անդուլ, անխոնջ գիշեր, տիւ,
Ծիրանքն ու շանթ՝ կորզեց փետուրքն իւր ի' պէտ.

Եւ պարտելոյն փետրից շինեց անհեղ գրիչ,
Որով երբեմն գերեաց շըղթան խորտակէր.

Տըգիտութեան խարխուլ շէնքին մերթ բըրիչ
Երբեմն էլ քնար, որով պատիժ՝ սէր երգէր:

Իւր վեհ ոգին ողբաց սիրով զ’մարդկութիւն,
Վըսեմ թարգման նորա ժըպտին եւ վըշտաց.
Խանդ անըսպառ վեհ ըզգացմանց, սէր՝ ափին
Որբին, հարստին, աղքատին եւ հայրենեաց:

Կործանեցաւ դիւաշէնըն Կիյյօթին,
Դողաց Մառաթ իւր փոսին մէջ մահահոտ,
Երբ նորա տեղ հիմնեց սիրոյ սուրբ բագին
Երջանկութեան, Հիւկօ’նդ Շապօ եւ Շառլօթ:

Իննսուն երեք թըւին արեան հեղեղներ,
Կաթն՝ որ երկիր ծըծեց մահու ըստինքից,
Նորա խնամքով բըղխեց սիրոյ առուակներ,
Մաքրել, չընջել հայրենեաց վէրքն, արատ, բիծ:

Անսահման է աշխարհի սուգն ու աղէտ՝
Որն որ այսօր իւր շիրմին շուրջ բոլորի.
Ծերունի էր եւ խօթացեալ նա թէպէտ,
Այսու հանդերձ ո՞վ հաւատար որ մեռնի...

Ամեն կողմից ցաւոյ սըգոյ ձայն տըւին.
Թէ մեզնից դուրս կան մարդաբնակ աշխարհներ,
Գուցէ անտի էլ մեզ սըգով լուր տային՝
Թէ այժմ երկիրս կաթիլ մ’արցունք է դարձեր:



# ՀՐԱՇԱԼԻՆ ԽԻՀՐԷՇԱԻՈՐԸ

## Ա

Մի քաղաքի մէջ, ուր շատ ունեւոր
Կային մեծատունք,
Արուեստաւորներ եւ համեստ բանւոր
Կարող էին անդ
Վաստակով գտնել մի օրապահիկ,
Կար միայն մի մարդ
Ցխուն տարեկան, ունէր ընտանիք.
Որ յանկարծ հիւանդ,
Անյոյս մնալով, կընոջն ու որդւոյն
Նայէր հեծելով.
Ու անիծէր բաղդն իւր անագորոյն,
Որ իրեն արաւ
Այնպէս անկարող՝ տալ նրանց կերակուր
Քրտամբ իւր ճակտին.
Երեք ամիսներ անհա յուսակտուր,
Կը հեծէր տխուր:

## Բ

Տասնեւիննամեայ որդին էր միակ
Իւր մխիթարանք.
Համեստ հրաշալի, ազնիւ, ընդունակ,
Որն որ խոստանար
Մի մեծ ապագայ, անուն եւ համբաւ.
Բնութիւնն օժտած էր
Նորան տաղանդով, սուրբ կրակովն անբաւ
Մի մեծ նըկարչի:
Նա ժամեր ամբողջ ըզմայլած սիրով

Բնութեան հիանալի,
Մի խեղճ խանութի նըստած դըրան քով,
Ուր մերթ ծառայէր
Իբրեւ առտուրի հաշուաց կարգադրիչ․
Պարապոյ ժամեր
Գաղտնի գըծագրէր ձեռքին մի գըրիչ,
Խեղճուկ նըկարիչ:

Գ.

Հազիւ թըշուառներն մինչեւ այն ատեն
Ապրեցան կարօտ.
Կինն էլ յղի է... ու պատրաստ արդէն
Ուրիշ մի զաւակ
Աշխարհ բերելու. մի հատ աւելի
Անօթի անդամ
Խեղճ գերդաստանին, մի բեռ ցաւալի:
Թերեւս ապրուստի
Պէտք եղած գումարն, աղքատիկ հացի,
Շուտով հարկ լինի
Բժըշկաց վըճարել կամ մանկաբարձի:
Այր եւ կին շուարած՝
Նայում են միմեանց երեսին գունատ,
Լուռ եւ անմըրմունջ,
Առ Աստուած բողոք բառնան յուսահատ
Եւ արդար գանգատ:

Դ.

Քաղքում բոլորին ծանօթ էր համեստ
Այդ գերդաստանը.
Ճանչնային նաեւ հանճարն եւ արուեստ
Հրաշալի տըղուն,

Որն որ շատ անգամ պաղատանօք խեղճ
Գընար տըներում՝
Ծախել նըկարներն, գընիցն առած զեղչ,
Ի՛ սէր իւր անգործ
Ախտացեալ հօրը, յ'օգուտ իւր մօրկան:
Այլ բոլորն ի բաց
Վանէին նորան ժըպտով հեգնական,
Չի գնահատելով
Ոչ նորա տաղանդն, ոչ վարքն աննըման,
Առանց օգնելու
Կամ միջոց տալու նորա զարգացման՝
Գէթ յ'արտասահման:

Է

Ահա տղաքերքի րոպէն էլ հասաւ.
Ու այդ ցաւագար
Մայրը ճըգանց մէջ մահերից պըրծաւ.
Մեծ տառապանքով
Եւ անհուն երկամբ ծնաւ մի արարած...
Սակա՛յն.. ո՛վ սոսկումն..
Եւ ետ գընացին բոլորն սարսափած.
Չի այն նորածին
Ճակն մի ցուցանք, մի հրէշ էր անլուր.
Զորքատանի մարդ,
Ում գլուխը կարծես մազեղէն մի բլուր,
Երկայն եւ սրածայր
Խիստ մազով ծածկուած, որ ամբողջ դէմքին
Մի մասն ըսքօղէր.
Այլ երկայնութիւնն նիհար ձեռքերին
Համնէր ոտքերին:

## Զ

Հօրեղբայրը՝ որ աղքատ հիւանդին
Շատ քիչ այցելէր,
Տեղեակ լինելով հրէշի ծննունդին,
Լեզուն դուրս հնկած՝
Վազեց համոզեց հօրը, իր եղբօր,
Որ իրեն յանձնէ
Հրէշաւոր տղան գէթ մի քանի օր.
Ու բացաւ քաղքում
Մի դատարկ ախոռ մեծ աղմուկ հանեց
Ու յայտարարեց՝
Քսան քաբիկ մուտքով հրէշը ցոյց տուեց
Ողջ քաղաքացւոց:
Ամենայն կարգի մարդկանց մի հոսանք,
Խառն աղքատ՝ ռամիկ
Գային տեսնելու եւ ազնուականք,
Հրէշաւոր ցուցանք:

## Է

Հարուստ տանուտերք, որ այն հրաշալի
Տղուն երեսին
Փակէին իրենց դուռն ի՛ բանալի,
Այժմ հրէշաւոր
Նորա եղբօրը տեսնել փութային
Եւ ըզմայլելու.
Ոմանք զարմացան եւ այլք խնդացին.
Այլ նորա շնորհիւ
Հօրեղբայրը լաւ փող կը հաւաքէր.
Մխիչղեռ հըրէշն իսկ
Այս բիրտ աշխարհից կարծես զըզուած էր.
Ուր որ հրէշաւորն

Նախամեծար է շնորհքից անվրթար:
Մեռաւ ու գընաց
Հեռու մարդերից սին եւ անարդար՝
Իրանից վատթար:

---

## ԱՌ ԱՅՎԱԶՈՎՍՔԻ

Լերանց գօտիներ
Աղջամուղջ գոյնով
Երբոր ծածկըվին,
Լաքի՝ քօպալթի
Երանգ խառնուելով՝
Ամպեր կը ծուլուին.
Մինչ թանձըր փըրփուրք
Կը ծածկեն ըզծով.
Լուռ է դեռ երկին,
Խուլ ըսպառնալից
Սպասէ փոթորկի :
Ցանկարծ շունչ մ'ուժգին
Կը ցընցէ զ'երկիր,
Ալիք ուժգնակի
Բաղխին ժայռերու,
Սըփռեն փըրփուրներ,
Գոլորշիք ոսկի,
Ցայնժամ քեզ յիշեմ,
Ո՛վ Այվազովսքի:
Երբ սեւ՝ կապտերանգ
Այերք խաւարին,
Եւ հորիզոնում
Ճէկ գոլորշեաց մէջ՝
Գըլխակոր լուսին
Փայփլուն երկարէ
Պոչն իւր սիրաշող.
Ի գիրկ ծովակին
Ալիս ի' ցընծում
Խայտան՝ կայծկածին,
Գալուստն հարսնեկին
Երկնից ողջունեն.
Ըստուերաց մէջէն
Կօպալթն ու պիթում,
Արծաթն ու ոսկի
Ու բաց կանանչը՝
Մխիանց հետ մըրցին.
Երբ քեզ կը յիշեմ,
Ո՛վ Այվազովսքի:
Գունտին կենսատու,
Ում գիրկ կարմրախայտ
Վարդգոյն ամպերի
Ըսպասէ լըռիկ,
Որ ի' ճառագայթ՝
Արքայն լոյսերի
Համդարտ յ'իւր մահին
Իջնէ գայթ ի' գայթ,
Ուր գլորի անյայտ:
Երբ ի' մի մակոյկ
Սիրահարք շըւայտ՝
Մաղթեն տան բարի

Միմիանց երեկոյ
Եւ ճամբոյրք ի՛ յայտ։
Զինարբէ քատմիում
Ակնախտիղ ոսկի,
Միլիոն ակն երկրում
Ըմփռեն ծիրանի,

Քեզ միշտ կը յիշեմ,
Ո՜վ Այվազովսքի։
Ինչպէս որ կնոջ գեղանի
Հարկաւոր է մի հայլի,
Ուր իւր ծիրքերն անընման
Մէջը տեսնէ ու զմայլի,

Նոյնպէս բնութիւնն ուզեց գտնել
Իրեն արժան շքեղ հայլի․
Ու քոյ հանճարն գտաւ առաւ,
Քոյ ներկապնակ ճոխ, լեզուանի։
Եթէ ալեացըդ պակսին լոկ մռընչիւն,
Ջերմութիւն արփւոյն, սառնութիւն լուսնի,
Ուր որ քոյ հոգին սլանայ գեղավարժ,
Թէ ընկարներումդ իրք մնան անշարժ,
Թէ անդ չէ լսուում մըրմունջ ծովեզրի,
Այդ պատճառաւ որ վըրձնովդ են դրոշմած
Ու հանճարովըդ կըտաւում զամուած,
Որպէս զի մընան միշտ անմահացած։

---

## ԵՐԶԱՆԿԻՆ ՇԱՊԻԿԸ

### Ա.

Մի խելացի փիլիսոփայ պատմում է այս զողտր առած։
Կար մի արքայ սաստիկ զօրեղ եւ հարուստ.
Իշխէր խաղաղ, ժողովուրդը սիրէր նորան. Թշնամին
Սարսափահար՝ կը դիմէր փոյթ ի՛ փախուստ,
Եթէ միայն լսէր փողերն իւր մարտին։
Ի՞նչ պակսէր իրեն. ուրախ՝ բաղդաւոր,
Որդիքն ու քաջեր շուրջն առած բոլոր,
Կինը գեղանի, քընքոյշ ու տըռփոտ՝

Դըշխոյ էր ու. զարդ շըքեղ գահին մօտ:
Առատ գոյնզգոյն պըտուղք ու գինիք,
Սեղան մեծահաց, որսեր ու խորտիկ:
Ււեյ ինչ է պէտք. նա բաղդաւոր էր.
Բայց այսու հանդերձ միշտ կը զանգատէր
Իւր հեշտ կեանքիցը, յոյժ միօրինակ՝
Անդորր եւ խաղաղ իբրեւ մի լըճակ,
Ընդ կապոյտ երկնից լուռ միագունակ:
Անդ, ուր լըրանան ցանկութիւնք մարդկանց՝
Անդ եւ կը բացուի դուռն թըշուառութեանց:

Բ

Երջանկութիւն նա որոնէր հանապազ.
Այլ աւա՜ղ, զի նուազ առ նըւազ
Ժըպտիտ խընդում անյայտացան,
Ծակատն՝ այտեր կընճռոտեցան,
Անօգուտ տեղ
Փընտռէր մի դեղ:
Այս նորանշան տըխուր ախտին՝ մի ւանուն
Չէին կարող տալ բըժիշկներն միաբան,
Որք ամեն ցաւ վերաբերեն լոկ մարմնուն,
Չի նոցանում շատ քիչերն են հոգեբան:
Ամեն կողմից հրաւիրեցին փիլիսոփայք, կախարդներ,
Որք թափէին ամեն հընարք, ամեն միջոց ու ճիգեր,
Երջանկութիւն տալ արքային խօթացեալ ու կարեվէր.
Թըղթատեցին հին մատեաններ, ու փընտռեցին խընամքով
Թէ ոչ երկար կենաց նեկտար, երջանկութեան զէթ միջոց:
Վերջապէս միոն այդ իմաստնոց
Գիտէցն ուրախ՝ աչքըն ի՛ բոց,

Ասաց. «Ո՛վ արքայ,
«Միակ մի հնարք կայ
«Քոյ բըժըշկութեան
«Բարեկաւութեան.

» Հրամանատուր շուտով՝
» Որ երկիրս հոլով
» Գնան ու որոնեն
» Ծառայք դէս ու դէն .
» Ու թէ երջանիկ
» Գտնեն մի հատ մարդ
» Որ զոհ ու հանդարտ
» Ապրի իւր կեանքում,
» Ու չէ բնաւ տրտում,
» Թող նրա քամակից
» Մարմնոյն կպչ եւ կից
» Իւր շապիկն հանեն,
» Ու փոյթ քեզ բերեն .
» Հագիր այն շապիկ,
» Կլինիս երջանիկ » :

Գ.

Փիլիսոփային համաձայն վճռոյն
Արքայն էլ հրաման արձակեց իսկոյն
Իւր հաւատարմաց՝ գտնել ու բերել
Հրաշալի շապիկն, իրեն հագցնել.
Գնացին սպասաւորք ման եկան յ'աշխարհ,
Երջանկութեան իսկ չի գտան մի նշմար:
Մինը գանգատէր իւր ճակատագրից,
Մի ուրիշն բաղդից,
Մինն էլ իւր կնոջից,
Պատահարներից,
Չար մարդիկներից.
Շատեր ապերախտ՝
Կը հեծէին յ'ախտ,
Ի' սէր հեշտութեանց՝
Կորցնելով զգանն
Ու կենաց վայելք,
Մեռնէին անխելք:

Դ.

Յայնժամ յուսակտուր ծառայք արքային,
Խոնջեալ՝ ապարդիւն, քաղաքաց հեռի
Գնացին քիչ հանգչիլ, շնչել սիւք դաշտին,
Ուր մի գետ խայտար ի' ծոց մարգերի.
Այն տեղ միահամուռ վերջ տալ վճռեցին
Այս խուզարկութեան գրեթէ անտեղի:
Տեսան գետին մօտ նստած մի հովիւ

## ԶԻՆՈՒՈՐՆ ՄԱՀԱՄԵՐՁ

Ճանապարհի ցեխն ու վառօղի փոշին
Սեւազիծ հետքեր թողնին ճակատում,
Ուր արեւակէզ եւ դեղնած կաշին
Մահուան քըրտինքն է արդէն արտադրում:

Վիրաւոր ծընկերն փաթթած ցընցոտիք,
Թեւ թեւ կախուում են զգեստին կըտորտանք.
Չէ կարող կանգնիլ թշուառն ընդ ոտիք,
Տըկար է, գունատ՝ զինչ մահու պատանք:

Ճըրթներն կիսաբաց, չէ կարող ասել
Թէ ո՛ւր ըզգայ ցաւ. խոնաւ մի պատի
Քամակը տըւած, կը սկըսի հեծել
Աղիողորմ զոհն անողոք բաղդի:

Երբոր նա խոյս տար թըշնամահալած,
Կորցրուց ընկերներն ու ծին ցիր ու ցան.
Օրեր, գիշերներ թափառեց անհաց,
Երկինք ու մարդիկ նրա չ'ողորմեցան.

Այն մարդիկ, որ զոհ կապրէին ուրախ,
Երբ նա զոռ դաշտում մահուամբ մաքառէր.
Թողած ընտանիքն՝ ու կեանքը խաղաղ,
Մեզ ուղղուած հարուածն կըրծքին ընդունէր:

Եւ ի՛նչ էր յոյսը. մի շըքանըշան՝
Թէ քաջ մարտընչի. կամ այնտեղ անտէր
Մեռնիլ անթաղ մնալ, մոռցուած աննըշան.
Դիակն էլ սընունդ թըռչնոց գիշակեր:

Ցայնժամ իւր որդւոց որբ եւ չըքաւոր
Արդեօք ո՞վ կը տայ սընունդ եւ խընամք,

Անկար եւ հիւծեալ մօր, հօրն ալեւոր,
Երբ նորա մարմին ծածկեն մարտին խրամք:

Այլ թէ յաղթական դառնայ կենդանի,
Մի վարձք չըստանար. հազիւ թէ մի կտոր
Հաց ունի ցամքած՝ որով սընանի.
Ծարաւն մեղմելու քիչ էլ ջուր պըղտոր.

Եւ մի բնակարան, ուր իւր ընտաններ
Նըմջեն խառն ի՛ խուռն օդն ապականած.
Մինչ շիք, փափկասուն շատ մեծատուններ
Զըզուանօք նային դիւցազն թըշուառաց:

Քաղքում նոցանից երբ դարձնեն երես,
Նոքա մեր պատիւն ու գոյք պահպանեն.
Այլ ի՛ պատերազմ թըշնամւոյն ի՛ տես՝
Մեզ համար կեանք՝ յոյս՝ ապագայ զոհեն:

Նայեցէ՛ք մէկ հեղ զինուորին թըշուառ
Հիւանդոտ, դալուկ, ընկած անկիւնում.
Աչքերով խընդրէր մեզնից մի պատառ
Գոնէ սեւ հացիկ լիրեւ հատուցում....

Բայց տեսէ՛ք մարդկանց հետաքըրքրութիւն.
Իւր չորս դին խըռնուած, հասկանալ անգամ
Չեն կարող նրա վիշտ, որ թափեց արիւն՝
Փըրկելու համար եղբայրցն անըզգամ:

Պայուսակն շալկին՝ հագած մի խեղճ քուրծ,
Մեզ համար դէմ գնաց մահու վըտանգի.
Եւ հազիւ դաշտից փախաւ մազապուրծ,
Մեր քաղքում, մեզ մօտ քաղցից կը մեռնի:

Հրացանին սուինով, որ մեզ պաշտպանէր․
Իւր ժանգոտ սըրով հողը փորեցին.
Փոքրիկ խաչարծաթ, որ կըրծքում կըրէր
Իւր միակ գոյք պարծանք, հետը թաղեցին։

---

## ԽԵՂՃ ՏԷՐՏԷՐՆ

### Ա.

Ժամագիրքը բըռնած ձեռքին,
Պատառատուն կապան ուսին.
Հընութիւնից ըսպիտակած
Մի հողաթափ ունի հագած,
Ցըրտից, տաքից, ճամբու ցեխէն
Հազիւ նիհար ոտքերն պահեն։
Մըրմընջում է «տէր ողորմեան»,
Աղօթելով վասն մարդկութեան․
Կորաքամակ գնայ ի՛ տաճար՝
Առաւօտեան ժամն ասելու,
Հային ցաւոց գըտնել մի ճար։
Եւ աքաղաղն երբ աւետէ
Առաւօտեան լուսոյ ծագում,
Տէրտէրն երես խաչակընքէ
Եւ ըսկըսի «տէր զի բազում»։
Եւ զանգակներն հընչատատան
Հաւատացեալքն հըրաւիրեն՝
Տօնել զատիկն յ՚Աստուծոյ տան։
Երեք վարձկան տիրացուներ
Շարականները լըփըռտեն․
Եւ հագնելով սուրբ շապիկներ,
Խորհուրդ խորինն ի՛ մեղեդի
Կիսաբոլոր դասում երգեն,
Պատրաստութիւն սուրբ պատարագի։

Բ

Աղքատիկ տէրտէրն ցընցոտի կապան
Կը հանէ վրայից.
Ու եմփորոն, ոսկեհուռ շուրջառ,
Թաւշեայ սաղաւարտ
Կը հագնի գըլխին՝ լուռ աղօթելով:
Բայց այդ պաշտամանց
Փայփլուն ըզգեստներ չեն բնաւ ներդաշնակ
Իրենց ցուլմամբը
Ու վառ գոյներով, նիհար ու դեղնած
Այտերին վերայ
Ոսկորտիքը ցից՝ խեղճի դէմքին հետ,
Ուր ժուժկալ կենաց
Եւ անբաւ զըրկմանց հետքերն են դըրոշմած:
Քառասուն տարի
Էր՝ որ ծառայէր հաւատացելոց,
Առաւօտեան ժամ
Պատրագ ասելով, սերթ աւետելով
Ծընունդ Քրիստոսի,
Մահ ու չարչարանք եւ սուրբ յարութիւն.
Այլ բազմաչարչար
Իւր թըշուառ կեանքին չիք փոփոխութիւն:
Նաեւ այն առտուն
Զատկի տօներին՝ իրրեւ ժամաւաց
Ծարաւ էր ու ծոմ,
Որպէս զի դատարկ մաքուր ստամոքսով
Ճաշակէ զ'մարմին
Տեառըն եւ զ'արիւն, եւ յ'երկնից բարձանց
Հայցէ գըթութիւն:
Երբ նախաճաշիկ արած շատերը,
Այնտեղ հաւաքուին՝

Հանգիստ մարսելու, խըղճերում բեւր
Թեթեւցընելու,
Մինչ բազկատարած տէրտէրն անօթի՝
Երկնից հայցէ շնորհք,
Մեղաց քաւութիւն:

Գ

Ժողովըրդեան մեծ ամբոխը, դըրանն առջեւ կազմէ պոչ,
Եկեղեցի մըտնել ուզեն ամենքը.
Զատիկ է այս… հազիւ զըսպէ խուժանն ուժեղ մի ժամկոչ
Գաւազանաւ իւր սեւանձրկ ու փայլուն:
Ահա թափօրն էլ ըսկըսի դանդաղաքայլ գալ առաջ,
Մոլեռանդներ գետնին վըրայ ծընրադրեն.
Ու տէրտէրը ձեռքում բըռնած մի թանկագին ոսկի խաչ,
Օդում սարսամ տարուբերէ, եւ կարծես՝
Կը որոնէ բազմութեան մէջ իւր օրհնութեան արժանին:
Իսկ այն աղքատիկ
Խեղճուկ տէր հայրը, որ դուրս տաճարից
Տեսնելով իրան ճարպոտ ըզգեստներ մուրացկի նըման,
Փութով ամենքը փախչին իրանից,
Այժըմ բոլորին դարձել է մի իր հետաքըրքըրական՝
Իւր ճոխ՝ ոսկեխայտ՝ փայլուն շորերով,
Ոսկեծոյլ ցուպով, որ իրանը չեն՝ այլ ժողովըրդին,
Որն որ աւելի խընամքով պահէ
Քան իւր քահանան՝ անխընամ կարօտ կենաց պէտքերին:
Եւ երբ այն շորերն հագած զ'այն տեսնէ,
Պատկառի՝ վախնայ, ինչպէս ճընճղուկներն մի խըրտուիլակից:

Դ

Մեծ մասը հարուստ հագուճ. են ըզգեստք,
Եւ նոցա մարմին
Զունի մի կարօտ եւ չըզգար մի պէտք:
Տէրտէրն աղքատիկ

Երբոր քարոզէ հոգւոյ փրկութիւն,
Տան յիսուն քարիկ․
Մինչ դեռ րուբլիներ հազարներ կը տան
Ի յ'ունայնութիւն:
Մեծ սխալմունք է սաստիկ անպիտան,
Եթէ չըմտածենք՝
Որ մի տան վարձքի պէտք են հարիւրներ,
Ու միշտ ենթադրել՝
Որ մեզ կարող են մըտոփկ քարիկներ
Գրնել երկընքում
Պատրաստի մի տեղ, ինչ յիմարութիւն.
Եւ այդ բանն էլ ում,
Ո՞ւմ ձեռօք վարձենք․ աղքտիկ մի յ'անկիւն
Մոռցուած տէրտէրին,
Որոյ շընորհուած մի քանի քարիկ
Արդեօք տեղի՞ գին՝
Թէ նորա վարձքն է իբրեւ մունետիկ:…
Մինչ մենք բազմահաց
Կը վայլենք սեղան ու կապրինք շըւայտ,
Ուռած, յըղփացած.
Ամենն իր տեղին. զատկին կարմրախայտ
Հաւկիթն, երիշկիկ,
Ծնընդեան քաղցրեղէնք, ընծայք զանազան,
Հայպա տէրտէրը՝
Որ եկեղեցւոյ ի' վերջ աւարտման
Մըտնէ իւր խուցը,
Ուր ունի չոր հաց՝ իւր միակ բաղարջ,
Եւ պըղտոր ջըրի
Մի կողմից ճայթած հողեղէն մի փարջ,
Կըտոր մ'ոսկորի:
Եթէ մի ճաշի կոչեն դիպուածով,
Շահի համար է՝
Որ նա երկընքից իւր ջերմ աղօթքով

Ըզբաղիս խնդրէ․
Որ տընանկ ծառան աղքատ ցխոտին
Արծաթ ոսկի դրամ
Խընդրէ Աստուծուց յ՚օգուտ հարուստին՝
Շատ հեղ անըզգամ:
Բայց այդ օրերում ուրիշ պէտք չ՚ունին
Իւր մի՜ջնորդութեան․
Ինչո՞վ նա այրի, արդեօք կը խորհին․
Անշուշտ մի ծնընդեան
Անհամբեր սպասէ, կամ մէկի մահին,
Որ ծակ ճեպին մէջ
Խուղոտած կարկտած, անէ բուքլին
Հանդիսաւոր էջ:
Այսպէս՝ երբեմըն մեզ ջուր խոթելով,
Երբեմն էլ հողը վրանիս ծածկելով,
Կամ կը մըկըրտէ յանուն Քրիստոսի,
Շատ հեղ էլ ուղիղ խորն տարտարոսի
Ուղիղ կը ճամբէ ի՚ գլուխ սատանին․
Այսպէսով այրին,
Որոյ տոմսակն է շատ աժանագին:

Ե

Մեր խեղճուկը դարձաւ ի՚ տուն․
Ոչ ոք չըկայ, ոչ ձայն ու ծուն․
Կեղտոտ մի ֆէս հազաւ գըլխուն՝
Անցեալ զատկից մնացած՝ շատ հին․
Երէցկին էլ չունի, մեռաւ
Ցետ ծընընդեան երեխային․
Տղէն էլ շուտով հետեւեցաւ
Իւր մօրն ի՚ ստուեր գերեզմանին:
Հաւատարիմ տանը կատուն
Սեղանին մօտ քերէր ու մռլան

Որ կըտորներն ոսկորներուն,
Ճենճոտ պընակն իրա թոյլ տան,
Որ լիզելով սըրբէ մաքրէ,
Ըսպասուհու պաշտօն վարէ:
Հին վերարկուն պատից կախեց,
Որի թեւերն՝ օծիք ճարպից
Կը փայլէին, փէշն ուտէր ցեց.
Գործածութիւնք նրան անճանանչ
Արել էին, ու նիւն գաշմիր.
Ունէր արդէն մի գոյն կսնանչ:
Ո՛վ ընթերցող, մի լա՛ւ հաշուիր՝
Թէ ի՞նչ է իւր չընչին վաստակ.
Հազիւ նա չէ մեռնում՝ քաղցած.
Ունի միայն ըզգեստ, մի գտակ.
Եթէ նրանց էլ մի օր ստիպուած
Ծախել ուզէ, առնող չի կայ.
Եթէ մեռնի, շուտ մոռանան.
Ի՞նչ... պահպանիչ ասող քի՞չ կայ,
Շա՛տ քաղցածներ նորա նըման:

## Զ

Անզարդ է իւր խըցիկն համեստ.
Խարխուլ սեղան, մի անկողին՝
Որի տակը մնայ ի՛ պահեստ
Փոքր ու փայտեայ աղքատ արկղիկ,
Ուր մի քանի ցընցոտիք կան
Եւ երկու հատ մաշուած շալիկ:
Անկողնին վրայ կայ մի վերմակ՝
Բրդերն միջից դուրս կախ թափած.
Պատից կախուի մի շըրջանակ՝
Ժամանակով ոսկեզօծած.
Պարունակէ մի հին պատկեր՝

Ուր կէսը դեղներ՝ սեւցեր,
Կէսն էլ ծածկեն ճաննի կեղտեր,
Այլ դէմքն ամբողջ աննետացեր։
Միայն ձեռքը մնայ անարատ՝
Որ կը բռնէ մի մեծ աղեղ․
Ոչ Արշակն է եւ ոչ Տրդատ,
Ոչ Շնորհալին եւ ոչ Կիւրեղ,
Տէրտէրն կարծէ պատկեր Հայկայ,
Բայց ապացոյց ու փաստ չի կայ։
Այլ պատկերին մօտ մի շալվար
Նոյնպէս կախուած է պատն ի՛ վար,
Որն որ կապովն ամեն տարի
Տայ նորոգման կարկըտանի։
Սեղանին վրայ մի հին մաշտոց՝
Թերթերն դեղնած, ծայրերն ոլրած,
Եւ մի հատոր էլ վարք սըրբոց
Եւ Քրիստոսի չարչարանաց
Հայ երգերու մի փոքր հատոր,
Ու Եզովբոսի առակախօս,
Պատմութիւնն հայ քաջաց բոլոր։
Իրենն իբրեւ խեղճ մարտիրոս՝
Գուցէ այնտեղ մի օր գըրուի,
Ապագայում եթէ ճանչցուի։

Է

Ձեռն ի՛ ճակատին՝
Նըստած կը խորհի
Մօտը սեղանին,
Թ՛ինչ՞վ արժանի
Է այն վիճակին։
Իրա պէս շատեր
Վայլեն հանգիստ կեանք,
Քահանայ, տէրտէր
Չեն տեսել զըրկանք։
Բայց ի՞նչ անէ՝ որ
Ինքը չունի նենգ,
Խօսքեր կեղծաւոր,
Շատին ձեռքում զէնք
Բարձր աստիճանի.

Թէ փող շահելու
Ջունի ճարտասան՝
Ոչ գողտրիկ լեզու,

Ձէ վաճառական
Օրհնէնք ծախելու:

Թէպէտ տըգէտ է մեր խեղճ տէր պապան,
Սակայն յանցանքը իրանը չէ բնաւ [1]...

---

## ԾԱՌ

Երբոր մանուկն հիւանդանայ,
Շուտով մի բժիշկ կը հրաւիրեն.
Տան մէջ ծնողաց դէմքի վերայ
Հոգ՝ տըխրութիւն՝ կասկած տիրեն:

Բըժիշկը գայ՝ տայ դեղ մ'ազդու,
Ասէ, ցըրտից ըզգոյշ լինի.
Դառն է դեղը. սակայն աղու՝
Ի՞նչպէս խըմցնեն այդ՝ փոքրիկին:

Բայց նախազգոյշ մայրիկն յայնժամ
Մեղրով պատէ բաժկին եզերք,
Մի կտոր շաքար էլ քաղցրահամ,
Որով խաբուին շատ հեղ տըղերք:

Մեղրին համը մանուկն առնէ.
Ու դեռ ցնորքը չըփարատած՝
Մայրիկն խսկոյն կը խըմացնէ
Դառն ու լեղի ճարն մեղրամած:

Ու մանուկն երբ ըզգայ լեղին,
Թէպէտ շաքարն տան՝ որ ծըծէ,

1. Անցորդին՝ մի թուղթ՝ ընկած էր:

*Բայց չի կայ վերջ լացին կոծին,*
*Փոքրիկը շատ զայրացած է։*

*Մենք տըկարներս էլ երբ հիւանդանանք*
*Սիրով սըրտի խոր,*
*Կինն է մեր ճարը. որոյ բիւր գըգուանք,*
*Հրապոյրը բոլոր,*
*Դէմքը վարդ՝ գրաւիչ, շուրթք մեղրածորան՝*
*Ուր մարգարտաշար*
*Պահին ատամունք, մի սիրաբարբառ*
*Լեզու՝ սակայն չար.*
*Բոլորն այս ծածկեն այն թոյն մեղրատարը՝*
*Որ կինը պահէ*
*Իւր համբուրաթաց մըստ մարմնոյն տակ։*
*Իսկ երբ մարդ քաղէ*
*Մեղրըն իւր շըրթանց, այն տեղ պարունակ*
*Առնէ համ թոյնին,*
*Բայց աւաղ շատ ուշ. կ'արտասուէ, կատղի,*
*Անէծք տայ բաղդին,*
*Հոգում տարածուի դառն ու թոյն աղի։*
*Մահ կը խընդրէ նա՝ կեանքից յուսահատ*
*Խեղճ ու ցաւագար.*
*Չեն օգներ նորան՝ ոչ խօսք, ոչ էլ խրատ,*
*Ոչ կըտոր շաքար։*

---

## 1884ին ԿԱՆԱՆՑ ԹԻԻՌՆԻԻՐՆԵՐԸ

*Առաքինազգոյն էին երբ մարդիկ,*
*Երբ կինըն մեր մէջ միայն ընկատուէր*
*Գաղափար սիրոյ, տաճար անառիկ*
*Մայրական զգացմանց սուրբ եւ երկնանուէր,*

Երբ կանայք իւրեանց մարմինը քընքոյշ
Ձէին կաշկանդեր յիմար շորերում,
Որով դառնում են հիւանդոտ վատոյժ,
Ցայնժամ կեանք՝ կորով դեռ կար աշխարհում:

. . . . . . . . . .
. . . . . . . . . .
. . . . . . . . . .
. . . . . . . . . .

Այժմ որ դարձել ենք նուրբ, civilisé,
Ապականեցաւ բարոյականնիս.
Մարդն այլանդակած՝ ի՛ կորուստ վազէ,
Ըշտապ վայլելով հաճոյքն աշխարհիս:

Շորերն ու բնութիւնք փոփոխուեցան ողջ·
Անճոռնին յաղթեց գեղեցիկն՝ բարին.
Շատ քիչ կին գըտնեմ ի՛ կեանս դեռ բողբոջ՝
Որ արդէն չի դնէ Ն——Ն—ւ մ'ետեւին:

Չի մարդկութեան կեղտն այնքան բազմացաւ,
Որ շատ սիրողաց Եւրոպիոյ մօտան՝
Կանանց ետեւը գընաց յըղացաւ,
Քաղքականութեան իբրեւ կեղտ աման:

Ոմանք էլ կարծեն՝ որ մի կապոց է,
Որ կինըն իբրեւ սատանայ գողտրիկ՝
Նորա մէջ պլորած՝ խընամքով գոցէ
Իւր օձագալար սատանի պոչիկ:

## ՅԻՇՈ՞ՒՄ ԵՍ

Յիշո՞ւմես երբ առաւօտուն
  Արծաթ ամպեր
Հորիզոնում կը փայլէին,
  Դաշտաց ծաղկներ
Ցօղի մարգրիտ քըրտընելով՝
  Կը բուրէին:

Գետեզերքում կիտուածանկար
  Սըրտաբաբախ
Քեզ խընդրելով՝ թափառէի,
  Երբ սիրոյ տաղ
Թըռչնիկն երգէր տերեւասքօղ,
  Ձայն տար քեզի:

Թէպէտ արեւն արդէն ցոյց տար
  Վառ բոլորակ
Ու մայր բնութիւնն յուսապայծառ,
  Ես դեռ մինակ
Քեզնից հեռի՝ լուսանալուն
  Չ'էի հաւտար:

Քանիցըս ո՞հ քեզ ասած եմ,
  Դու ես իմ լոյս,
Երջանկութիւն իմ հրաշալի,
  Պատրանք հոգւոյս.
Մի վէրք՝ որ միշտ ցանկանայի
  Անբուժելի:

Ու վերջապէս երբ գըտնէի
  Գետին մօտիկ
Քեզ՝ նորանշան աղաւնեկիս՝

Ոտքերդ բոպիկ
Եւ ջրաթաթախ, տայի համբոյր
Խելակորոյս:
Ցայնժամ ինձ թուէր որ ընութեան մէջ
Բարեբաստիկ
Ես կայի լոկ, եւ գիրկ գըրկի
Ի՛ համբուրիկ՝
Գլորուէինք, զինչ զոյգ տատրակ
Ի՛ ծոց մարգի:
Եւ յիշո՞ւմես՝ որ չիկնէիր
Սիրաբորբոք,
Հառաչանքն այն սիրաժըպիտ,
Երբ անողոք
Եւ ընչասպառ կը ծըծէի
Յօղն այտերիդ:
Ցիշե՞ս նաեւ, այն րոպէին
Ինձ երդուեցար՝
Թէ սէրն չունի տապաստ ու փուշ.
Ու ժըպտեցար՝
Երբ սածիդ հաւատացի
Իբրեւ ապուշ:

---

## ԱՌ ԳԱՆԿՆ

Ժամանակով ո՞ւմն էիր դու,
Աղքատի՞նը թէ հարուստին.
Ի՞նչ խորհուրդներ ծընան քոյ մէջ՝
Որ բնակարան էր ուղեղին:

Այն ոսերը՝ որոց վերայ
Տարիներով տատանեցար,
Արդեօք որի՞ պատկանեցան.
Խելօ՞ք մարդու՝ թէ ոչ ցանցառ:

Եւ այն ճակատ քօսոտ ու փոս.
Դափնի՛ կրեց՝ թէ թագ արքունի,
Ում վրայ այժըմ գոհարի տեղ
Փայլի կըպչուն հիւթ սողունի:

Կամ իմաստնոյն, բըռնաւորին,
Մի ագահի՝ որ կենդանւոյն
Ձէր տարբերէր հիմակուանից,
Հիւծեալ դեղնած այտեր տըժգոյն:

Գուցէ ոսկերքն այն այտերին
Խոնաւ հողից ծակծակոտած,
Գողտըր մի կնոջ պատկանէին՝
Ուր մի ատեն վարդ էր բացուած:

Այդ գանկի վրայ կային սիրուն
Մի զոյգ շըրթանց բոսոր թերթեր,
Որք զանազան ըզգացմունքներ
Բացատրէին, սըտութիւններ:

Հիմայ միայն ծաղրն ու ծիծաղ
Մընացել են. շարք մ'աւերակ
Ակռաների՝ զերթ տաճարին
Սիւներն ու զարդ հիմնայատակ.

Կամ տունի նման մի յարկանի՝
Աչաց փոսերն զերթ պատուհան,
Բերանն մի դուռ, ու զեռուններ՝
Սողունք բնակին՝ մըտնեն ելան:

Եւ այդ ոսկրի մակերեւոյթ,
Որոյ վերայ փափուկ կաշին
Քանի՛ցս կըրքեր պըղտոտած են քունն
Ինչպէս հողմերն ծովուց ալին:

Դեղնայատակ ճակատումը
Այժմ այդ ամեն մըտքերն ու կիրք՝
Գեղտոտ, հողոտ հետք են թողած,
Ուր ձեռք մահուն գրել է. «պատիրք»:

Գուցէ զանկին տէրն այն թըշուառ
Շատ էր տանջուած այս աշխարհում,
Փըտտում մարմինն թողլով ի՛ հող՝
Հիմիկ մեր վրայ է ծիծաղում:

Որովհետեւ ինչպէս մեկնել
Այն դիւական լայն ծիծաղը.
Ուրախութիւնն է դրա պատճառ՝
Գեանքից փըրկուած, թէ ոչ ծաղրը:

Աամ գուցէ այդպէս կու լան
Մեռեալք, շիրմից թէ գնան անդին,
Կամ կենդանեաց ցաւն ու վըշտեր
Ծաղր ու ծիծաղ տան մեռեալին:

Ինչ էլ լինի, երբ մըտածեմ
Որ օր մ'էլ ես գուցէ այդպէս
Տի ծիծաղիմ, սիրտըս ի՛ դող՝
Գըրիչն խսկոյն ինկնի ձեռքէս։

---

## ԿԻԿՕ

Քաղաքում տարի զուլթանն առած՝ աշխատում է անընդհատ.
Նիհար, սեւցած արեգակից, ծեր արդէն.
Այսու հանդերձ թէպէտ հիւծեալ, շարունակէ տակաւին
Խընդրել իւր հաց երկրիս ըերրի արգանդէն,
Որն որ պատռէ՝ իւր զուլթանին լըծելով ձի, երբեմն եզ,
Ակօս ակօս քեղմնաւորէ՝ սերմանէ:
Երեկոյին խըրճիթ դառնայ, աչքերն յ'երկինս յուսալիր՝
Որ մի անձրեւ տէրն իւր քըրտանց հետ խառնէ:

Անձրեւն էլ գայ, արեւն էլ տայ իւր կենսալոյս ջերմութիւն,
Ու հիկոյի ճակատին վըրայ միշտ խռնաւ՝
Քըրտինքի մէջ, դընէ մի փայլ՝ երբ նա ժըպտի սիրտը գոհ:
Գան շինականք՝ ձեռքերն զինեալ մանգաղաւ՝
Ցորենն հընձել, որ դարձեր է մի ահագին ոսկէ ծով՝
Ուր ծածանէ քամին փայլուն ալիքներ:
Լայնատարած դաշտում ահա լըսուի մի մեղմ շըշընչիւն,
Խորհըրդաւոր իբրեւ կենաց մի հրաւէր:

Հընձէ՛ հընձէ շընչակըտուր, ո՛վ բարեմիտ խեղճ հիկօ.
Բե՛ր աղջըկերքդ ու լանդ ի՛ դաշտ՝
Ծեծել ցորեան, պարապտ որպք ու խուրձ կապել ոսկեղնիկ:
Այն հացն առատ, որ իրաւունքդ է, միակ ճաշդ,
Գուցէ խըլեն քոյ ձեռքիցը, կամ գնեն չընչին մի գընով,
Իբրեւ մըրջիւն լեցնես ամբարքն օտարին.
Քոյ արդիւնքից քեզի ոչինչ չեն տալ մարդիկ. եւ թերեւս
Սերմն էլ չիտան յաջորդ տարւայ ցորենին:

Իբրեւ թէ այդ զըրկանքն անգութ չ՚է բաւական, ցըրտագին
Ձմեռն էլ շուտով վըրայ հասաւ՝ ու պատանք
Հազցրուց երկրին. դաշտն ըսպիտակ՝ գերեզմանի մըման մերկ
Իւր սառ ծոցից վիժեց յանկարծ մի ցուցանք,
Աղէգալար ճիրաններով, ոսկորալէզ, մարդակեր.
Ճիւաղ սովին Հայաստանեայց ու Վանի.
Դաշտըն ու ձոր իւր դիակօք քաղցաճըմլիկ կմախքներով
Կամշոտ մահուն դարձան կըրկէս քըստմնելի:

Խամրեց սովը ու չորացրեց հիկոյին էլ գերդաստան.
Ինքըն թերեւս կուլ տալով իւր արտասուք՝
Դըժբաղդաբար մնաց կենդանի, ու մի քանի ընկերով
Եկան մեզ մօտ եկան խեղճ ու սովըլլուկ.
Մի փայտ ձեռքում՝ որ երբեմըն կրէր գերանդին հասկաքաղ:
Եւ շընչասպառ կուրծքից նիհար ու տըկար՝
Հազիւ լըսուէր մի ձայն տըկար, որ մըրմընջէր՝ մամլաքեան.
Գութս ձեռքով, կը՛ մուրար մի հացի կտոր:

Պատսպարուելու տըւին նոցա մի հինաւուրց ամբնակ տուն.
Ըզգաց Նիկօն՝ որ ոյժը քիչ նորոգի,
Որ օրից օր կազդուրւումէ, թէպէտ սիրտը միշտ յարտօսր․
Գնաց ծառայել նոր հիմնարկած մի շէնքի,
Երեկոյին վերադառնար ընկերաց հետ տուն տըխուր.
Երգեն տաղեր եւ ցաւալի յիշատակք:…
Մի գիշեր էլ տունը յանկարծ կործանեցաւ, եւ Նիկօն
Ընկերացն հետ ծածկեցին դէզք ու փլատակք:

---

## ՄԻ ԴԱՍ

### Ա

Երեկոյեան պահուն արդէն փառուեցան
Ճըրագները մի մեծատուն հայի մօտ,
Ուր ամէն ինչ շըքեղ էին, ոսկեզօծ․
Դաշնակին վրայ չինական մի զոյգ անօթ,
Թաւիշ՝ մետաքս որմանց վերայ նըկարներ
Այվազովսկու եւ այլ օտար վարպետաց.
Գետինըն ծածկած թանկագին զորգ ու կապերտ,
Հիւսք ձեռագործ երբեմն դըրացի մեր պարսկաց:
Մի կլոր սեղան սրահին մէջ տեղ՝ պատուանդան
Էր շքեղակազմ մատեանների, լուսանկարց.
Այդ նոխ, փայլուն իրերի վրայ մի կանթեղ
Ճարտարածոյլ սըփռէր իւր լոյսն ամրդաղարծ.
Այն սրահին կից մի սենեակ կար կամ գրատուն,
Ուր տեղ մի մեծ սեղանի շուրջ բազմէին
Հինգ հատ առոյգ պատանիներ. անդրանիկն
Քսան գարունքը չէր լըրացրած տակաւին.
Այլ ամենից փոքրը լինէր ութ տարեան:
Հինգն էլ սիրուն, քիչ թըխամորթ եւ կայտառ.
Դէմքերնուն վրայ բնիկ գըծերով հայադրոշմ,
Ու սեւ մազեր ճակատնուն վրայ միշտ գալար.

Ի՛ հսկողութիւն մի լուրջ եւ հմուտ դաստատուի
　Ակնարկ տալին յաջորդ օրուան դասերուն.
Փոքրիկն միայն անուշադիր՝ նման կատուի
　Խաղար կըրծէր անկիւնները գըրքերուն.
Այլ անդրանիկն ձեռքին մի գրիչ եւ թըղթեր,
　 Եղբայրց միոյն ոտի կանգնած պատին մօտ,
Աշխարհացոյց տախտակները բացատրէր:

## Բ

Ցայնժամ յանկարծ բացուեց դուռը սենեկին.
　Նոցա մայրը մի անձի հետ, ում ի՛ թեւ
Թեք էր ընկած, մըտան սենեակ, եւ քաղցրիկ
　Ժըպտով նայեց նախ որդւոցը. իւր ետեւ
Կանգնող օտար այն անձին մեղմ ասաց.
　« Դուք ասացիք՝ որ հաճելի է ձեզի
　Մըտնել այստեղ. բայց ոչ այնքան՝ ինչպէս ինձ.
　» Այստեղ ուսմամբ լոկ պարապին, այսպիսի
» Տեղն յարմար չէ նոցա՝ որք միշտ սիրել են
　» Ընկերութիւն, նուագարան, պար, թըղթախաղ.
　Բայց ինձ համար լոկ աշխարհումս թանկագին
　» Այս խըցիկն է, ուր զաւակունք իմ խաղաղ
» Պատրաստումեն իրենց համար ապագայ.
　» Այստեղ միայն փութամ հանգչել, երբ եթէ
» Իբր տանտիկին՝ դադրիմ աղմուկ գործերից
　» Կամ աստղերին խընամքից եւ հոգսերէ,
» Այստեղ է որ միայն ազատ գամ շընչել.
　» Գըրկեմ որդիքս եւ ամեն ինչ մոռանամ »:

## Գ

Հիւր պարոնը չ՚ընդմիջելով ողջ լըսեց
　Իւր հիւրընկալ տիկնոջ խօսքեր, ու տարտամ
Նայեց փոքրիկ խըմբեակին որ միշտ լըռիկ
　Կը պարապէր. դըրաւ մի ձեռքն ի՛ զըրպան,

Միւսով բըռնած բէՆոՆէՆ որով կը խաղար,
Եւ ծըռելով՝ գըլուխ տըւաւ ի Ներշան
Հաւանութեանը լիովին: Բայց ով որ
Դիտող աչքով զըննէր պարոնՆ այս շըքեղ,
Ժերմակախառն մօրուքն ու մազ, կընճռայօն
Գոլսսա պյտեր, բերանն անշուրթ, որ տըգեղ
Ամբողջութիւն էին կազմում, աւելցրէք
Սոցա վերայ նիհար մարմին ու ծեռքեր,
Աչացն հայեացք չարագուշակ եւ պօղեալ,
Գըլխուն ամիտ իբրեւ լեզուին փականքներ,
Ձայնը բարակ՝ նըման սուլիչն օծերի.
Նաեւ շատ նուրբ եւ մըշտական մի ժըպիտ
Ձերթ շամանդաղ չէր մեղմացնէր դէմքն այն խիստ:
Հազաց մէկ հեղ՝ ակնարկելով չարամիտ,
Դարձաւ տիկնոջ, պատասխանեց. « Ձեր զգացմունք
» Գովելի է եւ շատ բնական մօր կողմից:
» Ես եւս հայր եմ. եւ երբ որդիքս պարապին,
» Կ'ուրախանամ՝ երբ քաջ դուրս գան դասերից.
» Եւ լաւ յիշեմ, երբ ինքս էի դեռ մանուկ,
» Շատ քաջ էի յ'աշխարհացոյց ի' տախտակ.
» Տաս քայլ հեռուից ցոյց կը տայի մատնանիշ՝
» Ո՛ւր տեղն որ ինծ հարցընէին, գիւղ, քաղաք,
» Գաւառք, աւանք, լեռներ ու ծովք եւ գետեր »:

Դ.

Ձայս ասաց. ու կոտըրտուելով՝ ծանրաքայլ
Դիմեց դէպ ի' անդրանիկն, որ տակաւին
Եղբօրը մօտ՝ ի' լոյս ճրագին մեղմափայլ՝
Ըզբաղուած էր: Նոյն միջոցին ի' հեռուստ՝
Լայն կիսաբաց խըցի դըռնից, որ ի' ծալս
Ծածկէր թաւշեայ մի վարագոյր ոսկեծոպ,
Ըստւեց դաշնակն, ուր ածէին մի նոր վալս
Սիրասլացիկ եւ էլ սաստիկ հրապուրիչ.

Ժամն էլ եօթն էր երեկոյեան. ժամանակ
Մօտենումէր հրաւիրելոց գալըստեան.
Սակայն պարոնն օտարազգի, որ ի՛ ֆրաք
Ամենից վաղ գըտնուէր այնտեղ, նըստեցաւ
Մտերիմ կերպով, սաստիկ՝ անփոյթ, ինքնահաճ:
Ունէր թէպէտ մի մեծ անուն քաղքին մէջ,
Բարձր էլ պաշտօն. կը բարեւէր ձախ եւ յաջ.
Նորան պատիւ տալիս էին, մինչ միայն
Վեց տարի կար լոկ՝ որ բնակէր այդ քաղքում:
Ի՞նչ էր առաջ, ո՞ւր տեղից գար, յայտնի չէ՛.
Գուցէ մի գող փախստական է ներկայում:
Բայց նորա պէս քի՞չ կան միթէ օտարներ,
Արջք բաղդալէզք, մեր այս դարուս մանաւանդ,
civilisé, յառաջադէմ. բաւ է՝ որ .
Միննն ունենայ ֆրաք մատանի ադամանդ,
Եւ բարձրադէտ նայուածք ու կերպ, ու հազնի
Միշտ ձեռնոցներ, եւ ունենայ բարձր անուն,
Ծըռինք ամենքս նորա առաջ, մեզ պատիւ
Կը համարինք՝ ընդունել նրան ի՛ մեր տուն:
Այս է դարուս քաղաքական սովորոյթ,
Յառաջադէմ աշխարհն այսպէս կը դատէ.
Մինչև անգամ խընամութիւն հաստատենք
Այնպիսուոյն հետ, չի գիտնալով թէ ո՞վ է,
Ի՛ սէր փողին. եւ մեր աղջկերց գլրկընդխառն
Թոյլ տանք անփոյթ՝ որ նոցա հետ պար դառնան...
Դարուս լոյսը պէտքից աւել է փայլում.
Աստուած տայ որ մարդիկ ի՛ սպառ չի կուրնան:

Ե

Հիւր պարոնը շըփէր այսերն քըմծիծաղ. —
Այդ տան մէջ էլ պատուէին նրան մեծապէս՝
Հետեւելով ընկերութեան պահանջմանց,
Ուր վարուելու հնար էլ չի կայ այլապէս՝

Երբ մըտերիմք ծանօթացնեն մեզ նորան... —
   Նա անդրանկին հարցուց, ինքն էլ կարո՞ղ է
Հեռուից ցոյց տալ, ասել զ'անուն քաղաքաց.
   Զոր օրինակ, Փորթուգալիան ո՞ւր տեղ է,
Ո՞րն է նորա մայրաքաղաքն. ո՞ւր Նօրվէկ,
   Ո՞ւր է Շըվէտ, ո՞ւր Գերմանիան, ո՞ւր Զուիցեր.
Ասաց՝ « ցոյց տուէք գետերն ու ծովք եւ գաւառք.
   » Ասէք՝ խընդրեմ՝ աթոռանիստ քաղաքներ »:
Այդ բոլորին շատ հըմտութեամբ ըրջօրէն
   Պատասխանէր հայ պատանին շիկնելով.
Օտարն կըրկնեց. « ցոյց տուէք նաեւ Ասիան,
   » Փո՞քրըն անշուշտ, ու քաղաքներն, Կասպից ծով.
» Հիմայ Կովկասն, նորա լերինք ձիւնամածք,
   » Եւ Պարսկաստան. ո՞րն է քաղաք գահանիստ »:

## Զ

Տան տիկունին, պատկառելի այդ մայրը՝
   Նայէր անոյշ իւր անդրանկին. եւ հանգիստ
Ու պարծանօք միւս որդիքն էլ շուրջն առած,
   Հետաքըրքիր՝ լուռ՝ ակնապիշ լըսէին
Յանպատրաստից այս քըննութիւնն անսեղի:
   Ով որ տեսնէր քառասնամեայ այդ տիկին,
Որի փափուկ դէմքին վերայ հազուանշմար
   Մի փոքրիկ ծալք թողած էին տարիներ,
Եւ մայրական երկունքն եւ հոգս զանազան՝
   Մի մեղմ կընճիռ ի՛ մէջ յօնից սեւահեր,
Որն որ երբեմն անհետանար, երբ ի՛ գիրկ
   Իւր մայրենի որդիքն առած՝ ժըպտէր մունջ,
Վեց հատ քընքոյշ գլուխներ խոնաւ ի՛ համբոյր,
   Անուշահոտ իբր շընչաւոր ծաղկանց փունջ:
Յանկարծ օտարն յարեց կըրկին հեզնօրէն.
   « Այժըմ խընդրեմ՝ որ ցոյց տաք ինձ Հայաստան՝

» Ձեր հայրենիք, աթոռանիստ իւր քաղաք »...
Պատանեակը պատրաստուէր տալ պատասխան,
Բայց մայրն իսկոյն նըշան արաւ որ լըռէ.
Իբրեւ մի նոր Հռովմի բամբիշ՝ հայուհին
Յոյժ թալկացաւ, եւ աչքերով իւր վառվռուն,
Մի շանթալից հայեացք նետեց օտարին.
Վեհ ժըպտելով՝ բացաւ թեւերն հանդարտիկ,
Յոյց տուեց նորան Հայաստանը մեր ներկայ,
Ուսումնասէր եւ խոստմնալից հինգ որդիք:

---

## ՄԻ ԿԱԹԻՒ ՋՈՒՐ

Անգայտացած օդը պայթեց
Մըրըրկաշունչ ձայներ հանեց.
Ծովըն մի պահ հանդարտ ու լուռ,
Ծածկեց տեղին թանձըր փըրփուր:

Բարձըրացան սուր գորշ ալիքներ.
Դողացին ժայռք ու ծովեզեր,
Իբրեւ թէ ծովն իւր սահմանէն
Դուրս գալ ուզէր մըռընչելէն:

Յետ եւ յառաջ գնար ու խաղար,
Ջարնէր, հեծէր, փոշիանար,
Ինչպէս անհեղ ջրեղէն բաբան՝
Փակ անառիկ քաղքին ի՛ դըրան:

Փոթորիկն երբ գոռար զերթ կինճ,
Երկնից մի ջրոյ կաթիլ պարզ՝ ջինջ
Ովկիանոսի անկաւ ի՛ ծոց,
Ուր խափանուեց իւր ողբն ու կոծ:

Չի խառնուեցաւ օտար տարրի․
Իսմէն լաւ էր մի հատ գարի,
Կամ այն տերեւ, որ հողմավար՝
Ալեաց վըրայ կը լողանար:

Ի՛ ծովուց այդ յանհունութիւն
Ի՞նչ էր ինքը․ ոչընչութի՜ւն․
Մինչ երկընքում տունն էր ամպիկ,
Ջով անձրեւաց կազմէր մասնիկ:

Լուծուած՝ կորած՝ աննետացած
Ըզգար իրան․ աղի ալեաց
Խառնըւեցան աղի արցունք:․․․
Բայց գըթացին յերկնից զուարթունք:

Թերեհաւատ կաթլին ղըրացի
Բերանաբաց կար մի խեցի,
Որ կաթիլըն յանկարծ կուլ տուեց,
Իւր ծոցումը սնոյց ու պահեց:

Անցան օրեր, տարիներ շատ,
Երբ մի ծըկնորս խեղճ ու աղքատ
Խըլեց խեցին այն ժայռապինդ,
Ու բանալով հըրճուեց լի՛ խինդ․․․

Ի՛ գիրկ խեցւոյն այն ամրափակ
Գտաւ մի մարգրիտ փայլուն՝ ճերմակ,
Զ՛որ ծախելով հարըստացաւ
Եւ արարչին բիւր փառք տըւաւ:

Այսպէս այդ խեղճ մի ջրոյ հատիկ
Երջանկացուց մի ընտանիք․
Թագաւորաց յետոյ թագին՝
Դարձաւ մի զարդ, գանձ թանկագին:

## ԱՌ ԳԱՏԿԱՈՒԵԼԻՆ ԾԵՐԵՆՑ

*Իւր վաղամեռիկ եւ բարեյիշատակ աղջկան՝ տիկին Թագուհի Մելիք—Ազարեանցի մահուան առթիւ։*

Գիտեմ, մինչ արդ ըզգալի չէր
Քեզ բեղմնաւոր կեանքիդ բեռ.
Եւ ոչ ալեացդ թելք ըսպիտակ
Որք թուեն օրեր, տարիներ
Աշխատանօք լիքն եւ արդեամբք։
Զի աղջիկըդ, ճակտիդ պըսակ,
Չէր մըթագնած
Տակաւին։

Գիտեմ, ծերոյդ դէմքն յարգելի
Եւ կընճռոտած՝ ունէր ժպիտ
Ջերմ վերջին շողն արեւմըտի՝
Ըսփոփանաց յետին շիթ,
Որոյ աղբիւր սիրտդ էր միայն,
Պահարանն այն մարգարտի,
Խնամքով պահած
Եւ անգին։

Մահն ալեւոր խըլեց ծեռքէդ
Խոնջեալ ծերոյդ գաւազան՝
Ծաղկեալ սիրով քոյ դըստեր.
Մի՞թէ նորա չէ՞ր բաւական
Իւր մանգաղին յենարան,
Որ քեզ թողուց անձնեցուկ
Ցուսահատած
Լքովին։

Չի քեզանում մարդն ու քերթող
Անմխիթար մնացին.
Հայրը ողբաց իւր զաւակը,
Քերթողն՝ հոգւոյ իւր դրացին,
Մուսա՝ դուստր իւր սիրախանդ.
Միանգամայն սիրտն ու քնարը
Ի՛սուգ պատած
Լռեցին։

Գիտեմ, ցաւոյդ չիք մի սփոփանք,
Ձայնդ առնել չեն կարող.
Միայն թէ, զուցէ ի նպաստ մեզ,
Պէտք է որ մինն արօթող
Լինի յերկինս, սուրբ ողջակէզ,
Դուռն մեզ բանայ նախապէս՝
Դեռ չի զաղթած
Մեր հոգին։

Այս համոզումն քիչ ըսփոփէ
Մեզ՝ յ՚այս ցաւոց մահավայր,
Որն որ չի տար սընունդ բարւոյն.
Եւ կարծըասիրտ ինչպէս՝ ժայռ,
Հոգւոյ՝ մըտքի ազնիւ ծիլքերն
Խեղդէ իւր մէջ զինչ խորթ մայր,
Ջըզարգացած
Տակաւին։

Պատկառելի վիպասանիդ
Մընում է արդ շարադրել
Նորա կենաց գողտրիկ վէպը,
Եւ սըրտումըդ տըպագրել.
Հոգւոյ աչօք կարդալ սփոփուլ,
Այն տեղ հիացմամբ միշտ հայել
Իւր սըխրամած
Պատկերին,

Որոյ վրայ կը փայլէին
Առաքինի նշոյլներ,
Որդիական սիրոյ գորով,
Անքուն գիշերց եւ ճետքեր՝
Երբ որ գրական լուրջ երկանց
Օգնէր՝ նըստած իւր ճօր քով,
Ծաւոն ծաղկաբաց
Ընդ պըտղին.

Գընաց տեսնել առաքինի
Մայրն ի՛պատկեր զաւակաց
Թոռունք՝ Լուսիկն եւ Արփենի.
Նըման մի զոյգ ճրեշտակաց՝
Համգչին ի՛գիրկ Աղեքսանդրին,
Հօրն, ամուսնոյն վըշտաճար.
Այնտեղ կազմէ իւր սուրբ անդրին
Առաքինեաց
Թագուճին.

---

## ՓՇՐՈԽԱԾ ՑՈՑՍԵՐ

### Նուէր առ տիկին Օլգա Շ...

Գերեզմանատանց երբ սըզատեսիլ
Դաշտ ու ձորերից տըխուր անցկենամ,
Այլ եւ այլ ձեւով յիշատակարանք,
Հարուստի շիրմաց ճոխութիւն փարթամ
Մինչեւ աղքատին փոսի խաչն ճամեստ,
Կամ տապանազիրն երբ որ կը կարդամ,

Երբ նոցա վերայ խաղաղ ծիծաղկոտ
Արփին էլ սըփռէ իւր ճառագայթներ,
Երբ ցօղն ու անձրեւ մըշակեն դալար

Ճերմակ զարդարանք ծաղիկներու բոյսք,
Երբ թռչունք ու նուազ ուրախ գեղգեղով
Այնտեղ էլ միակերպ հընչեցնեն տաղեր,

Այն սուրբ նուիրական տեղւոյն երեւոյթ
Պատկառանք ազդէ. որոյ լըռութիւն
Չեն վըրդովեր բնաւ ոչ աղօթք, եւ ոչ
Մեռելոց կարքին ծիանց ոտից թոփիւն.
Ուր ննջելոց վերջին հառաչանք
Կարծես ծառոց մէջ դարձել սօսափիւն:

Անդ ամենայն ինչ լռիկ ներշընչեն
Գերազոյն անդորր եւ լիակատար,
Ուր որ շատերի կենաց պատմութեան
Դըրուած է արդէն վերջին կէտն ու բառ.
Ուր ունայնութեան տիրէ դիցուհին,
Ուր որ գերեզմանք խորան են՝ տաճար,

Որոց մէջ հանգչին ոսկերց բեկորներ՝
Ինչպէս այդ փայտին փըտած կըտորտանք,
Որոյ վրայ երբեմն ծածանէր ծըփէր
Յաղթութեան գոյնզգոյն դրօշակն ու նըշանք.
Կամ իբր ջախջախած սուսերք զանազան
Գոռ պատերազմում կենաց միշտ ի՛ վտանգ:

Սակայն ի՛ զուր տեղ քնարըս տըխրաձայն՝
Նոյնպէս եւ իմ գրիչ երգէ պարապի
Նոցանով՝ որք տխուր արդէն երգել են
Իրանց վերջնական երգը կարապի.
Մինչդեռ իմ սիրտը վիրաւոր տըրտում՝
Ցիշատակներով միայն տառապի:

Ի՞նչ են գերեզմանք, եթէ բաղդատենք
Այն հէգ սըրտին հետ, որ զգայուն կենդան
Կրումէ իրա մէջ փըշրանք յոյսերի,

Հոգեղէն ցաւոց արիւնոտ զընդան:
Երնեկ թէ չըզգար ծոցում պահածը,
Եւ մնար անտարբեր սառած զինչ դամբան:

Քիչե՞ր կան միթէ այս կեղծ աշխարհքում՝
Որք միայն շընչեն ի՛ յոյս խաբուսիկ.
Նրանց համար ներկան չունի մի հրապոյր,
Քըմահաճ յոյսի լինին խաղալիկ:
Եւ որքան որ նա փախչի հեռանայ,
Այնքան աւելի նրան կարծեն մօտիկ:

Թըշուառ մարդկութիւն, որ միայն յոյսով
Ինքնիրան խաբէ. եւ չըզգար բնաւին,
Որ նա երբեմըն գործակատարն է
Գալիք աղէտից, որ գայ մեզ կըրկին
Սիրտ տալ՝ ու ապրինք, ու մեզ պատրաստէ
Թերեւս նոր վըշտաց, ցաւոց դառնագին:

Շատ հեղ էլ նմանի այդ հացին եւ ջրին
Որ շըղթայակիր մի կալանաւոր
Իւր բանտապանի ձեռքից ընդունայ.
Կամ մահապարտին զըլխատութեան օր
Գըլխատման բեմի աստիճաններում
Գըծուած մի գորգի ճոխ եւ փառաւոր:

Եւ կամ այս կեանքի ովկիանոսում,
Ուր ի՛ զուր փընտռենք ցամաք ծովեզեր,
Նըման ծովերի երգիչ դլիցուհւոյն՝
Որ քամուն տըւած ոսկեայ իւր մազեր
Գրաւիչ՝ հրապուրէր յանդուգն նաւաստին,
Յետոյ ի՛ ջուրըս նրան խորասուզէր:

Ո՞վ յոյս անողորմ, երազ ու պատրանք,
Տառապեալ հոգւոյն խոստում մեղրամած,
Որ ամենայն ինչ սպանես նորանում՝

Բաց ի՛ զգացմունքից ցաւով նըրբացած.
Որով միշտ ըզգամ անբոյժ վէրքերնին,
Որոյ մահլամն է հող գերեզմանաց:

Թէ մինչեւ անգամ յոյսն իրագործուի,
Նորանում վայելք եւ հաճոյք չի կայ.
Երջանկութեան նման մեզ կը փայփայէ՝
Երբ որ մեզանից է դեռ բացակայ,
Կամ մարտին նըւագ որ հեռուներից
Մեր ականջացը քաղցրահընչիւն գայ:

Քանիցս եմ տեսել՝ աւա՜ղ՝ յուսահատք,
Որ աչքն ի՛ գետին սեւեռած՝ ման գան:
Մինն, որ յուսալիր համբուրէր գըրկում
Քընքոյշ վարդաքիրտ այտերն իւր մանկան.
Ուր ժըպիտք կենաց, խոստմունք փայլէին,
Որք ի՛ սպառ շիջան ի՛ քըթթել ական:

Ուրիշն էլ սպասէ իւր միակ որդւոյն,
Որ ուսումն աւարտած՝ տար աշխարհում
Փութայ մխիթարել ծնողըն ծերունի,
Սիրտըն միշտ ի՛ տրոփ, կարօտ՝ ի ցընծում.
Այլ ճանապարհում դէպք աղէտալի
Թողնեն նրան անթաղ մոռացուած դաշտում:

Կամ կոյս նազենի, որ միայն շընչէ
Հոգեգրաւ սիրով քաջազեղ անձին՝
Որոյ հաւատայ անձնըւիրութեան,
Աչքն ի՛ դուռ սպասէ սիրելւոյն դարձին.
Այլ յանկարծ լըսէ՝ որ մատնիչն անգութ
Մի հակառակորդ սեղմէ իւր կըրծին:

Եւ մեծահանճար հըմուտ գիտնական,
Բնութեան խոր գաղտնեաց անխոնջ խուզարկող՝
Ինչպէս Իսահակ Նեւթոնն աստղաբաշխ,

Որ յանկարծ մի օր տեսնէ սիրտն ի՛ դող՝
Իւր աշխատութեանց ողջ կենացն արդիւնք
Ճարակ են լինում բոցին լափլիզող:

Դաշտերի միջակն դադրած՝ ակնապիշ
Ըսպասէ քաղել ցորեանն քրտնաթոր.
Սակայն երկընքի կապոյտ է ցամաք,
Արեւն իսկ կարծես փայլումէ խոժոռ՝
Թըղծուկ գիւղացւոյն երեսին նըման.
Արտերն էլ այրէ տօչորէ բոլոր:

Ո՜հ, ո՞ր մէկն ասեմ, ո՞ր մէկն արդ յիշեմ
Փըշրուած յոյսերին աւերակն ու քանդ,
Որոնք մահացու հետքեր են թողնում,
Վիրաւոր սըրտին թունալից աւանդ.
Որ գերեզմանն իսկ կարծես վարանի
Ծածկել իւր ծոցում այդ աներ պատանդ:

Գուցէ լաւագոյն լինէր մեզ համար՝
Չի ցանկալ ոչինչ, չի յուսալ բնաւին.
Թէ կարելի էր, ոչ մի ըզգացմամբ,
Յուսով չի կապել թելերն մեր սըրտին,
Եթէ մահացուքս չենք կարող տանել
Նորա փըշրանաց բեռն աղէտագին:

Այլ չէ՛ սակայն, չէ անկարելի է
Անբանի նըման ապրիլ աշխարհքում.
Թէ ծըկտինք սիրել գեղեցիկն՝ բարին,
Թէ մեր կարճ կենաց օրերի շարքում
Մի վայրկենական յազումըն յուսոյ
Մոռացնում է մեզ վըշտերն անպատում:

Եւ մանաւանդ որ դատապարտուած ենք
Կուրծ կուրծքի մըրցիլ բիւր փորձանաց հետ.
Այս է ըզգայուն մարդկանց ճակտին գիր

Ու խորհրդաւոր գաղտնիքն երկնաւէտ․
Ի՞նչ փոյթ է նորան մեր կըսկիծն ու կոծ
Երբոր անփոփոխ նա մնայ միշտ յաւէտ։

Արդ ուրեմն յուսանք անվհատ անդադար,
Ինչ որ էլ լինի նորա վերջաբան․
Կեանքը մի ցաւ է, տարակոյս ու հոգ,
Այլ յոյսն է նորա միակ յենարան,
Թերեւս պատրանաց սին երազներու,
Երկընքից կախուած թըմրեցնող օրրան։

Անթիւ աղէտից ալիքների մէջ
Կեանքը նըման է մի կտոր տախտակի,
Ում վրայ որոնենք մութ հորիզոնում
Մի նաւ փըրկարար, ու փութանակի
Նորա կը դիմենք․ այդ յոյսըն է սուղ՝
Որ մեզ դեռ չ՚հասած կորչի խորտակի։

Բայց նախախընամ տէրն տիեզերաց,
Որ իւր աթոռից սուրբ աստեղանիստ
Անվերջ անըսկիզբ հըսկէ մեր վըրայ,
Տեսնէ նա մեր վիշտն ու փորձանքը խիստ․
Ալեաց խաղալիկ տախտակն դիւրաբեկ
Գիտէ մըտցընել ի՛ նաւահանգիստ։



# ՈՒՍԱՆՈՂՔ

## Ա

Մի ընդարձակ մեծ քաղաքում՝
Միշտ շարժման մէջ բազմամարդ,
Երեկոյեան զանգերն հընչեն.
Եւ մառախուղ մի խոնաւ
Քողարկում է եկեղեցեաց
Գմբեթները բարդ ի՛ բարդ.
Միայն նոցա ծայրի խաչեր
Գոլորշւով թաց ու խոնաւ,
Արեւմըտեան վերջին շողից
Ոսկեղնիկ եւ կարմրահոծ,
Կայծ կայծ փայլեն բոցերի նման:
Եւ անհամար բալխիրներ
Արագընթաց սլանան մըրցին
Ի՛ հրապարակ, ի՛ փողոց,
Ուր որ արդէն կարգաւ վառուին
Լոյսերն անթիւ կազերի:
Մարդիկ ամեն աստիճանի
Վազվազում են ըշտապով,
Մինը թատրոն, միւսն էլ ի՛ պար
Դիմսկաց, ուր գեղանի
Տիկնայք՝ աղջկունք գան խըմբովին՝
Ծածկուած դէմքով խորհըրդաւոր.
Ուր պահպանեն մի գողտր լեզու.
Որ թէպէտ մունջ, այլ ճարտար
Կը տարածէ սիրոյ հըրդեհ.
Լոյսերին հանդիսին հետ
Վառի, խնկոյն եւ յագենայ
Առտուան լոյսից դալկահար:

## Բ

Լայնատարած Մոսկուայի
Փողոցաց մէջ արդէն դադրէր
Գնալ ու գալը. այլ զուարճութիւնք
Կը տեւէին շարունակ,
Հրապուրէին ամբոխն անյագ
Հետաքրքիր հեշտասէր:
Կէս գիշերին մի տան առաջ
Եկաւ մինը կանգնեցաւ.
Զ՚նայելով որ խիստ է ցուրտը,
Նա հագուած է շատ թեթեւ.
Բարակ բաճկոն, մի սեւ գըլխարկ,
Ուսին էլ վրայ մի գորշ պլէթ.
Սակայն բոլորն հին եւ մաշուած
Երեւում են ակներեւ:
Դրան մօտ գտնուած կազի լոյսը
Ուղիղ ցոլայ երեսին,
Ու ակնոցին ապակեաց մէջ
Աղօտ կերպիւ կը փայլի,
Ու դեղներանգ ցոյց տայ դէմքը
Ծնօտ ու ծաղիկ մօրուքով,
Գունատ, նիհար. ուսմանց հետքեր,
Խոկմանց անքուն գիշերի
Ցայտնի լինին բացարձակ.
Այլ առողջ է եւ գեղեցիկ:
Դըռնապանը դանդաղաքայլ
Գալով դուռը բաց արաւ.
Եւ ընդունեց նորան այնպէս,
Ինչպէս որ միշտ սովոր են
Ընդունիլ այն բնակիչները,
Որ տան վերեւ ընդ յարկաւ

Ունին վարծած փոքրիկ մի խուց,
Սամավառ, ճաշն ու ծառան,
Ընդ ամենը կը վճարեն
Քըսան րուբլի ամսական:
Մտաւ Յովակիմ, եւ խըցիկը
Վառեց կանթեղն բէթրօլի,
Որոյ լոյսը աղօտ կերպիւ
Տարածուեցաւ կիսաստուեր
Պատերի վրայ, եւ թըղթերի,
Գըրեանց, գըրչաց եւ տետրակաց՝
Սեղանի վրայ խառն ի՛ խառն,
Ուր որ կարդար ու միշտ գըրէր
Ու իւր դասերն պատրաստէր,
Հանեց ճեպից մի կըտոր հաց,
Քիչ էլ պանիր, որն որ դրաւ
Սեղանին մի անկեան վըրայ,
Ընթրել սկըսեց հանդարտիկ:
Աւարտելով իւր ընթրիքը,
Մըտածելով լըրջօրէն՝
Յառաջիկայ իւր դասերուն
Եւ քըննութեանց, ուր որ միշտ
Յաղթական էր հանդիսանում,
Անցնէր շուտով յ՚երրորդ կլաս՝
Աշխատելով ողջ օրն ՚ի քուն:
Այսու հանդերձ շատ աղքատ է,
Սակայն հաշուող եւ ըզգոյշ.
Խնայողութեամբ կը ծախսէ միշտ
Հօրն ուղարկած խեղճ գումար,
Հաստատ յոյսով՝ որ դորանից
Մի օր օգուտ դուրս բերէ
Իւր ծերունի հօրն հիւանդոտ
Ու սպառաւ մօրն յոյժ տըկար,
Որոց առ այժմ սնունդ ըսփոփանք

Իւր նամակներն են քաղցրիկ՝
Լի խոստումով եւ յոյսերով:
Ունի մի քոյր՝ եւ եղբայր
Որ մանկավարժ հղաւ արդէն․
Քոյրն էլ վաղուց պատրաստուի
Լինել մանկանց քոյր վարժուհի,
Մտաց զարգացման ազնիւ մայր․
Յովակիմն էլ իրաւաբան
Երբ իւր դասերն աւարտէ,
Ի՛նչ երջանիկ պիտի լինի
Այն օրն իրանց եւ ծնողքին․
Երբ նոցա գիրկ վերադառնայ՝
Վայլել պտուղն եւ արդիւնք
Այն զոհաբերի անխոնջ ուսմանց
Եւ քրտանցը ճակատին:
Բնութեամբ ազնիւ ծընած է նա,
Առաքինի եւ անծնուէր․
Չի վարանիր մի մաս հանել
Հացիցն՝ աղքատ իւր եղբօր․
Գնահատող է լաւ բաների,
Գեղեցիկին եւ բարւոյն,
Բնազդմամբ ըզգայ նոցա արժէք՝
Եւ այլոց էլ տայ յորդոր․
Մանաւանդ երբ վերաբերի
Խնդիրն հայի՜ իւր ազգին:
Միթէ նա քի՜չ սիրով օգնեց
Աղամեանի Մօսկուայում,
Նրա հետ դերեր կատարելով,
Մերթ վազելով դէս ու դէն,
Ընկերացն հետ ցընծալի ուրախ՝
Երբ նրան էին ծափհարում,
Երբ իւր սիրտն էլ ձեռքերին հետ
Բաբախում էր հըրճուանքից:

Ո՜հ նոցա մէջ շատեր զրտնուին
Վեհանձն, ազնիւ, մարդասէր
Հայ ուսանողք, որք օտարաց՝
Հաւատացէք՝ չե՛ն նըման.
Զի նոցանում յատուկ շընչէ
Բընիկ հոգի մ'անձնուէր.
Որք քըրտնաջան են աշխատում,
Ի ծոց ուսմանց միշտ փայլուն:

Գ

Երկըրէ փոքր մահճակալում պառկած է
Քամակին վրայ, աչքերն կէս բաց՝ մըտածէ.
Սենեկին մէջ առարկաներն չէ տեսնում,
Զի նա հեռի՝ ի' խոր սըրտին եւ հոգւում
Նըշմարում է սաստիկ զրափչ մի տեսիլ.
Իրանց տունը ծածկած ծաղկոք նորածիլ,
Հայրն ու մայրը լըռիկ նըստած շէմքին վրան՝
Իւր մէկ նամակն ուրախութեամբ կը բանան.
Հայրը հազած կլոր ակնոցներ՝ կը կարդայ.
Մայրն ուշադիր զըլուխն օրրէ ու կը լայ.
Չիքիլայի տակից կախուած զանզուըներ
Դէն է ածում՝ որ չ'ծածկեն իւր ականջներ,
Որ լաւ լըսէ թէ ի՛նչ է գրում իւր պալան:
Մարդն էլ ըստէպ արխալուխի թեւով լան
Հին ակնոցին ապակիներն է սըրբում,
Որք արցունքից աղօտում են եւ մըթնում.
Երբեմն ա՜խ, օ՜խ հառաչելով, փըչելով
Մուշտուկին մէջ, ուր բաբիրոսն իւր թըղթով
Մինչեւ արմատն այրուեց արդէն անհամբեր,
Այլ նամակին ընթերցումն չէր աւարտեր:
Դրան էլ միջից ներսն երեւի սամավառ
Նոր փայլեցրած, որ եռալով ֆըշֆըշար.
Սեղանին վրայ չորս բաժակներ կան 'ի շար,

Փայտէ տըփով փոքրիկ չայի մի պաշար:
Քոյրիկն հագած կիմնազեօնի իւր շորեր,
Չայն է շինում ու կոտրատում շաքարներ:
Զուարթ է եւ գոհ, ու ժըպտելով նայի մերթ
Իւր կուրծքին վրայ՝ որ մետաքսեայ կապոյտ շերտ
Կըրէ մի կլոր արծըթէ փոքր մէտայեօն,
Յառաջադէմ աշակերտին իբրեւ ծօն:
Ահա եկաւ նոյնպէս եղբայրն անդրանիկ,
Գեղեցկադէմ եւ թըխամորթ սեւաչուիկ,
Մի վրաստանցի հայու պատկեր ու տիպար
Վայրենաժպիտ կըլիմային ձիւնասառ,
Ուր Թամարայք լոկ՝ դեւք զուարթունք թափառին,
Ուր սիրոյ խանդն ոգեւորէ ջինջ գինին,
Ուր կեանքն է մի շարք հաճոյից պարերի,
Ուր ժայռք՝ լերինք խանձարուրք են երգերի:
Բացաւ գըլուխն, համբուրեց մօրն ու ծեր հօր.
Քոյրը փութաց գըրկել կըտրիճ իւր եղբօր,
Որից խոնարհ միշտ ակնածէր եւ հըլու,
Թէ իբր եղբայր եւ թէ իբրեւ դասատու,
Որ միայն վաթսուն ռուբլի ստանար ամսական.
Դրանով ապրէր այդ համեստիկ գերդաստան.
Այդ գումարից պէտք էր որ միշտ օգնէին
Ի տար աշխարհ պանդըխտացեալ որդեկին:
Այժմ էլ չունին ոչ մի կայք եւ ոչ կալուած,
Բաց 'ի սաստիկ զըրկողութեամբ հաւաքուած
Մի գումարից, որ կիսապէս ծախք արին
Ուսմանց համար Յովակիմին, Գէորգին:
Յովակիմն էլ արդէն վաղուց մտադիր էր
Գնալ Գերմանիայ, սակայն միջոց պակասէր:
Ուսանողին երբեմըն սիրտն յուսով լի
Ասպարիզին, շատ անգամ չէ բանալի.
Եթէ քսակը դատարկ մընայ լիովին,
Եռանդն եւ յոյս անհետանան խըմբովին:

Բայց Յովակիմ իւր ծնողքին էր պարտական,
Խարխուլ ծերոց կ'ուզէր լինել զաւազան.
Այդ պարտքն անհա կըրկնապատկէր իւր եռանդ,
Արծարծ պահէր որդիական սիրոյն խանդ:
Որով տեսնէր նա տակաւին սիրատուն
Այն տեսիլքը՝ կիսով ի՛ մըափ, կէս ի՛ քուն,
Որն որ իջաւ եւ ծածկուեցաւ աչքերին.
Ինկաւ գետին գիրքն որ բռնէր իւր ձեռին,
Ու խըցիկը լըռութեան մէջ թաղուեց խոր՝
Ոյ ընդհատէր մերթ փողոցին խուլ ժըխոր:

Դ.

Դեռ գիշերուան կանթեղն աղօտ ճարճատէր,
Երբ դեղներանգ նորա լոյսին հետ մըրցէր՝
Տարօրինակ ըստուերներով ղիւթական
Առաւօտի արշալոյսը ցուրտ ծըմրան.
Իւր շողերով շամանդաղով միգախառն
Գըգուէր զերկիր փայփայանօք ծիւնասառն.
Հորիզոնի շերտն հեռաւոր կապտագիծ
Զանազանուէր լուսաւոր պարզ երկընքից.
Ու մեծաքարդ հատուածք ամպի սեւազանգ,
Մութ գիշերի պատռուած քօղին կըտորտանք,
Կապարագոյն եւ եզրափայլ շիկնէին,
Եւ քիչ առ քիչ շոգիանալով ցըրուէին:

Արեգակին արդէն բեւեռ
Ձիւնի պաշար կը հաւաքէր,
Սեւ ու սպիտակ աղաւնիներ
Ըսկըսէին պար, կուկուներ:
Պատուհանը Յովակիմին
Հասասալ էր տան տանիքին,
Ուր աղաւնիք միշտ փութային
Ծեծել կըտցով մութ ապակին,

Իբրեւ թէ նրան կամենային
Այն օրն քիչ վաղ զարթեցընել,
Որ չինչ լուսովն առաւօտի
Կարդայ դասերն իւր անարգել՝
Դեռ միտքը նուրբ, փորն անօթի:
Եւ Յովակիմն էլ վերջապէս
Խոր քընիցը աչքերն բացաւ.
Ու նետելով վերմակին դէզ՝
Լըւաց երեսն ու հագուեցաւ:
Եւ մէկ հեղ էլ տըւեց զանգակ,
Նըստեց մօտիկ իւր սեղանին,
Մինչ աղախինն ի սկաւառակ
Բերէր ըսպասն առտուան չային:
Նոյն պահուն դուռն թըռխկացըրին.
Յովակիմը փութաց բանալ
Արշալոյսով կանխող հիւրին՝
Որ գար այսպէս անակընկալ:
Այդ հիւրն էր մի երիտասարդ
Բարձրահասակ՝ վայելչագեղ,
Վրան գըլուխը խեղճ եւ անզարդ,
Բանկոնն հինցած, թեւերն էլ նեղ:
Այդ բոլորից չքաւորութիւն
Յայտնի տեսնուէր. այլ քսանամեայ
Երակներում հոսէր արիւն:
Իւր սեւ մազերն եբենոսեայ
Ըստուերէին մի կլոր ճակատ
Հանճարեղ, լիք ու ընդարձակ.
Աչքերն փայլուն եւ լայնահատ,
Վառվռուն մտաց մի զոյգ փայլակ:
Պօղոս դէմքով շատ էր նըման
Իւր ընկերոջ՝ Յովակիմին.
Լոկ նըշմարուէր Պօղոսին վրան
Վառվռուն այտեր, բազուկ ուժգին.

Բա· Բայց ծնված էր Շապրաքաղում,
Խ, Հայրենակից Լուսարէվլի,
Մ 9: Պատերազմաց կրակի ծխում
Փայլող քաջին՝ նման արեւի:
Մանկութիւնից որբ մնաց Պօղոս.
Միակ պաշտպանն իւր ողորմած
Վաղուց էր որ սանկտակ անխօս
Մեռաւ, ու խեղճն անտէր մընաց:
Չորս տարիներ նորա շնորհիւ,
Յաճախում էր համալսարան.
Մեծ եռանդով՝ հանդարտ ուշիւ
Սովրէր արուեստ բըժըշկական.
Բաւականին հմուտ եւ ճարտար,
Այնպիսում լաւ բժըշկապետ
Լինելու մեծ յոյսեր կը տար:
Սակայն չանքերն մնացին անհետ.
Մահիցն յետոյ բարերարին
Մի տարի եւս շարունակեց
Դըժուարութեամբ մեծ ահագին,
Վերջ ի՛ վերջոյ յուսահատուեց:
Ձըմեռն՝ ասենք՝ կարելի էր
Այսպէս թ՛այնպէս՝ ապրիլ ճըգնել,
Ներկայացնել թատրախաղեր,
Հասոյթից փոքր մաս ընդունել.
Սակայն այդ էլ գրեթէ չընչին:
Այլ ամառը երբ մօտենար,
Երբ ընկերքը խումբ խումբ գնային
Ի հայրենիք իւրեանց աշխարհ՝
Տեսնել գըրկել ծնողք եւ զ՛եղբարք,
Ինքն ո՛ւր գընայ ողորմելին.
Նըստած խըցում իւր վերնայարկ՝
Ուր որ շոգից խաշուի կաշին,
Ումից արդեօք պէտք է խընդրէ

Չի մեռնելու չափ մի կտոր հաց.
Թէ խուցին վարձք չի վըճարէ,
Դուռն երեսին փակեն անբաց:
Խե՛ղճ ուսանող, քանիցս անգամ
Անդամահատ գործին ձեռքից,
Երբ դիականց սառ մերկանդամ
Կըտրատէիր մասունքն վըտիտ՝
Բաժանելով նրանց մի առ մի,
Ցորս զըննէիր կենաց կապեր,
Մարդկանց ախտից բունն ու պատճառ,
Այդ մեռելոց մէջ անտարբեր՝
Նոցա կըրծքում անշուշտ զըտար
Միշտ անըզգայ անշունչ մի սիրտ,
Որ քեզ աւել օգուտ են տուած
Քան կենդանի մարդիկը բիրս:

## Ե

Պօղոսը կը գայ ամեն առաւօտ
Խըմել իւր չայը Ցովակիմի մօտ.
Միայն այդ օրը սովորականից
Աւելի կանուխ զարթել էր քընից,
Որ գայ մըտերմին ու տայ աւետիս՝
Որ այնուհետեւ ամենայն ամիս
Տասն եւ հինգ րուբլի կը ստանայ ռոճիկ
Մի լաւ պարոնից, ում որ ազդեցիկ
Մի ճար է տըւել ու բըժըշկել է:
Այս կերպիւ Պօղոս արդէն սկըսել է
Իւր ասպարիզի քայլը առաջին,
Որի օգուտը, թէպէտ շատ չնչին,
Բայց իրա համար մի գանձ է անգին.
Բայց խեղճին՝ ափսո՛ս՝ մութ է ապագան,
Չի ջունի բընաւ միջոց դրամական,

Բնիկ ծնած էր Ղարաբաղում,
Հայրենակից Լազարեվի,
Պատերազմաց կրակի ծխում
Փայլող քաջին՝ նման արեւի:
Մանկութիւնից որբ մնաց Պօղոս.
Միակ պաշտպանն իւր ողորմած
Վաղուց էր որ անկտակ անխօս
Մեռաւ, ու խեղճն անտէր մնաց:
Չորս տարիներ նորա շնորհիւ,
Ցաճախում էր համալսարան.
Մեծ եռանդով՝ հանդարտ ուշիւ
Սովրէր արուեստ բժշկական.
Բաւականին հմուտ եւ ճարտար,
Ապագայում լաւ բժշկապետ
Լինելու մեծ յոյսեր կը տար:
Սակայն ջանքերն մնացին անհետ.
Մահիցն յետոյ բարերարին
Մի տարի եւս շարունակեց
Դժուարութեամբ մեծ ահագին,
Վերջ ի՛ վերջոյ յուսահատուեց:
Չմեռն՝ ասենք՝ կարելի էր
Այսպէս թ՛այնպէս՝ ապրիլ ճգնել,
Ներկայացնել թատրախաղեր,
Հասոյթից փոքր մաս ընդունել.
Սակայն այդ էլ գրեթէ չընչին.
Այլ ամառը երբ մօտենար,
Երբ ընկերքը խումբ խումբ գնային
Ի հայրենիք իւրեանց աշխարհ՝
Տեսնել գըրկել ծնողք եւ զ՛եղբարք,
Ինքն ո՛ւր գընայ ողորմելին.
Նըստած խըցում իւր վերնայարկ՝
Ուր որ շոգից խաշուի կաշին,
Ումի՞ց սրդեօք պէտք է խընդրէ

Չի մեռնելու չափ մի կտոր հաց.
Թէ խուցին վարձք չի վըճարէ,
Դուռն երեսին փակեն անբաց:
Խե՛ղճ ուսանող, քանիցս անգամ
Անդամահատ գործին ձեռքիդ,
Երբ դիականց սառ մերկանդամ
Կըտրատէիր մասունքն վըտիտ՝
Բաժանելով նրանց մի առ մի,
Ցորս զըննէիր կենաց կայքեր,
Մարդկանց ախտից բունն ու պատճառ,
Այդ մեռելոց մէջ անտարբեր՝
Նոցա կըրծքում անշուշտ գըտար
Միշտ անըզգայ անշունչ մի սիրտ,
Որ քեզ աւել օգուտ են տուած
Քան կենդանի մարդիկը բիրտ:

Ե

Պօղոսը կը գայ ամեն առաւօտ
Խըմել իւր չայը Ցովակիմի մօտ.
Միայն այդ օրը սովորականից
Աւելի կանուխ զարթել էր քընից,
Որ գայ մըտերմին ու տայ աւետիս՝
Որ այնուհետեւ ամենայն ամիս
Տասն եւ հինգ րուբլի կը ստանայ ռոճիկ
Մի լաւ պարոնից, ում որ ազդեցիկ
Մի ճար է տըւել ու բըժըշկել է:
Այս կերպիւ Պօղոս արդէն սկըսել է
Իւր ասպարիզի քայլը առաջին,
Որի օգուտը, թէպէտ շատ չնչին,
Բայց իրա համար մի գանձ է անգին.
Բայց խեղճին՝ ափսո՛ս՝ մութ է ապագան,
Չ՚ունի բընաւ միջոց դրամական,

Օրական հացին ապահով մի գին:
Ա՛խ արա Պօղոս հառաչելով խոր:
Ընկերն ի՛ սկզբան ուրախ էր սրտով
Պօղոսի յայտնած այդ համեստ լուրով.
Այլ նորա վերջին խօսքերից կարծես
Ցուզուեցաւ սաստիկ սիրտն ըզգալապէս,
Ուր որ ցաւալի մի վէրք կիսափակ
Հոսում էր արեան նորաբուղխ առուակ,
Եւ երկուսին էլ աչքերի շըրջան
Կարմրեցան խոնաւ զինչ գունատ մարմնան.
Այլ այդ խօսքերը թողած մի քովի՝
Ըսկսան չայ խըմել շաքարով կծովի:
Տնի պատմառաւ ունիվէրսիթէթ
Այն օրը փակ էր, Ցովակիմ թէպէտ
Մըտադիր էր բնաւ տանից դուրս չըգալ,
Ողջ օրը նըստած իւր դասերն կարդալ.
Սակայն առաօտեան այդէն տաս ժամին
Եկան նորա մօտ ընկերց մի քանին՝
Ժամանակ անցնել, կարդալ լըրագիր:
Բաժակներում չայ լըքցրին հաւասար.
Ուսանողաց մին բարձրաձայն կարդար
Լըրագրաց լուրերն՝ եւ այլք լըսէին,
Երբ դուռը յանկարծ դըրսից բաց արին.
Դադրեց ընթերցումն, ու ներս մտաւ արագ
Թըղթաբեր մ՚իսկոյն ու տուաւ մի նամակ
Տըփղիսից ուղղուած Ցովակիմի վրայ՝
Որն որ անհամբեր բացաւ որ կարդայ,
Մի անկիւն քաշուած եւ սիրտն ի՛ տըրոփ,
Հոգւովը ուրախ այլ մըտքով ամփոփ:
Սակայն չի հասած նամակի կէսին՝
Ըսպիտակցաւ գոյնը երեսին.
Ձեռօքն որ գըգուէր գանգուրներն ճակտին՝
Ուժգնակի խըփեց շըռնչասպառ կուրծքին.

Ու խածատելով շրթները անգութակ,
Աչքերն կիսաբաց եւ դեղնայատակ՝
Գլորուեցաւ ինկաւ իւր ծանրութիւնով,
Գլուխն էլ ամուր պատին զարնելով:
Ընկերք սարսափած ըշտապ վերցըրին
Նորան գետնիցը, մահճի վրայ դըրին.
Բոլորն շուարած՝ չ'գիտեն ինչ անել:
Ոմանք ըսկըսան դէմքին ջուր սրըսկել.
Պօղոսը ներքուստ յուզեալ՝ բայց խաղաղ,
Գնաց տան տիրոջից ուզել քիչ քացախ,
Ու Յովակիմի ճակտին քովերը
Շըփեց, նոյնպէս եւ սառած ձեռքերը.
Մի քառորդ ժամից բացաւ Յովակիմ
Նուաղած իւր աչքեր, մրմնջեց. « ո՜ն ծնողք իմ »...
Ու նորից փակեց, մնաց անշարժ անմթափ,
Մինչ խեղճին գլուխն այրէր ջերմն ու տապ:
Ուսանողաց մին գետնից վեր առաւ
Նամակն թօթափեր ու վատահամբաւ,
Ուր յայտնէին՝ թէ մեռաւ իւր քոյրը,
Թէ գնաց վայելել անմահից բոյրը,
Սեւ հողին թողլով մարմինն դեռաբոյս:
Այլ իւր եղբայրը անգործ եւ անյոյս՝
Լըքեալ տառապի յ'արտօսր անմխիթար
Տան մէջ, ախ ու վախ անվերջ անդադար:...

Զ

Մեծ տանջանաց մէջ օրեր շաբաթներ
Յովակիմ մահճում տքար ու տագնապէր՝
Սաստիկ բորբոքմամբ ամբողջ ուղեղին.
Մորթը հարթ ցամաք, այտերն դալկագին,
Շըրթունքը ճըկտեալ, բերանն ի' փըրփուր.
Աւեն ատեն զար ջղային մի սարսուռ,
Ու յետոյ նուաղած՝ զրեթէ անկենդան՝

Ուշաթափ մընար, մունջ, դիակնման,
Մինչ խսկ դադրէր շունչն եւ երակին զարկ.
Ու մեղմ կը խըռկար ինչպէս հոգեվարք:
Բըժիշկը գունատ, ժամացոյց ձեռքին՝
Վախճանն ըսպասէր կենաց փոթորկին.
Որ յուսահատեալ ասաց մի առոտու
Ընկերներին՝ թէ « պատասխանատու
» Չեմ կարող լինել, շատ եմ վըհատում.
» Թէ նորից կըրկնուի այդ վատթար ցընցում,
» Գըլխաւոր նըշանն ախտին ՃԵՆԵՆՃԵՐ,
» Անշուշտ վերջապէս լինի մահաբեր » :...
Երկու օրեր եւս, օրեր անձկութեան,
Ահարկու հետքեր թողին եւ անցան.
Եւ այն թըշուառը, որն որ աշխարհում
Ապրէր աղքատիկ իւր վերնայարկում,
Երկնից մօտ դըրացի, ուր բաւական էր
Իւր վինակիցը, ուր քիչ տեղ բըռնէր,
Ժուժկալ սեղանից այլոց տալով մաս,
Դէպ ի՛ ապագայ դիմէր փութավազ,
Ցանկարծ նորա մէջ եւ իւր ներկային
Բացուեց մութ փոսը, դուռ գերեզմանին,
Ուր որ կար արդէն ի՛ սպառ թաքցըրած
Մարմինն իւր քըրոջ՝ կուսութեամբ պատնած.
Ցորում իւր մատղաշ սիրտն էլ յուսաքոց
Պիտի շիջանէր քարէ մի ծածքոց....
Առաւօտն էր ցուրտ. Պօղոսն ողջ գիշեր
Ցովակիմի մօտ դարձեալ հըսկել էր,
Որն որ յանկարծուստ աչքերն բանալով՝
Կոչեց Պօղոսին մի նըւաղ ձայնով
Ու մի բաժակ ջուր խընդրեց նորանից.
Պօղոսն ակնապիշ եւ սիրտն ի՛ թախիծ՝
Նըկատէր կենաց այդ կայծը պատիր,
Մօտալուտ մահուն անեղ դատաւճիռ:

Զըրիցն էլ խըմել չըկարողացաւ,
Կըրծքում՝ կոկորդում ըզգար կրակ ու ցաւ.
Սառուցեալ ձեռքով եւ մահադողդոջ՝
Բռնելով ձեռքը իւր խեղճ ընկերոջ,
Ասաց. «Վերջացաւ իմ կենաց արեւ,
» Գըրէ դու ծնողացս իմ վերջին բարեւ.
» Եւ թէ երբ տեսնես, եղբայր իմ Պօղոս,
» Որ անշունչ մարմինս կ'իջեցնեն ի՚ փոս,
» Գիտցի՛ր որ իմ սէր բոլորին համար
» Մինչ ի՚ խոր շիրիմս պէտք է մնայ միշտ վառ.
» Որոյ գերեզմանս լինի լոկ լապտեր,
» Որոյ ծովն՝ աղբիւր՝ Աստուած է մեր տէր»:
Անկողինին մօտ Պօղոս ծընրադրած՝
Լըսէր կորագլուխ իբրեւ քարացած.
Ըզգար որ սիրտը բաբախէր ուժգին,
Լիքըն եւ ուռած վըշտօք ահագին.
Արտասուաց ալիք՝ կոհակք յորդ ի՚ յորդ
Գային խըցկելու շունչն իւր ի՚ կոկորդ.
Եւ ցամքած աչքերն սըխուր եւ վայրագ,
Կարմրած ցայտէին հոգւոյն տագնապ՝ կրակ:...
Ու երբ քաղաքը ուրախ անտարբեր՝
Իւր հաճոյիցը, գործին ըշտապէր,
Երբ նորա կենաց խուժդուժն եւ աղմուկ
Գայր մինչ մեռնողին վիրնայարկն ի՚ սուգ,
Երբոր արեւն էլ դեռ չէր աւարտած
Ճրջանըն երկնից ահազնատարած,
Արդէն Յովակիմ ննջել էր ի՚ մահ,
Գնացել էր բազմիլ հրեշտակաց ի՚ գահ:
Մինչ ընկերքն էին ի՚ համալսարան,
Նա հանգչէր ուրախ յ'երկնից ճեմարան,
Որ անշունչ դէմքին տայր ժըպիտ փափուկ:
Եւ ուսանողի պլէթըն խեղճ անշուք,
Որ ցըրտից երբեմն նորան պահպանէր,

Այժմ էլ տիրոջը ցուրտ դիակը ծածկէր:
Որոյ տակիցը ցըցուէին լըռիկ
Նիհարած մարմնոյն գծերն ու ոսկերտիք:
Լուռ էր խըցիկը՝ զինչ նախասենեակ
Խոր գերեզմանին. Պօղոսը մինակ
Լռութիւնն ընդհատէր իւր հառաչանօք,
Վիրաւոր սըրտին արդար ձայն՝ բողոք:
Դըրին մահճի մօտ երկու հատ ճըրագ,
Որք օրուան լոյսում՝ կարմիր՝ այլանդակ,
Կարծես օդում կախ, փայլէին անօսր,
Ինչպէս բոցեղէն սուգի զոյգ ալտօսր:...
Անձայն անպաճոյճ կերպիւ թաղեցին
Ու բահով առատ հողեր թափեցին,
Որ դագաղին վրայ անտաշ ու կոպիտ
Ինկնալով խոնաւ՝ ծանրացած ու խիտ,
Հանում էր ձայներ յոյժ-տարօրինակ,
Ձերթ երգ կարապին մահու ի՛ դաշնակ:
Տէրտէրն ի՛ վերջոյ ասաց պահպանիչ
Անգութ փոսին վրայ՝ թարմ կենաց գրաւիչ.
Ուր ընկերքն ի՛ սուգ, սըրտերն ի՛ հառաչ,
Տընկեցին փայտեայ մի աղքատիկ խաչ:
Պօղոսն աչքերով միշտ ջերմ ու ցամաք
Ցերկինըս նայէր, ուր մի ամպ ճերմակ
Սաւառնէր իբրեւ մեռելոյն հոգեակ.
Ձեռքի բուռն ուժով խըփեց ճակատին.
Կուրծքիցն հանելով հառաչանք խորին՝
Գընաց այնտեղից, հեռացաւ ի՛ փոյթ.
Այն օրից յետոյ մնաց աներեւոյթ:



1886

# ՇՆՈՐՀԱՒՈՐ ՍՈՒՐԲ ԶԱՏԻԿ

## ԱՌ ՀԱՑ ՄԱՆԿՏԻՆ

Անա յարեաւ ի՛ մեռելոց տէրն փրկիչ,
Ու հալածեց չար սատանան՝ մեր փորձիչ.
Յօղն իւր արեան սուրբ խաչիցն ու նիզակից
Դեռ կաթն ի՛ կաթ կաթկըթայ:

Հալածեցաւ մատնութիւնն էլ սեւերես.
Մեղաւորը նըստած ի՛ ցուրտ մոխրին դէզ՝
Հառաչէ, եւ կուրծքին խըփէ գոչելով՝
Դո՛ւթ, գո՛ւթ՝ տէ՛ր իմ, ո՛ն զըթա:

Եւ Քրիստոսի քղամիդովըն արիւնոտ
Մարդկութիւնը սըրբէ մեղքերն իւր կեղտոտ,
Եւ հըրճուանօք ծայն արձակէ. փրկութեան
Այսօր ես գիտ, գիտ գըտայ:

Ծիծաղումէ տիեզերք բոլոր ի՛ ցընծում,
Մարդ եւ անբան. մինչեւ իսկ հաւն հաւնոցում
Թառած ուրախ իւր թառին վրայ դիւրաբեկ,
Կըտ կըտ, հաւկիթ կըտկըտայ:

Գողգոթայի կայծակներից՝ անծրեւներ
Թափուին յերկիր, ու ըսփռին բիւր ծաղիկներ.
Գարունն էլ գայ, եւ գոյնըզգոյն վարդն՝ յասմիկ
Դեռափըթիթ եւ կարմրիկ:

Այլ կարմիրը՝ ի՛ ճիշտակ սուրբ արեան,
Կը յատկանայ առաքինի հեզութեան.
Հաւկիթն անգամ տաք ջըրին մէջ եփեփիկ,
Դուրս գայ կլորիկ եւ կարմրիկ:

Դուք էլ՝ տղե՛րք, երբ ննջածող էք ձեր ծնողաց,
Առաքինի՝ ուսուսնասէր՝ ամօթխած,
Ազնիւ գոյնով ձեր այտերն էլ խատուտիկ
Պիտի կարմրիք՝ ո՛վ որդիք:

---

## ՊԱՀԱՊԱՆ ՀՐԵՇՏԱԿ

Սիրուն գիշեր ձեր մօր կողքին՝
Բաց բալկօնում լինիք նստած,
Եւ աչքերնիդ ուղղած յերկին՝
Լուռիկ նայէք վառ աստեղաց.

Այն ժամանակ, ո՛վ մանկտիք,
Անտարակոյս դուք տեսած կաք՝
Թ'ինչպէս յանկարծ մի վառ լուսիկ
Կը սլանայ շողն ի քամակ:

Նա աստղերի միջով կարծես՝
Թռչըտելով անց է կենում.
Մէկ էլ խսկոյն մի կայծի պէս
Մըթնանում է եւ չքչանում:

Նա հրեշտակն ձեր պահապան
Հոգեակըն է, այլ ո՛չ աստղիկ,
Որ թողով իւր լոյսի շըրջան՝
Երկիր իջնէ, գայ ձեզ մօտիկ:

Գայ քընենելու ձեր ողջ օրուայ
Ամեն բարի գործերն ու վարք,
Եւ ձեր փափկիկ անկողնի վրայ
Պարզէ թեւերն իւր յուսավառք:

## 1887

# ԱՐՋԻ ՄՈՐԹԸ

Ձիւնը երկնքից թափվումէ առատ,
Հարուստին տալով ջերմութիւնը՝ հրճուանք.
Այլ անպատըսպար խեղճին յուսահատ՝
Սառ ու դող բերէ, ցաւ՝ քաղց ու զըրկանք:

Այս տան մէջ ցընծում, մի այլ տան մէջ լաց,
Այն կողմըդ տեսնես հարսանիք ու պար,
Ձախումդ էլ ցըրտից մի դիակ սառած,
Բոլորն այս կը տան մեր կենաց տիպար:

Ձըմեռն էլ իբրեւ եղբայր կոյր բաղդին՝
Միշտ անհաւասար վիճակ տայ մարդուն.
Թէպէտ նա գնայ՝ այցելէ չորս դին,
Բայց մէկին գըգուէ, միւսին քանդէ տուն:

Բարեբաղդաբար կան եւ այնպիսիք,
Որ ճոխութեան մէջ յիշումեն խեղճին.
Շնորհելով նորան մի պատառ հացիկ,
Հանդարտացընեն ձայնն իրենց խըղճին:

Ահա այսպիսի մի պարոնի տան .
Հանդէս կար սարգած ծընընդեան առթիւ,
Որոյ խորհըրդաւոր ծառը՝ զանազան
Ընծաների տակ ծածկըւէր անթիւ:

Շատ կային այնտեղ աղքատ մանուկներ,
Ձըքաւոր դըրացեաց, տընանկաց որդիք,
Որոց բերանը ջրէին քանֆէտներ,
Սըրտի հառաչանք տային խաղալիկք:

Հիւրերն երբ եկան՝ մոմերն վառեցին,
Զանազան ընծայք ցրուեցին մանկանց,
Որոց թիթեղէ հրացանն, փայտէ ձին,
Կամ ոսկեայ ընկուզն թուէր մի մեծ գանձ:

Մէկ էլ յանկարծուստ դռներ սրահին
Բացուեցան ուժով. եւ մի սպիտակ արջ
Զընայելով այդ փոքրրկաց ահին,
Դուրս եկաւ յառաջ՝ ոտքն հաստ ու կարճ:

Տղերք եւ աղջկերք ահով սարսափած՝
Մի պատըսպարան փութացին գտնել.
Ոմանք թեւոց մէջ իրենց ծընողաց,
Ոմանք էլ սրահից փախ տուին անարգել:

Սակայն այդ երկիւղն եղաւ կարճատեւ.
Զի արջի մորթը հրաշքով վայր ընկաւ.
Ու խորամանկ տղան՝ ծածկըւած ներքեւ՝
Երկու ոտից վրայ ուղիղ կանգնեցաւ:

Այդ տղան տանտիրոջ որդին էր միակ,
Որ իւր փոքր ընկերց ցանկալով անել
Մի անակընկալ ծաղրական կատակ,
Այդ արջի մորթը իւր վրան էր հագել:

Երբ ճըշմարտութիւնն երեւցաւ աչաց,
Վախի փոխարէն տիրեց մեծ ծիծաղ.
Բոլորն էլ ձեռթով արջի մորթն հագած,
Ըսկըսան միմեանց անել հանաք՝ խաղ:

Այսպէս, իմ անփորձ փոքրիկ մանուկներ,
Դուք երեւոյթից բընաւ մի՛ խաբուիք.
Զի շատ մարդակերպ լինին գազաններ,
Եւ գազանակերպ կան ազնիւ մարդիկ:

# ԱՌ ՅԱՐԳՈՅԱՊԱՏԻՒ ՀԱՅՐՆ ԻՄ ԵՒ ՄՏԵՐԻՄ Հ. ՆԻԿՈՂԱՅՈՍ Վ. ՁԻՔԻ

## ՆՈՒԷՐ ԱՆԲԱՒ ՍԻՐՈՅ

*Այն չէ ըրած բնաւ Մովսէս*
*Գաւազանովն հրաշագործ,*
*Ինչ որ պատկերդ ժըպտերես*
*Դառն ժամերուս վըշտափործ:*

*Երբ սենեկի իմ դըռնէն*
*Մըտնես ուրախ՝ տաս բարեւ,*
*Մըխիթարուիմ ես մէկէն,*
*Վիշտք իմ թըւին կարճատեւ:*

*Կրօնաւորի սեւ զգեստիդ*
*Թանձըր եւ մութ ծալքերէն՝*
*Յուսոյ բըղխէ լոյս վըճիտ,*
*Աւել քանց վառ աստղերէն:*

*Թէ այդ լոյսը՝ մեր հոգւոյ*
*Մեղմէ ցաւերն ու տագնապ,*
*Որ մ'այլ ճակատդ սիրահոծ*
*Անշուշտ պսակէ երկնակապ:*



# ԱՐՔԱՅՆ ԼԻՐ

## ԿԱՄ

## ԱՊԵՐԱԽՏ ԱՂՋԻԿՆԵՐ

Ապառաժոտ լեռների մէջ
Ամպ է իջել ըսպառնալից.
Որոտաձայն նա գոռում է
Կայծակներով վէքը ծոցից:

Մըռընչելով յանկարծ քամին
Տապալում է մեծ մեծ ծառեր,
Երբ շանթերը շառաչելով՝
Տալիս են խուլ արձագանգներ:

Այդ տարերւաց կըռւին մէջ,
Խորդ ու ժայռոտ լերան վըրայ
Մի ծերունի թափառական
Արցունք թափէ, անէծք գոռայ:

Պատառոտուն նորա ըզգեստ,
Մազն ու մօրուք խառն ըսպիտակ
Ծածանում են քամու շընչից,
Իւր աղէտքին իբրև դրօշակ:

Չէ՛ կարելի զանազանել՝
Ո՞րն է աւել զարհուրելի.
Շառաչի՞ւնն այն կայծակների՝
Թէ ծերուկին ողբ ցաւալի:

Իւրաքանչիւր նորա կոծին
Մասնակցում են կարծես ամպեր,
Որոց կըրակն էլ չէ՛ կարող
Ցամաքեցնել իւր արցունքներ:

Նրա ընկերն է մի խեղճ մամուռ՝
Որի արցունքն ունի ծիծաղ.
Որի համար վիշտ ծերունուն
Սովորական թուի մի խաղ:

Եթէ կամիք դուք ճանաչել,
Իմ ընթերցող ազնիւ տղերք,
Թէ ո՞վ է այն խեղճ ծերունին
Որի ողբից դողան սարերք,

Ահա ասեմ. այն խըղճալին
Մի արքայ էր շատ զօրաւոր.
Իւր արքունիք, հարըստութիւն
Փարթամ էին և փառաւոր:

Բայց իբրեւ ցեցք իւր ծերութեան՝
Ունեցաւ նա չար աղջըկերք,
Որք բարութեանց իւր փոխարէն՝
Տուին նորան դառնագին վէրք:

Նախատեցին արտաքսելով
Նորա իրանց հօր՝ ծընողին.
Ցնորուեց նորա գլուխն ալեւոր,
Իսպառ կորաւ թագն էլ անգին:

Այժմ յուսահատ՝ դաշտից ի՛ լեռ
Ման է գալիս խարխափելով,
Փիլիսոփայ իւր միմոսի
Կըրծքին վըրայ թեք ընկնելով:

Սակայն չի կայ չար որդկերանց
Այս աշխարհքում երջանկութիւն.
Չի ծընողաց վիշտն ու անէծք
Կը չորացնեն նոցա արիւն:

Եւ այդ աղջկերց երկուսըն էլ,
Որք տանջեցին իրանց խեղճ հօր,
Թըշուառացան, եւ սուգի մէջ
Ժառանգեցին մահ ու սեւ օր:

Նորա միայն երրորդ դուստրը,
Որ խընամեց հօրն ցաւագար,
Արդ երկընքում նորա կողքին
Շողշողում է աստղի պէս վառ:

---

## ԴԵՐԱՍԱՆՆ

Չունի ոչ կայք, ոչ բնակարան հաստատուն,
Շրջի մտածկոտ եւ նիհար.
Ցուցմունք, տագնապ են լոկ սընունդն իւր կենաց.
Դափնիք ճակտին էլ դալար
Քրտամբ՝ ճըգամբ եւ արտասունքով են քաղուած
Ժողովրդից ծափահար։

Մերթ ծովեզեր, մերթ էլ երկթէ ուղեաց վրայ
Կը թափառի սիրտն ի հոգ՝
Փշալից փառաց նոր հորիզոն որոնել,
Ուր ողջունեն նորան ծաղկօք.
Բայց նա ծաղկանց խւրաքանչիւր լուրջ թերթեր
Յօղէ լեղի արտասուօք:

Թարգման մարդկան պէսպէս յախուռն կրքերին՝
Ունի հանճար եւ դիմակ.
Զիւր սեպհական անձըն վաղուց մոռացած՝
Այլոց համար կեայ մինակ:
Մերթ է տըխուր, բայց Մոլիէռ ձեւանայ,
Մերթ է յանկամն՝ ողբերգակ:

Ոչ մի բանի տէր՝ վայելող չէ եղած,
Ո՛չ կենացն ո՛չ մըտերմին.
Տեղ մի այսօր բան մի նորան թէ գրաւէ,
Թէ սէր ըզգայ կուսեկին,
Կ'հասնի վա՛ղիւ բաժանման ժամն անողոք,
Հարկ է մեկնիլ ողբագին:

Զանձն իւր ըստէպ խաբէ փառօք անցաւոր,
Որ ի հեռուստ զինչ թըմբուկ
Անոյշ հընչեն նախանձորդին լըսելեաց,
Մինչդեռ անբաւ վիշտ 'ւ անձուկ
Կըրէ պաշտողըն Շէքսպիրի եւ մեկնիչ,
Որոյ լուծէ զհանելուկ:

Ըզքե՛մ թողնել, ա՛հ, չէ կարող նա բընաւ.
Իւրաքանչիւր պըսակներ
Հետըզհետէ կազմեն նորա շըղթային
Օղակներն այն ծանրաբեռն,
Որոյ ահեղ շեղջին տակ օր մի նաեւ
Մահն էլ խաղայ զիւր մեծ դե՛րն:

Քըսակն ահա չէ համաչափ վիճակին,
Հա՛րկ է սակայն շքեղ հագնի.
Չէ փոյթ՝ թէ է՛ անօթի կամ թէ ծարաւ,
Ձեռնոց պիտի գեղանի.
Փոշին կարմիր ւքօղէ զղիմաց դեղնութիւն՝
Գիշերն անքուն թէ տըքնի:

Անթարթ աչքեր անդուլ նըրան կը դիտեն.
Կը հաւատան երբ ասէ.
Միայն ըզւէրն անուանեն կեղծ ու պատիր՝
Եթէ յանկարծ նա գըտնէ
Զիւր Օֆէլի կամ Տէզտէմոն կամ ազնիւ
Մի բարեկամ՝ զոր պաշտէ:

Ա՛ղէ ուրեմն՝ թափառականդ Ակասֆէր...
Ա՛ռ ըզգլխարկդ, ե՛լ ի բեմ.
Ծափ զարնելով թէպէտ ըզքեզ միշտ գովեն՝
Երբ ցոյց տաս չարն ու վըսեմ,
Բայց դու մի՛ մնար ոչ մի տեղ շատ օրերով՝
Որ չընային քեզ նըսեմ:

Սուլեց շոգին. ժամ է գնալ ու թափառիլ,
Մելփոմենի հէք զինուոր.
Բարեկամներդ եւ սիրեցիդ թո՛ղ մինակ,
Մայրիկդ եւ հայր ալեւոր.
Փութա՛ ի տես հանել մարդկան տիպարներ.
Պատառ հաց է հարկաւոր:

Նըկարչին մնայ գէթ յիշատակն ի կըտաւ,
Փիղիասայն ի կըճի.
Կ՚անհետանայ քեզ հետ հանճարն, եւ զըխմակ
Կ՚ուտէ հողոյն սեւ ճըճի.
Պատմութիւն, նա գուցէ զքեզ օր մի յիշէ
Ցապագայում՝ թէ հաճի:

Ղաւն ու վըսեմ՝ նա էր զրաւել զքեզ ի սպառ.
Ո՜հ սիրեցեալ այն ճիւաղք...
Պատանք՝ կեանքիդ լինին լթատեր վարագոյր,
Մարին լոյսեր, դադրին խաղք:
Գուցէ յետոյ դաշտի մի վրայ թէ գըտնեն
Զանթաղ մարմնոյդ չոր կըմախք:



## 1888

### Ի ԾՆՈՒՆԴ ՓՐԿՉԻՆ

Մութ էր երկինք մութ ամպերով,
Զիւնի պատանք ծածկէր զ՚երկիր.
Հարուստն ի՛ խինճ, աղքատն ի՛ սով՝
Տանջուումէին անկարեկիր:
Փոթորկալից քամին հեծէր՝
Հոգեւարքի զինչ հառաչանք.
Սառեցընէր՝ չորցնէր՝ հիւծէր,
Հետն բերելով ցաւ ու տանջանք:
Սակայն հրեշտակք իրենց թեւով
Ամպերն խոկոյն վանեցին բաց.
Եւ լուսաւոր աստեղց ի՛ զոգ՝
Սիրոյ լապտերն վառեց Աստուած:
Այո՛ սիրոյ էր նա լապտեր՝
Այն զիսաւոր աստղն ամենի,
Որ լուսափայլ մեզ աւետէր
Ի՛ մսուր ծընած զալուստն փըրկչի.
Փափկամարմին այդ մերկ մանկան,
Որ դողդոջուն կայր անդ մըրսկոտ,
Ախոռի մէջ՝ ի սէր մարդկան
Եզանց՝ խաշանց շընչին կարօտ:
Նա մեզ համար, ազնի՛ւ եղբարք,
Ծնաւ ու մեռաւ մերկ՝ խեղճ ւ՚աղքատ,
Որպէս զի մենք լինինք արդարք,
Ի՛ սէր բարւոյն միշտ ի՛ նըկատ:
Մենք որ փափուկ տաք անկողնում
Ծընինք՝ հանգչինք ու մեռանինք,
Կամ վայելենք հաճոյք՝ խընդում,
Ծնողաց գըգուանք, խաղ եւ հարկինք,

Յիշենք մանուկն ախոռին մէջ,
Որ ի՛ սէր մեզ աղքատացաւ՝
Բառնալ ըզմեղըս՝ խռովն ու վէճ,
Որ ամոքէ մարդկութեան ցաւ:

---

## ՐԱՖՖԻԻ ՄԱՀԸ

Պայծառ արշալոյսն պայծառ ճակատին տըւաւ իւր համբոյր,
Զարթեցուց քընից հըսկայն բազմաշխատ՝ երբ այլք ննջէին.
Սակայն երբ արդէն իւր հեզ կենսակիցք՝ ծաղկունք սիրաբոյր՝
Ժըպտէին անմեղ առանձնակեցի դալուկ երեսին,

Աւա՜ղ, զի դեռ տկար՝ նիհար էր սաստիկ, փոքր ինչ կազդուրւ
Դառնազին ախտից. թէպէտ եւ թուղթ՝ գրիչ իւր միակ թիկունք
Հոգեշահ կեանքին՝ իբրեւ յենարան այժըմ ձեռքն առած,
Աւարտել կամէր իւր վիպասանի ընդհատեալ երկունք:

Այլ կարօտագին մերթ ընդ մերթ նայի ծաղկանց սիրազըւաւ,
Որք զեփիւռին թեւօք խոնարհ ցօղնակոր ողջունեն.ըլուին,
Երբ նա հոգեվար երեւկայութեամբ սլանայ ի՛ հարաւ՝
Հոգւով սիրատարփ նիւթեր որոնել իւր նոր մատենին:

Լուռ է ամեն ինչ՝ բաց ի՛ գարնայնոյ սոխակին գեղգեղ,
Որ լուսահալած գիշերուայ փախուստն աւետէ ուրախ,
Կամ աքաղաղի երգերն՝ որ ձօնէ տըւընջեան աստեղ,
Որ գայ մեզ շնորհել նոր կորով, նոր կեանք զըւարթ եւ մատաղ:

Լայն ճակատն առած վըտիտ մատանց մէջ՝ ըզմայլմամբ լըռիկ
Բնութեամբ հիանայ. եւ անզգալապէս դուրս գայ պատըշգամ,
Ուր մի քանիսը ծաղկանց անսըննունդ կային միայնիկ,
Զի ափսո՜ս վաղուց չէր խնամած նոցա ձեռօք բարեկամ:

Ով թըղթոց ծաղկանց միշտ մըխիթարիչ յանկուցիչ թերթեր...
Քանի՛ցս ձեր վերայ նա տեղացել է այնքան խանդ՝ հանճար,
Մինչ ծաղկանց նուիրէր խընամքն իւր ձեռաց եւ խանդակաթ սէր.
Արդ թուղթն ըզգերթող, այլ ծաղկունք թառամ ըսպասում են ճար։

Դողդոջուն բազկով հազիւ բարձրացրած ջուրին ծանըր կուժ,
Այգուն ցօղին հետ կատարեց պաշտօն՝ ծաղկըներ ջրելով.
Այլ խոհուն իւր դէմք գոհ՝ եւ ժըպիտով մինչ փայլէր վատուժ,
Չէր տեսնում մահուան ժանտադէմ գանկին ծիծաղն բոթագուժ,

Որ իւր սըգասիւք թեւերի միջից փըչեց շունչ մահուան,
Փոյթ փոթորկելով ծովակն արգաւանդ կեանքին պըտղաբեր.
Ուր քնարն եւ հանճար, օրերն յուսալից խորասոյզ կորան
Մռայլ գերեզմանի սեաւ հողին ի՛ ծոց միշտ բաց ւ՚անտարբեր:

Երբ հետեւեալ օրն կըրկին լերանց վրայ ծագեցաւ արեւ,
Մըտաւոր լուսոյ ճոխ արեւն արդէն իւր մարն էր մըտած.
Բայց նրա անկենդան՝ արցունքով պատնեալ մարմնոյն ի՛ վերեւ
Վերածնէր հոգին ի՛ գիրկ բազմարդիւն իւր աշխատանաց:

Յայնժամ որ ղազաղն ի՛ փոս իջուցին, երկինքն արտասուէր՝
Մարդկանց պէս տըխուր տըրտում սըգազգեաց. այլ բարոյական
Լուսոյ աշխարհում լուսոյ մի սանդուղ կանգնեց ակներեւ,
Որոյ աստիճանք կազմեն Րաֆֆիի գործերն գըրական:

---

## ԹԱՓՈՐ ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹ ԵՐԵԿՈՅԵԱՆ

Ի ծո՛ւնըր՝ ծո՛ւնր խոնարհեցէք, պե՛տք, մեծատո՛ւնք եւ տընա՛նկք.
Երկի՛նք՝ զուարթունք ահա կըրկնեն զօրհնութեանց սուրբ արձա_
Ահա հասնի գայ լուսափայլ Քրիստոս փառաց թագաւոր, [գանգ.
Անուամբ տեառըն օրհնեալ եկեալ, ի՛ խաչ զոհուիլ կամաւոր:

Ի՛ հրապարակ մեծ քաղաքին խըռնի ամբոխն երկիւղած.
Ահա թմփորն յառաջ խաղայ՝ երգօք մանկանցն եւ ղըղրոց.
Արեգակն՝ իբր ակն Աստուծոյ ցոլանայ բիւր ճաճանչներ,
Փառօք պսակէ մարդկանց փըրկչին խոցեալ ճակատն լուսաներ:
Խընկոց բուրումն անուշահոտ, հառաչանաց եւ զեփիւռք՝
Յ՚օդս ամբառնան ժողովըրդից՝ ի՛ ծունր իջեալ բիւրուց բիւրք:
Եւ ալեւոր քահանայից սըրբապաշտօն լուռ խըմբեակ
Առաջնորդէ առ մեզ Քրիստոս՝ խաղաղութեան զօւրհանողակ.
Բոլորեքեանք լուրջ են, խոնարհ, եւ գունատեալ դէմքերնին՝
Ալեաց նման են սպիտակած, խորհըրդաւոր՝ դալկագին:
Գետինն իբրեւ կապերտ ծածկեն դափնւոյն տերեւք՝ մըրտենեաց,
Փըշրանք պսակաց յաղթականին ի պատերազմ մարդատեաց.
Եւ զորս առեալ այժմ առ ա թուր Աստուածորդին գայ ի՛ մեզ՝
Բերել զ՚օրէնս խաղաղութեան, մահուամբ մահուն կոխել զ՚դէզ:
Մասնատուփին մէջ ոսկեզանգ՝ նըշխարք մարմնոյն կենսաշաղ
Վերամբարձիկ ահա բերէ քահանայն լուռ եւ դանդաղ.
Եւ ջահակիրք մունջ անբարբառ շըրջապատեն դողալով,
Ամպհովանին ակնակուռ ոսկեծածան ի հոլով:
Ընդ որում չուէ վերածըգողն երկնից Աստուած մարդացեալ,
Անուամբ տեառըն օրհնեալ եկեալ, ի՛ Գողգոթա խաչելեալ:
Նման խաչակիր Սիմէոնի՝ սուրբ նըշխարօք ձեռամբարձ,
Դողան շըրթունք քահանային՝ ջերմ աղօթքով սրտաբարձ:
Ի՛ ծունր՝ ի՛ ծունր, հընչեն զանգին ձայն զանգակաց օղանորդն.
Բարձէք իշխանք ըզգըլուխս ձեր, արքայն փառաց գայ մեզ մերձ.
Ուրախացիր, ո՛վ ժողովուրդ, ձայնէ զոչէ՛ ո՛խանձնայ.
Սիրոյ գթոյ եւ խաղաղութեան Աստուած մարդն է ահա սա,
Որ ի՛ սէր քեզ արիւնազանգ՝ սուրբ տաճարիդ գայ փեսայ.
Ցընծա՛՝ ո՛վ մարդ, էլ մի՛ վհատիր, ձրբէ նորան եւ յուսա՛:

---

## ԱՂՕԹՈՒՄ ԵՄ ԵՍ ԱՌ ԱՅՆ

Աղօթում եմ ես առ այն՝ որոյ կամքն է իմ հոգին,
Զորն ըզմայլմամբ անուանէ՝ իմ հայր եւ տէր ըստեղծող․
Փոյթ չէ բընաւ ինձ դիմել իմ խելացը կորովին՝
Երբ ամեն ինչ իմ շուրջը բացատրում է ինձ նորան։
Միթէ արժան եմ ես մարդս տեսնել ըզնա աչքերով․
Բաւական չէ՞ որ իմ սիրտ՝ նորա սիրոյն է խորան։
Աղօթում եմ ես առ այն, որոյ ուխտին տապանակ
Քերովբէից լուսաթեւ ձեւացը մէջ բարձրանայ,
Կըրելով միշտ իւր ծոցում ըզպատուիրանս երկնառաք․
Որ սէր ունի առ ի՛ մեզ․ միայն յարբունս ամբոխին
Դեռ անզուսպ եւ վայրենի՝ տալով յորդոր, պատուհաս,
Ոչ միայն իբրեւ հուր ծախիչ, այլ իբր մի հայր կաթոգին՝
Որ զանազան բիւր շաւղօք ուղղէ բարքը իւր որդւոց։
Աղօթեմ ես միշտ առ այն, որոյ գահը լուսաշէն
Կեդրոն եւ կեանքն է անթիւ՝ անեզր՝ անհուն աշխարհաց,
Որոց բնակիչք անդադար պաշտեն ըզնա եւ յիշեն։
Աղօթեմ ես եւ նոյնպէս Աստուածորդոյն այն վըսեմ,
Որ հօրն առ մեզ սուրբ սիրոյն բերաւ անջինջ ապացոյց․
Յ'աշխարհ գալով մեզ եղբայր՝ ընկեր եղաւ՝ վարդապետ,
Եւ զոհ սիրոյ ի՛ տանջանս հանդիսացաւ սիրալոյց։
Ուսուց նա մեզ՝ որ միայն սէր առ իւր ընկերն եւ բարիք
Տան զաղափարն Աստուծոյ, նորա սիրոյն սըրբութեան,
Որն որ ահեղ կայծականց եւ որոտմանց մէջ անգամ
Ծածկէ ծոցում իւր անշէջ գըթութեան բոցն անսահման։
Պիտ աղօթեմ միշտ առ այն, որ իմաստուն օրինօք
Երբեմըն վրէժ կը գոռայ Սինայի սեպ ի կատար,
Եւ երբեմն էլ փշապըսակ՝ Գողգոթայի բարձրերից
Սէր քարոզէ, մի խաչի վրայ գամուած՝ ի՛ ցաւ՝ տիգահար։

## ԱՌ ՆԱՆՆԻ

Չունիս ոչ հանգիստ եւ ոչ օթեւան.
Քեզի վանեցին հայրական յարկից.
Չիկայ բարեկամ, ոչ էլ հարեւան՝
Որ ճակատագրիդ լինի կարեկից:
Ծըպտիդ հատուցումն եղաւ փուշ տատասկ.
Սիրեցիր անդարձ, սիրով հալ ու մաշ՝
Չինչ խորշակահար ցորենի մի հասկ
Դաշտում դիտապաստ տըհաս դեռ մատղաշ:
Բայց ինչպէս այն հասկն՝ որ տարուբերվի
Փոթորկին շընչով ի՛ լեռ՝ ձոր՝ անտառ,
Դու էլ բաղդին ձեռքն անպաշտպան գերի,
Գնաս հալածական՝ անտէր ու թափառ:
Գոնեայ լինէիր նըման սարեկին՝
Օտար երկնից տակ մոլոր եւ տատան,
Որոյ ներդաշնակ դայլայլիկ երգին
Հայթայթէ լինեն մի օր ապաստան:
Աւըրի ազատուած որսորդի ձեռից.
Թէպէտ բանտարկեալ վանդակում շըքեղ,
Չըզգար գերութեան վիճակը թախիծ,
Եւ շարունակէ իւր ուրախ գեղգեղ:
Այլ դու տարագիր իմ սիրո՛ւն սարեակ,
Բաղդի անուին տակ ոտնակոխ եղած.
Կեանքըդ տըրտմահոգ, սիրտդ էլ աւերակ,
Աղէտից շընչով հէգ՝ մըշտահալած.
Բայց դու մի՛ կարծեր, իմ անգին Նաննի,
Որ աշխարհս լինի այնքան անապատ.
Ուր դո՛ւ զոհդ անմեղ, դու՝ ո՛վ գեղանի,
Մընաս միշտ այդպէս տըխուր՝ յուսահատ:
Ո՛հ, չէ՛ իմ հոգեակ, ո՛հ փութա՛, արի՛,
Քեզ բա՛ց է իմ սիրտ՝ սիրովդ վիրաւոր.
Այնտեղ դու գըտնես հանգիստ՝ սէր բարի,
Ու կը մոռանաս վըշտերդ երկրաւոր:

1889

## ՈՒՍԱՆՈՂԻ ՆԱՄԱԿԸ

Պատուական հայրիկ, սիրելի մայրիկ,
Ատուած ձեզ կեանք տայ և հազար բարիք․
Ձեր ձեռքերն՝ աչեր սիրով կը պաչեմ,
Պանդըխտիս կարօտ արցունքով թըրջեմ:
Ա՛յ մի տարի կայ ճիշտ՝ որ հեռացայ,
Ձեր տեսութիւնից ես զըրկւեցայ․
Այլ չէ պատահել գէթ լոկ մի րոպէ՝
Որ ձեզ յիշելով իմ սիրտ չըտրոփէ:
Եւ մինթէ հնար է ինձ ձեզ մոռանալ․
Հոգիս չէ կարող երբէք ուրանալ
Այն խնամք որ տըւիք իմ թարմ հասակին,
Չինչ հիմտ պարտիզպան նորաբոյս ծաղկին:
Միթէ կարո՞ղ է օտար աշխարհքը՝
Անոյշ լինել քանց հայրենի յարկը․
Պանդըխտութեան մէջ մի մարդ աւելի ․
Սիրէ գնահատէ իւր տունն հայրենի:
Ձեզանից հեռու, փափագով՝ յուսով
Օրերն եմ թըւում իւր վայրկեաններով․
Եւ միշտ սպասում եմ անհամբերաբար՝
Որ արձակուրդի ժամանակը գար․
Յայնժամ կը սլանամ՝ կը փութամ ձեզ մօտ
Եւ որդիական առնեմ զիմ կարօտ:
Այժմ էլ ձեր գրութիւնք, այդ են ինձ համար
Ինչ որ ցօղն այգուն է բուսոց դալար,
Ինչ որ է լուսին՝ գիշերուան խաւար,
Ինչ որ անձրեւն է ծովին փըրփըրավար:
Վերջին նամակաւդ թըղթատնից առայ
Այն չոկ գումարն՝ որ ղըրկես իբր ընծայ․

Առանց հաշուելու՝ որ ամեն ամիս
Օգնում ես ուղղոյդ և ուսանողիս:
Իսկոյն այդ փողով գնեցի շատ բաներ,
Լաւ հեղինակաց ընտիր գրուածներ.
Առայ նոր շորեր, կօշիկ գալուստիկ.
Մի քանի օրից երբ գայ սուրբ զատիկ,
Պէտք է որ իմ մեծ ուսուցիչների
Գնամ այցելութեան քաղաքավարի:
Քո խորհրդին, հայր, միշտ հետեւած եմ.
Նախ որ վարպետներս յարգանօք սիրեմ.
Նըրանց շընորհիւ, քո օգնութիւնով
Երկրորդ դասատուն անցնեմ շատ շուտով:
Գիտացիր՝ հայրիկ, որ միանգամայն
Օրըս չեմ անցնիլ դատարկ ընդունայն.
Ահա այս կերպով շատ կարճ միջոցում
Բաւական առատ ըստացայ ուսում.
Եւ աշխատելով միշտ եւ անդադար,
Պարզեւներ առայ եւ գովեստ արդար.
Շատ ծանօթութիւն դիզեցի լեզուաց,
Զանազան տարրեր բարձր խիկ գիտութեանց:
Այլ ամենից շատ սիրեցի՝ զքարին
Սովորիլ՝ գործել անխտիր բոլորին.
Բարւոյն սէրն՝ Աստուած տայ հոգւոյն ընծայ,
Որ յերկրի երկնից համն առնէ՝ ցընծայ:
Արդեօք գալո՞ւ է այն օրն, ո՞վ հայր իմ,
Որ ուսմամբ ծեզ եւս օգտակար լինիմ...
Բայց որովհետեւ նա չէ աւարտած,
Առ այժմ զէթ այստեղ օգնեմ իմ եղբարց:
Մասնագիտութիւն, լեզուաց ուսումը,
Եւ այն օգտակար հըմտութիւնները՝
Որով զարգանամ ուսումնարանում,
Օգտակար լինին լոկ ապագայում.
Իսկ այժմ վըճռել եմ ներկայի համար՝

Ուղարկած փողիցդ խընայողաբար
Հաւաքել կազմել մի փոքրիկ գումար՝
Որբ եւ աղքատիկ դասընկերց համար.
Կարծեմ թէ քանկիս այս հաւաքածուն
Աւել օգուտ տայ այն խեղճ որբերուն,
Քան թէ մըտաւոր ուսումս անկատար՝
Որ առ ձեզ սիրոյս չէ դեռ յայտարար:
Դու էլ՝ իմս հայրիկ, թէ համակրում ես
Այս իմ սուրբ փափագ, անշուշտ կը շնորհես
Քեզանից մի նուէր խեղճ ուսանողին,
Դասընկերներին, որ ինձ պէս անման
Զունին հայր, եւ ոչ միջոց զարգացման:
Մնամ ձերդ անձնըւէր հարազատ որդի,
Տալով երախտեաց հայրբոյրն իմ սըրտի:

---

# ՈՒՂԵՐՁ

## ԱՌ ՅԱՐԳՈՅԱՊԱՏԻՒ ՀԱՐՑ

## ՈՒԽՏԻՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ

Բարւոյն՝ վսեմին՝ գեղադիտակ ճըշմարտին
Ծնայ սիրահար. եւ պատանի դեռ անմեղ,
Որոշեցի դըրդմանց լըսել իմ սըրտին՝
Ուր ըզգայի գեղոյն ճաշակն քաղցր՝ համեղ:
Բայց ո՛ տայր ինձ նոցա վայելքն հոգեսփոփ,
Ուսումն եւ մարզ, պատանեկիս սիրազգաց,
Որ մըտածկոտ եւ ակնապիշ, սիրտն ի՛ սրոփ,
Զմայլէր բնութեամբ՝ հառաչանօք հոգեսլաց:
Եւ խանդավառ իբրեւ մի հուր շըրջմոլիկ՝
Թափառէի տարտամ, անյոյս եւ անստոյգ.
Եւ ար արիւնս զինչ հողմակոծ ջուրց ալիք,
Յորում սիրտն իմ էր դիւրաբեկ մի մակոյկ:

*Սակայն կենացս ի՛ հորիզոն ւիզամած*
*Ցանկարծ փայլեց գերանըշան մի վեհ լոյս,*
*Որ անդրադարձ յ'արտօսր պշուցեալ իմ աչաց՝*
*Լըցուց յ'անձինս անսպառ հըրճուանք՝ խինդ եւ յոյս:*
*Եւ զըրկաբաց ես առ ի՛ լոյս դիմեցի,*
*Որյ կեդրոնն էր ճառագայթից՝ մի տաճար.*
*Դողդոջ ծեռօք դուռն հիւրասէր բաղխեցի,*
*Ուր իմաստնոց պատկառելի կայր կաճառ:*
*Այնտեղ զըտի հայրն Մըխիթար, Ալիշան,*
*Հոմերն հայկեան՝ Բագրատունին ոսկեգրիչ.*
*Անդ վեհն Հիւրմիւզ, Ամիւէրպոյ, հարք՝ որ նըշան*
*Ուսմանց ի՛ գլուխ կրէին ժըպտով յանկուցիչ:*
*Նոքա նախկին եղան քայլիցս առաջնորդ,*
*Նոցա զըրեանք հարթեցին ինձ մի շաւիղ.*
*Նոքա արին վսեմին՝ բարւոյն ինձ հաղորդ,*
*Փոյթ լարելով սըրտիս խանդին իմ տաւիղ:*
*Եւ յինչ զարմանք՝ թէ այժմ ես էլ նոյն քնարով*
*Ձիմ երախտիս երգեմ համեստ՝ սիրագոչ,*
*Օրհնեմ ըզծեզ՝ Հարք երկնառաքք, որ սիրով*
*Մըշակեցիք հոգւոյն իմ սէր ի՛ բողբոջ:*

---

## ԱՌ ՎԵՆԵՏԻԿ

(Բանայանգ)

*Թէ չի գըտնեւմ մի շոգենաւ, մակոյկ կամ* **տէկ**,
*Թեւեր առած սլանամ առ քեզ, ո՜վ* **Վենետէկ**.
*Սուրբ Ղազարու բաղխեմ վանքին դըրանցն ըզ***մուրճ**,
*Ազնիւ Հարց մօտ գըտնեմ հանգիստ, սընունդ եւ* **սուրճ**:
*Կոնտօլի մէջ սպիտակ հագուած ամրան* **հընդրէկ**՝
*Կը սողոսկիմ ջըրանցքներում իբրեւ* **ոընդրէկ**:
*Հառաչանաց թէ լոկ կամուրջն տեսնեմ* **ծիծաղ**,
*Անմեղ զոհերն յիշեմ, լակոյն տըրտմիմ,* **ատա՛ղ**:

# Ի ՍՐԲՈՒՀԻՆ ՍԱՆԴՈՒԽՏ

(Բռնայանգ)

Կործանեցիր սընապաշտին դու զ'դաւրնէր՝
Որոյ զոհին ոչխարն՝ այնչափ պարարտ գէր.
Եւ մըթութեան պատառելով զ'վարագոյր,
Փեսին երկնից հանդիսացար հարսն եւ քոյր:
Աստուածային խաղաղութեան դաշանց զ'նշան
Քոյ սուրբ արեամբըդ կընքեցիր, ո՛վ Սանդուխտ:
Մոռանալով զաշխարհս ունայն, քոյր եւ մայր,
Զ'երկնայինըն սիրեցիր դու միայն զ'Հայր:
Քոյ սուրբ արիւնն յաւիտենին հոսի ի' ծով,
Ց'ողի ի' յործանս գլորին աստեղք ի' հոլով:

* * *

(Բռնայանգ)

Ձեռքըս մի գրիչ, դէմս կաղամար,
Միտքըս խորհուրդք կամ պայծառ.
Հոգիս յերկինս սլանայ վըրեմ՝
Ցաստեղատունս երկնածեմ.
Կամիմ գըրել գեղեցկած
Տեսիլք բնութեան վեհ սքող.
Ես սըրտերու կ'ուզեմ այրել,
Գաղտնեաց կապերն պինդ քակել,
Որ անըզգամ չար բռնաւորին՝
Որ ոստոստէ իբրեւ լու,
Դաղըր լինել եղբօրն սուխ,
Զ'առնէ վըսեմն արծուոխ.
Եւ չի քընանէ Փիղիասայ Նիկար՝
Նման Ապեղին կօշկակար:

## ՆՈՒԱԳ

Յետ անձրեւոց աշնանային՝
Մինչդեռ պայծառ կապոյտ երկին,
Սիրեմ տեսնել զ'ամպոց կուտակ
Ի' հորիզոն դեղնազունակ:
Մրմխեանց վերայ թաւալազլոր,
Ոսկեծոցիկ եւ ծիւնաթոր,
Ալփւոյն սպասեն շիկակատար՝
Որ իրենց մէջ առնէ դադար:
Այնտեղ սլանան միշտ իմ երազք,
Հողմահալած իբրեւ նաւազք՝
Որ հանգըստեան խաղաղ մի ծոց
Գըտնեն խոնջեալ եւ ալէկոծ:
Իմ էլ մըտաց մըրըրկայոյզ,
Տագնապալից տըխուր հոգւոյս՝
Կարծեմ երբեմն գըտնել այնտեղ
Քաղցր ըսփոփանք՝ երկնային դեղ:
Երկար ատեն կըրթեալ յ'ապուշ,
Ի' հորիզոն թանձր լի' մըշուշ՝
Աչքերս սեւեռ ըննան անթարթ
Շոգեբըլուր ամպոց ի' քարդ,
Յորս լինծ թըւի երբեմն տեսնել
Ազնիւ գըլուխն քոյ ոսկեթել,
Զինչ արշալոյս մըթահալած՝
Արեւ ծագէ իմ մռայլ կենաց:



# ԱՌ ԱՍՏՈՒԱԾ

Մեղմ եւ դանդաղ իջնէ արեւ,
Շիկնէ ամպերն լերան վերեւ.
Եւ գըլխակոր մըտնէ յ'իւր մայր.
Ու մըթագնի երկնից կամար:
Ցայնժամ մեզ այց ելեն զուարթունք,
Սըփռին յ'երկինս շող եւ աստղունք:
Արեգական վառ խարուկին
Կարծես կայծերն նոքա լինին,
Որ յ'աւարտ իւր մեծ շըրջանին
Սլանան ի' բարդ վեր ի' յերկին.
Այնտեղ գամուած մնան խիտ առ խիտ,
Եւ ի' մըթան ունին ժըպիտ:
Իւրաքանչիւրն այլ նոցանից,
Որք մեզ թըւին լուսեղէն բիծ,
Տիեզերք են մեծ եւ լայնատարր.
Շըրջին յաւէրժ, չ'ունին դադար.
Եւ աղմուկովն իրենց գլորման՝
Երգ յօրինեն սուրբ՝ անսահման:
Ովսաննայ երգք, փառք եւ պատիւ
Աշխարհներից, յ'ոգեաց անթիւ՝
Առ Տէրն Աստուած, որ իւր ի' շուրջ
Ծողվէ զ'ոգիս սուրբ՝ աչալուրջ,
Եւ որք իբրեւ մի ճառագայթ՝
Բարիք տեղան ձեռօք անյայտ:
Աստուած է լոկ լիակատար
Սիրող, բարի, ուղիղ ւ'արդար.
Երեսն է զինչ լոյս արփենի,
Աստեղազարդ հանդերձ ունի.
Եւ մեր կենաց՝ սիրէ՝ ի' մութ
Ողորմութիւն շողալ եւ գութ:

Հաւատք եւ յոյս եւ սէր նորան
Մեր հոգւոց մէջ իբր ի՛ խորան՝
Ո՛հ թող հանգչին միշտ պատըսպար.
Նոքա տան մեզ իւր գաղափար.
Ցայսկոյս նեցուկ վըշտաց ծոցում,
Ցանկոյս շիրմին խինդ եւ ցընծում:
Թէ իմ կենաց եւս արեգակ
Աւարտէ փոյթ իւր շըրջանակ,
Հոգիս ի՛ քեզ Տեառն արարչիդ
Կամի սլանալ մաքուր՝ վըճիտ.
Ցայնժամ արդեօք քեզ սիրափար
Պիտ առնո՞ւ ինձ ոգեաց ի՛ պար:
Կարողանա՞մ պիտի արդեօք
Տեսնել ըզքեզ ըզմայլանօք,
Մինչդեռ ի՛ կնանս միշտ աստանօր
Որոնեցի քեզ անմոլոր,
Մինչ յ'արտօսր իմ ակնախըտիղ
Գըտայ սիրոյդ քոյ շառաւիղ:
Դու որ մըրջիւնն անգամ յ'երկիր
Լըցիր խնամօք միշտ կալեկիր,
Ծիծռան յ'այեր, կիտին ի՛ ծով
Կեանք տուիր եւ թռիչ քոյդ իսկ բոցով,
Ես՝ որ ըզքեզ իմ մէջս ըզգամ,
Չի տի կորչիմ զինչ անըզգամ:
Ես չեմ անբան. խելք՝ սէր ունիմ,
Եւ սէրս դո՛ւ ես ո՛վ Աստուած իմ.
Սիրովդ ես եւս աստուածանման
Ընդ քեզ ի՛ ծոց քոյ միանամ.
Չի միշտ նըմանն սիրէ զ'իւր նման,
Եւ իւր ըղձիցն հասնի լըրման:
Գիտեմ՝ որ այս աշխարհս է բով,
Ուր ի՛ փորձանս զըտուինք հոգւով.
Ցաւք եւ աղէտք, բիւր տառապանք

Թող տամ մարմնոյս մահու պատանք.
Բաւ է՝ հոգիս սիրէ ըզքեզ,
Վըշտերն անցնին երազի պէս:

---

1890

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ԱՅՑԵԼՈՒՍ

(Իրական պատահար)

Հազար ութ հարիւր ութսուն իննամին
Աշնան մի գիշեր՝ անձրեւոտ քամին
Հանելով ձայներ՝ շառաչ եւ յորձանք,
Կարծես աշխարհիս ըսպառնար փուլձանք:

Անկողնումս էի ընկողմանած լուռ.
Աչքերս գըրքի վրայ՝ բայց միտքով այլուր,
Որ յիշողութեան չահն առած ձեռին՝
Այցելէր կեանացս անցեալ օրերին:

Այլ ձայն մ'անսովոր, մի խուլ թըփթըփոց
Սենեկիս անկեան լուսամուտիցը զոց
Տեղիցս ինձ իսկոյն վեր թռուց ըշտապաւ,
Ըրթունքս կիսաբաց զարմանքից անբաւ:

Թըռչուն մ'է եղեր այս իմ այցելուն,
Թեւերն բաց խըփիկ, աչուկներն փայլուն,
Ապակւոյն յենած զ'իւր կուրծն ըսպիտակ,
Մըթան մէջ փայլուն՝ ձիւնեղէն զընտակ:

Անշուշտ ներս չ'առնելն էր մահուչափ մեղք.
Ուստի շուտ բացի պատուհանիս փեղկ.
Իսկոյն գըլխուս վրայ սկըսաւ ճախրելով
Սենեկիս շըրջանն անել ի' հոլով:

Մի ծիծեռնակ էր խեղճուկն այն թռչնիկ.
Օրն ի՛ բուն աշխատ թերեւս զինչ մրջնիկ,
Գար ինձնից խնդրել օթեւան՝ հանգիստ,
Բոյս տալով մրրկից եւ ցուրտ քամուց խիստ:

Այլ ես անկարող զսպել իմ հրճուանք,
Թոյլ տուի շրթանցս տալ նմա արձագանգ.
Եւ ասպընջական՝ հիւրիս մի վանդակ
Գոչեցի, բերեն՝ ի՛ մեծ աղաղակ:

Շուտ մի հատ բերին՝ հնացած ու թափուր,
Որ կատուի ճանկին լրբեւ ի՛ շամփուր
Անցած՝ զոհուած էր նորա հին բնակիչ,
Մի ծերուկ սարեակ անհոգ եւ անճիչ:

Նրա մէջ փակեցի հիւրն այս իմ նորեկ,
Չորս դին սփռելով մի քանի կորեկ.
Անշուշտ քիչ էլ ջուր փոքրիկ բաժակաւ,
Որ չ՚կարծէ թէ չոր մարդու ձեռք ինկաւ:

Եւ դրի վանդակն էլ անկողնոյս մօտ կախ,
Ուր խեղճն ոստնուլով շուարած կաղ ընդ կաղ,
Ապուշ կը նայէր այս նոր աշխարհին՝
Որ բնաւ նման չէր իւր լքած անտառին:

Երկուսս էլ գիշերն հսկեցինք անքուն՝
Աչքերս վանդակին յառած աննընկուն.
Սրտով գոհ էի՝ որ գէթ մի ծիծռան
Եղայ հիւրընկալ, տուի պատըսպարան:

Սիրով երախտեօք կ՚նայէի թռչնոյն,
Որ գուցէ կորցրած ձագերն եւ իւր բոյն,
Գիշերում այսքան մարդկանց մէջ անթիւ
Ինձ էր այցելու, ինձ տար այն պատիւ:

Պատուհաններից այնքան լուսաւոր
Հէնց իմս էր ընտրած կարծես կամաւոր,
Ինձ մօտ յուսալով գըտնել օթեւան,
Գուշակած գուցէ թէ լինիմ հաւան:

Արդեօք այն պահուն ո՞ւր են իւր ձագեր,
Ո՞ր ձեռք նախախնամ կու տայ նոցա կեր.
Գուցէ սպասումեն որ անցնի մըրրիկ,
Յետոյ գնան փընտռել կորուսեալն մարիկ:

Թըշուառն անընկեր եւ անկարեկից՝
Եւ ոչ իսկ մի հատ կերւաւ կորեկից.
Երկչոտ ինձ նայէր միշտ անհանդարտիկ,
Մինչ որ զ'արշալոյսն երգեց արտուտիկ:

Արդէն բաժանման ժամանակն էր մերձ.
Այգուն աւաչին շողերն ամպահերձ
Անձրեւի մարգրիտ կաթիլների մէջ՝
Ծառերում խոնաւ փայլում էին գէճ:

Դըռնակն էլ բացի հէգ բանտարգելոյս.
Ինքն իսկ ճըռուողէր տեսնելով ըզլոյս.
Վերստին որոնէր կեանքն իւր թափառիկ՝
Այր ազատութիւնն համարէր բարիք:

Նա ցանկար կըրկին սաւառնիլ թեւօք,
Փըրկել գերդաստանն բաղդից անողոք.
Նոր բոյն շինելով ի' մութ անտառակ,
Օրն ի' բուն երգել օրհնութեանց նըւագ:

Իւր սիրուն խարտեաշ աչացը կողքին
Դըրի գորովյս համբոյրն սըրտագին.
Գնաց ու սըլացաւ ձագուցն ի' խընդիր,
Ուրախ հընչելով կըտցին իւր փանդիռ:

Ո՜հ, բալին գործել՝ ըսփոփանք մ'է քաղցր.
Հոգին ազնուանայ զգացմամբ սուրբ եւ բարձր.
Մինչ իսկ մի թըռչնոյ լինել հիւրընկալ՝
Երջանկութիւն է մեծ՝ անակընկալ:

Հապա ո՜րքան մեծ խընդութիւն է՝ պարտք,
Մեր իսկ նըմանեաց՝ ցաւոց դատապարտք՝
Փութալ օգնութեան, լինել հիւրասէր,
Ժըպտով սըրբել արցունքն որ հոսէր:

Մխիթարեալ հոգւոյս աղօթքն ու հառաչ
Սլանան Աստուծոյ գահին ընդ առաջ՝
Արագ քանց ամեն ծիծառք եւ թըռչունք,
Փայլուն քանց ամեն լուսինք եւ աստղունք:

---

## ՈՏԻՑ ՈՂՈՐՄՈՒԹԻՒՆ

Ահա կ'ածեն վալս եւ քատրիլ թրուլալա.
Միմեանց զոյգ զոյգ ձն գըրկելով պարեցէք.
Ձեր ոտքերի շնորհիւ քաղցածն էլ չի լայ.
Նորա հացի խըմորն ոտքով շաղուեցէք:
Ջըմեռն հասաւ, տընանկն ածուխ՝ հաց ուզէ.
Ի՛ նպաստ նորա թէ մի գրական հանդէս տան,
Ոչ ոք չի գալ. հատոյթն էլ խեղճ ու նուազ է.
Պարահանդէս ամենքն ուրախ կը փութան:
Ներկայացում եթէ տըրուի ի թատեր՝
Ազգային կամ բարի գործի նպատակաւ,
Տոմսակն առնեն շատերն միմեանց լոկ խաթեր.
Թէ մանաւանդ վերջում լինի պար՝ կաքաւ:
Բայց էտ էլ միշտ չ'ունենար շատ յաճախորդ.
Չի էֆէնտիք կան եւ աղայք բաղդաւէգ,
Աթոռի վրայ դրած փորերնին լայնապորտ,
Սիրեն խաղալ վիսթ, պրիչ, լանսքնէ յ'ոսկւոյ դէզ:

Ունեալ մի մարդ դատախօսել թէ ցանկայ
Մի սրահի մէջ, հասոյթն էլ տալ աղքատին,
Բաց լիրանից՝ ողջ քաղաքն է բացակայ.
Խեղճը սպշած՝ նայի սրահին մերկ պատին:
Աստուծոյ փոխ կը տան, ասեն, գըթալով
Տնանկ աղքատին. բայց չեն ասել՝ գնա պարէ
Ու քէֆ արա ողորմութեանդ տոմսակով.
Յետոյ վեր կաց, Աստուծուց էլ վարձք պըտռէ:
Ի՞նչ օգուտ մեզ թէ մեր անձը կը տուժենք.
Սոված աղքատն արած քէֆի մի պատրուակ,
Սաղ գիշերը փոշոտ՝ քըրտնած՝ ցատկըտենք՝
Իբըր գթութեան ողորմելի կեղծ զուարակք:
Ինչո՞ւ առանց մի համոզման եւ բռնի՝
Ողորմութեան համար իսկ գնան ի՛ քօնսէր.
Մասնակցողներն՝ անայժան եւ արժանի՝
Ծափահարեն ազգականաց լոկ ի՛ սէր:
Կարծեմ լաւ է բարին գործել լուռ եւ լուրջ.
Թէ տասն րուբլի շնորհենք ի՛ սէր տընանկին,
Հարիւրներով գնում ենք զարդեր, ժանեակք, քուրջ,
Ողորմութիւնն դառնայ քէֆից աժնեգին:
Արդեօք մինչ ե՞րբ մարդիկ բիատէ վազ ի վազ
Դիմեն միայն խընճոյքների՝ պարերի,
Սըրտերն ու միտք պընդացըրած, վա՜յ մախլաս.
Ըզգացմունքը մնացել է լոկ ոտքերի:
Ես չ՚եմ ասում որ պարհանդէսք մնան փակուած.
Պէտք է մարդս քիչ քէֆ էլ անէ անհրաժեշտ.
Բայց խելքով էլ զքօսնունք ու տանք աղքատաց.
Ցատկըտելով ողորմիլն է սաստիկ հեշտ:
Պայծառափայլ տիկնայք, աղա՜յք փոքրոտիկ,
Հոգւով գթացէք ողորմելոյն մերկ՝ բոպիկ.
Բարի գործողն չի պըտուեր զարդ՝ քէֆ ու շիք.
Լաւ է գթած սիրտ՝ քան ճարպիկ ոտք, նոր կօշիկ:

## ԲԱՐԵՅԻՇԱՏԱԿ ԵՒ ԱՆՄՈՌԱՆԱԼԻ

## ԵՂԲՕՐ

### ՈՒՍՄԱՆՈՂ ԳԷՈՐԳ ՊԱՊՈՒԼԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

---

*« Յիշատակն արդարոց օրհնութեամբ եղիցի »։*

Բարիները շատ հեղ չեն ապրում երկար.
Աստուած որ սէր է, բարիք անսահման,
Իւր օժտած հոգւոց տայ մարմին տըկար՝
Որ շուտ իւր ծոցում գան ու միանան:

Կամք Տեառն է անշուշտ, որ սուրբ ծիլքերով
Զարդարուած հոգին՝ կըրքերն ոտքի տակ
Առնէ աշխարհում. եւ սիրախորով
Սիրտ մարդոյ մընայ չարին անգիտակ:

Աշխարհս է ոմանց քաւութեան մի տեղ,
Այլոց զարգացման կամ անձուկ վըշտաց.
Ուր մարմնոյ ցաւերն՝ հոգւոյն լինին դեղ,
Որ մաքրագործեալ սլանայ առ Աստուած:

Հազուագիւտ՝ ազնիւ եղբայրն իմ Պապուլ
Այդ հոգիներից էր հէնց անարատ,
Որ Տէրն յ՚այս աշխարհ տուեր էր ապրուլ՝
Որ ցաւոք հեծէ ու սիրոյ տայ խրատ,

Թէ ինչպէս պէտք է սիրել զ՚իւր ընկեր,
Մինչ ի՛ սէր նորան մնալ իսկ անօթի.
Մերկ խեղճի մարմնոյն, որին տար միշտ կեր,
Սիրապինդ թեւերն կազմելով զօտի:

Գիւղից ի՛ քաղաք, ճեմարան՝ դըպրոց,
Աղքատիկ ոտով ման գար ոգեւոր.
Իրանից տկարին՝ իւր գիրկն օրօրոց,
Գըթառատ նեցուկ եղբարց չըքաւոր:

Աղի արտասուաց միջից նա տեսնէր
Լոկ կարօտելոց վըշտերն ու հոգեր.
Հացն ընկերին տար, քրեն՝ փըշրանքներ.
Մահիճն իւր եղբօր, ինքն անքուն հըսկէր:

Ո՛հ բիւր օրհնութեամբ եղիցի յաւէտ
Արդարոյդ անմահ՝ բարի յիշատակ.
Անմահութիւն է քեզ մահն երկնաւէտ,
Ազատութեան դրօ՛շ՝ պատանքդ ըսպիտակ:

Նըման իւր անգին կենացն անձնըւէր՝
Շատ կարճ վայլեցի սէրն էլ հոգեբոյր:
Երկինք վաղ մահու վըճիռն էր տըւեր,
Երբ դեռ նոր տայի նորան իմ համբոյր:

Համբոյրին շուտով յանջորդեն արցունք,
Զոր գըրչիս իբրեւ գործածեմ թանաք.
Թող հոգին ցօղեն շիրմիդ եւ ծաղկունք,
Ուր բարին արդէն կանգնէ յաղթանակ:

---

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Խոնարհ ձեւերով՝ կեղծեալ սակայն լուրջ
Սըրտերից սըգոյ արիւն է վազում,
Որոյ գոյն կարմիր՝ աչքերի ի՛ շուրջ
Արտասուաց միջից է անդրադառնում:

Մեծ սրահին մէջ կայ մի դագաղ դըրած,
Ծածկեալ բեհեզօք հարուստ՝ Թանկագին.
Որդիք ւ՚ազգականք բոլոր սեւազգեաց՝
Լալով… ըսպասեն ընթերցման կտակին:

Բայց դեռ հասած չէ՛ այն րոպէն՞ աւա՜ղ.
Դեռ կտակակատարք պէտք է անեն նիստ.
Դեռ պիտի օրհնեն դիակն ի՚ դագաղ,
Օրն էլ երկու հեղ կայ հոգեհանգիստ:

Նորա անծնահան շահուն արդիւնք չէր
Սուրբ եկեղեցւոյն արած այն նուէր.
Որից խեղճ հոգին հիմակ ամաչէր,
Ցանկար որ գէթ այդ՝ կըտակից հանուէր:

Բայց ի՚ զո՛ւր ճըգնին հանգիստ տալ հոգւոյն
Թըշուառ մեծատան, որոյ այժմ հոգին
Թըռչտի դըստերաց եւ շուրջն իւր որդւոյն,
Սատիկ զըղջալով արած կըտակին:

Տեսնէ զ՚երգեցիկ խումբ մանկանց դըպիրք
Եւ շուրջառապատ մի տըգէտ տէրտէր,
Մխոքը բուրվառներ, ծեռքում ժամագիրք.
Ո՜հ նրա աղօթքից թող փըրկէ մեզ Տէր:

Եւ տագնապայոյզ՝ ուզում է խօսել,
Երեւիլ աչաց՝ վռընտել բոլորին.
Չի կարդար այնտեղ սըրտերն անարգել.
Բայց ափսո՛ս՝ չունէ՛ր այլ եւս ոյժ, մարմին:

Ժառանգորդք, հիւրերն դեռ ըսպասէին
Հոգեհանգըստի վախճանն եւ աւարտ,
Մինչ հանգուցելոյն տըրտմայոյզ հոգին
Սրահին մէջ աստ անդ խաղայր անհանդարտ:

Այլ յ՚աւետարան տէրտէրն երբ կարդար,
« Հատըն ցորենոյ թէ մեռանիցի՝
» Բազում արդիւնըս առնէ », ոսկեվառ
Բերրի հասկերով բարգաւաճեսցի,

Աւետարանին արդար այդ վճիռ
Լըսելով հոգին՝ տըխրեցաւ սաստիկ.
Ցանծն իւր գալարուեց իբրեւ մի կըճնիռ.
Զի չընչին ըզգաց իւր անձն ու պըղտիկ։
Պըղտիկ էր անշուշտ քան հատ ցորենոյ՝
Որոյ մեռեալ հատն մարդկանց տայ սընունդ,
Դաշտեր կը պըճնէ բերքն ամարայնոյ,
Ց՚երկինս վերամբարձ ցօղունն ոսկեգունդ։
Իսկ ինքն մեռնելով, մի հիւլէ չընչին
Ի՞նչ թողուց յ՚երկիր, եթէ ոչ կըռիւ
Փողի, նենգ, աւար. ուր միայն իւր մարմնին
Հանգըստեան մի փոս պարգեւեն հազիւ։

---

# ՀԱՏՈՒԾՈՒՄՆ

## Ա.

«Կորիր՝ ասումեմ՝ շուտով այստեղից. տանը չէ՛ աղէն.
» Նա չէ՛ կամենում որ քեզ նըմաններ գան իրեն նեղեն.
» Է՛յ հասկանո՞ւմես, յիմարի՛ գըլուխ. պիտի գնա՛ս թէ չէ »։
Այսպէս էր գոռում շըքեղակառոյց հարուստ մի մեծ տնի
Խիստ դըռնապանը, պէխերն մատանց մէջ ոլրած ու սրածայր,
Խոժոռ նայելով մի խեղճ ծերուկի, որ ձեռքում թըղթի
Մի կտոր կար ծալած. ողորմ, գըլխակոր, արցունքն աչքերում,
Խընդրէր որ թոյլ տան՝ աղերսանօք լուռ եւ պաղատագին,
Գոնեայ այս անգամ ի՛ սէր իւր կընոջ՝ աղջկանց նորատի՝
Ներկայանալ մեծ տիրոջ բարերար՝ հարուստ աղային.
Եւ անձամբ եթէ կարելի լինի, նորա բացատրել
Իւր վիշտն ու տագնապ, իւր աղետալի վիճակն տընային,
Եւ առաջարկել խընդիրքն իւր խոնարհ. այլ պէտք է շտապել,
Զի ահա աւա՛ղ՝ երկու օր լինի որ չոր հաց ուտեն.
Այդ էլ իսկ երբեմն մեծ դըժուարութեամբ կարող են ճարել.
Այսպէսով երկար ապրել անհնար է. աղջկունքն էլ արդէն

Սիրուն, կուսագեղ, չ'կարողացան դեռ ճարել մի պաշտօն
Նորավաճառաց պերճ խանութներում, մօտ կար կարողաց․
Ողջն էլ մերժելով՝ չըտուվին նոցա գործ. զի չունէին նոր
Գըլխարկ եւ կօշիկ, փողոց դուրս գալու գէթ բաճկոն համեստ.
Գոնէ կըրպակում, ուր յաճախորդաց պարտին երեւալ,
Անհրաժեշտ պէտք է արժան մի կտաւից հագնիլ գէթ սեւ զգեստ:
Այլ ինչ դիմանայ քաղցատանջ ծարաւ չորս էակների.
Կարասիքն ծախուած, շատ բան էլ կորցրին գրաւատան վըհում,
Ձի չ'կարողացան շահերն վըճարել վաշխառու հրէին.
Էլ այսուհետեւ ձեռքերնին ծալած՝ մահ են ըսպասում,
Թէ մի լաւ հարուստ իւր կուշտ սեղանի յ'անկեալ փըշրանաց
Գէթ մի չընչին մաս չի կամենայ տալ, որ մի ընտանիք
Ջ'կորչի սովամահ:
Այսպէս էր խորհում ծերունկն յուսահատ,
Որի կոր գըլուխն, թարշամած այտերն ու սպիտակ ալիք
Որոշ թուում էին վաթսուն տարիներ, քաղցի՝ աղիտից
Անազին դարեր: Այլ բազուկն ու ձեռք սեւացած եւ հաստ,
Տըժգոյն մորթին վրայ կապոյտ երակներ՝ ցըցուած ու բորբոք,
Անցեալում տոկուն իւր աշխատանաց տային յայտնի փաստ:

Բ

Այլ ափսո՜ս, անհետ եւ անպտուղ անցան օրերն բարեբաղդ,
Երբ թէպէտ խոնջեալ, սակայն դեռ առողջ՝ գործել կարող էր
Ծանր աշխատութեանց ճընշող բեռին տակ բազկօք մըշտայաղթ,
Ի՛ սէր իւր աղջկանց, աղքատիկ մութ յարկին փայլուն գոհարներ,
Իւր տըկար սըրտին բեռինք քաղցրագին՝ այլ յոյժ ծանրատար.
Որոց դեռ անբիծ ճակատում փայլի՝ զինչ առաւօտեան
Աստղն հորիզոնին՝ սուրբ համեստութեան նըշոյլն անխաւար.
Կամ իբր աղամանդ յ'աղբիւս տնանկութեան, ուր որ գերեզման
Գըտնեն շատերը, թէ փայլն այդ ական պահեն անապակ
Եւ պարծլին դըրանով յ'առաքինութիւն, տնանկ բայց անարատ:
Աղքատիկ ծընողքն շատ հեղ լուռ նային աղջըկերց վըրայ,

Գեղեցիկ՝ մատաղ, երկուսն էլ համեստ՝ յ'երկնից անվրդատ,
Մինչդեռ դառն արցունք ժայթքեն թըշուառաց խոնաւ աչքերից․
Իսկ մայրն ձեռնակից ծընրադրէ յ'աղօթս։

Այն երեկոյին

Նոյնպէս աղօթէր, երբ ծերուկ հայրը իւր յօդացաւով,
Տըկար ոտքերը գէշ պատըսպարուած մի կօշկի մէջ հին,
Ցեխում ըսպասէր՝ քամակը տըւած դրանց ընկուզենի․
Եւ պաղատագին նայելով կոպիտ դըռնապանին խրոխտ,
Գութ է ըսպասում այդ բիրտ անբանից, ում աչքերն հայլին
Լոկ գըրպաններ․ աթոռակին վրայ նըստած անդողդող,
Իւր հին ոսկեշերտ՝ ճարպից էլ կեղտած գտակով պարծենայ․
Եւ համազգեստին քըրտինքից կարմրած պղընձէ կոճակօք
Հարըստին հանդէպ ց'գետին խոնարհի, զ'աղքատն անխընայ
Դուրս վանէ դըռնից, տալով քամակին մի կից անողոք։
Այն պահուն եկաւ ուրիշ մի ծառայ՝ նայեց ծերունուն,
Զըննելով նորա շապիկն անփողպատ եւ հնացած բալթօն․
Յետոյ ականջից խօսքեր մըրմըռնջեց կոշտ դըռնապանին՝
Որոց մէջ լըսուէր խարդախ նենգութեան՝ ծաղրանաց մի [illegible]։
Ցայնժամ դըռնապանըն դարձաւ ծերունւոյն ասաց․ « կարող ես
» Տեսնել տան տիրոջ․ սըրբիր շուտ ոտքերդ, գըլխարկդ ի' ձեռին՝
» Հետեւիր սորան » յարեց՝ ցոյց տալով այնտեղ մի ծառայ․
Յետոյ ցածր ասաց․ « Քոյ շահից անշուշտ ինձ էլ կ'տաս բաժին »։

## Գ

Նախայարկում կար մի սենեակ գաւթին վրայ,
Ձեղխ եւ ռամիկ բիրտ ճաշակով զարդարուն․
Կային անդ խառն աններդաշնակ՝ սակայն թանկ
Պղընձէ՝ արծթէ ճոխ առարկայք, եւ փայլուն
Աշտանակներ եւ հայելիք․ այլ նրանց մօտ
Պատից կախուած պատկերների մի մեծ շարք,
Ո՛չ ձեռագործք, այլ իւղատիպ եւ արժան․
Ալպօմ գրեանք սեղանին վրայ ցիր անկարգ․

Եւ մի փոսկրեայ համրիչներով հաշուարան,
Եւ աթոռներ մետաքսապատ. մի կակուղ էլ բազկաթոռ
Կըրէր իր մէջ աղէն հանգիստ թէք ընկած՝
Իւր ատղնագործ խալաթին մէջ փառաւոր.
Որի դեղին ծոցերից մին ծեռքումը
Դարձնէր խաղար՝ գրասեղանին յանդիման:
Նոր ածիլուած, եւ դեռ ֆ֊յէ նուրբ փոշին
Երեսն ծածկէր. մազերն սանտրած աղչկանման.
Աչքերն փոքրիկ ու ներս քաշուած, ներ ճակատ.
Հազիւ թըւէր քառասուն տարուան. անառակ
Եւ շատ լըպիրշ էր նայուածքը, փրք՝ յամառ,
Ինչպէս լինի մի լաւ թամքած աւանակ…:
Այլ ո՛չ սակայն. մեղանչեցի՛. զի էշը
Չորքոտանեաց խոհեմագոյնն է՝ տոկուն.
Նա ունի կամք, համբերութիւն ու կորով,
Որ աշխատի՝ երբ դեռ մարդիկ լինին քուն.
Այնպիսիք՝ որ նորա կէսն իսկ չե՛ն արժեր.
Զի որքան նա օգտակար է մարդկերանց,
Նոյնքան մարդիկ վընասակար են միմեանց:
Իտալիայի գրականութեան իբրեւ զանձ
Նըկատում են այն հատորը, որ գրած է
Մի բանաստեղծ փիլիսոփայ խելացի.
Նա իրաւամբ գովում է էշն եւ նրա բնոյթ.
Հէնց այդ գըրքով անմահացաւ Կուէրացցի:

Դ.

Սակայն թողնենք էշն օգտաւէտ,
Սենեակ մըտնենք ծերուկին հետ,
Ուր որ հէզը դողայ մարմնով
Ու չըգիտէր թէ ո՛ր ոտքով
Կոխէ գորգերն այն թանկահիւս:
Աչքերն շիկնած իբրեւ աղիս,

Շընչառութիւնն ծանր ու նեղուած,
Ծընկերը թոյլ. այլ աչքերն թաց՝
Մտածելով միշտ տան մէջ քաղցած
Դարձին սպասող կնոջ՝ զաւակաց.
Քաշալերուեց. եւ ձեռքին թուղթ,
Իւր վերջին յոյս՝ խընդիրքն եւ ուխտ,
Ծունելով մատուց մեծատունին:
Մատնիներով նոխ թանկագին
Գընձած ձեռքը կարկառեց նրան.
Ակնոցն ոսկի քըթին էլ վրան,
Աչքերումն իւր աղետաբեր՝
Աղերսանաց թըղթին նայէր:
Սենեկին մէջ տիրէր լռութիւն.
Ժամացոյցին լոկ խուլ բախիւն
Միայն լըսուէր՝ դաշն սնողք,
Որի սլաքըն լուրջ եւ անհոգ՝
Մաս մաս չափէր մեր ժամանակ,
Թիք թաք,
Թիք թաք,
Եւ շարունակ
Միօրինակ.
Հարստին համար սաստիկ արագ,
Այլ աղքատին թըւի դանդաղ
Եւ յամրաքայլ ինչպէս դագաղ:

Ե

Ցետ կարդալուց՝ թուղթը ձեռքում դեռ բըռնած,
Կատուի աչքերն դարձուց աղան ծերունւոյն.
Ու կիսաժպիտ եւ յօնքերը ամփոփած՝
Զըննեց նորան, ասելով՝ թէ բնաւ ոչինչ
Չէ հասկանում նախ դրանից. փո՞ղ է ուզում
Թէ մի պաշտօն, յայտնի չէ՛... յետոյ յարեց.

Ես ի՞նչ անեմ. միթէ քի՞չ կան փողոցում
Կամ տների մէջ քաղցածն աղքատ, ծեր եւ տկար.
Իրանք չեն խօ՛ պատճառ նոցա տնանկութեան.
Թ՚այդ բոլորին գթալ ողորմիլ հարկ լինի,
Ծայրը չի գալ, հարուստներն էլ աղքատանան:
Ասաց՝ պըրծաւ. հանեց ծոցից մի սիկառ,
Հավանայի ընտիր տեսակ, հանդարտիկ
Վառեց. ոտքերն միմեանց վըրայ դընելով՝
Ծըխումէր, երբ խեղճըն թափեց վերջին ճիգ,
Ու հառաչեց. յետոյ ձեռքերն միացրած՝
Մընչեց. « գթացէ՛ք գէթ աղջըկանցս՝ որք ի սով
» Մեռնին հիւծին. նոցա համար գալիս եմ,
» Նոցա համար է որ սպասեմ օրերով՝
» Ձեր գութն հայցել ի՛ սէր երկնից »:
« Լըռէ՛ մարդ.
» Կարծումես որ հաւատամ այդ բոլորին »,
Ասաց աղէն. դէմքն էլ փոխուեց յ՚ակընթարթ.
Ցետոյ յարեց. « թէ ունիս կին եւ աղջկունք,
» Ինչո՞ւ նոքա չ՚եկան անձամբ. եւ ինձ մօտ
» Քեզ են ղըրկում… այդպէս տըկար եւ հիւանդ
» Հայրերնին դուրս փողոց ձըգել… մե՛ծ ամօթ »…
Հիմա՛կ պարոնն հասկանումէր՝ թէ ինչո՛ւ
Դըռնապանը նորան ներս է ընդուներ,
Հաւատարիմ արժանաւոր իւր ծառան՝
Որ կը յարգէ տիրոջ կըրքերն ու շահեր:

## Զ

Ցուսաղողդոջ անկար թըշուառն ակնապիշ
Կանգնած նայէր, պաղ պաղ քըրտինք թափելով.
Արիւնն ի՛ գլուխ կը բարձրանար. եւ ըզգաց
Որ անըզգամն չ՚ունէր ոչ գութ՝ ո՛չ գորով.
Հայհոյում էր մինչեւ անգամ երեսին.

Զ'էր հաւատում… եւ որոշեց շուտ խոյս տալ
Այդ սենեկից, ուր նախատինք միայն գտաւ.
Ուր կարող էր յանկարծ իրան մոռանալ…
    Մինչդեռ աղէն հանդարտօրէն քըմծիծաղ
Շարժեց գլուխը. ու դառնալով խորամանկ
Ուղղեց նորան շնացող եւ շուայտ մի նայուածք,
Ասելով. «Թէ այդ վիճակից փոյթ անվտանգ
» Փըրկուիլ ուզէք, մի հնարք գըտէք… գոնէ ես…»
    Նա կանգ առաւ. այլ ծերուկին անձկօրէն՝
Ի' նշոյլ յուսոյ՝ սիրտն ըսկըսեց բաբախել.
Զի չէր կարող դեռ ըմբըռնել՝ անօրէն
Այդ մեծատան մըտադրութիւնն ու խօսքեր.
Եւ ըսպասէր անդարձ վըճռոյն, շընչասպառ
Զինչ մահապարտ դատաւորաց ատենում:
    Բայց նա հարցուց ծիծաղելով լըկտաբար.
«Ասա, գոնեայ գեղեցի՞կ են աղջիկներդ»…
Աչք ծերունւոյն սքօղեց արեան մըթութիւն,
Եւ խրոխտաձայն ապըստամբեց իւր հոգին.
Այն հինաւուրց անխախտ՝ համեստ հեզութիւն:
Մահապարտու նայեց մէկ հեղ իւր չորս դին.
Առիւծի նման կատաղաբար յարձկելով՝
Սեղմեց վըզիցն անըզգամին, յափշտակեց
Մի աշտանակ պըղընձաձոյլ, որ ուժով
Եւ սաստկաբար գըլուխն ի' վայր սոսկալի
Պիտի իջնէր հարուած մահու ահագին…
    Սակայն յանկարծ արձանացաւ լուռ շուարած.
Երկիւղն՝ հաւատք, որ ունէր առ Տէրն Աստուած,
Որ պատուիրէր չըսպանանել զ'ընկերին,
Վայրկենական մոլեգնութեանն յաղթեցին.
Կասեցաւ ձեռքն, եւ եղկելոյն տարաբաղդ
Գըլորուեց գետին նիհար մարմին վըշտայաղթ…
Մինչ դողդոջուն ձայնով աղան կը պոռար՝
Իւր ծառայից ոստիկանաց ձայն կուտար:…

Ներողամիտ խեղճ քրիստոնեայն յուսահատ
Երբ մի պահից բացաւ աչքերն մըթապատ,
Տեսաւ աւա՜ղ, որ դըրել էին զինքն ի՛ բանտ,
Ձեռքն ու ոտքեր մարդասպանաց պէս կաշկանդ:

---

## ԱՌ ԼԱԼԱՅԵԱՆՑ

Ուրաքանչիւր եղանակ
Ունի իւր երգն ու թըռչնակ.
Գարնան երգէ սոխակիկ,
Ամառն ճընճղոյն ճըռուողիկ:

Տանեաց վըրայ կամ ծխանի
Կը շինեն խեղճ բոյն յարդի,
Կամ վազվըզեն մէջ օդին՝
Գեղգեղելով խընդագին:

Այլ ձըմեռն ալ երբ կը գայ,
Երգիչներն հետ կ'ունենայ,
Որ դէս ու դէն երգելով
Ապրին անհոգ՝ անվըրդով:

Թատրոնի մէջ տան ténor,
Հագած պոչով պինճակներ.
Կինն հովահար կը բըռնէ,
Այլ տըղամարդք մի bémol:

Սոխակին պէս նըրանք եւս
Ունին զոյգ ոտք, այլ ոչ թեւս.
Բոյն էլ ունին, սակայն լոկ
Սիրոյ բոյն է հրաբորբոք:

Այդ թըռչնոց մին ես ճանչնամ,
Ինձ մօտիկ է, բարեկամ.
Նա սոխակ չէ թեւ չունի,
Լալայեան գողտր ձայն ունի:

---

## ՍԻՐԵԼԻՈՅ ԳԵՐԵԶՄԱՆԱՔԱՐԻՆ ՄՕՏ

Երբոր աստղի նըման աչքերն կիսաբաց
Գիշեր մահուն ծածկէր ի՛ թեւս իւր խաւար,
Երբ նա զեփռւէր անոյշ հոգին երկնասլաց,
Իմ յուսահատ աղաղակը վըշտահար
Արդեօք լինի՞ նա լըսած:

Երկրիս հաճոյք, իմ վարդագոյն երազներ
Նորա անշունչ դիակի մօտ երբ կորցրի,
Նա երբ հետը նրանց գերեզման կը տանէր,
Մինակ մնացած՝ ես ինձ շատ հեղ հարցըրի,
Արդեօք նա ինձ կը տեսնէ՞ր:

Տեսնէ՞ արդեօք այն թըշուառն որ այժըմ գայ
Սիրամըրմունջ շիրմին ի՚ ստուեր մըտածկոտ,
Ցնծել անցեալն, երջանկութիւնն բացակայ,
Ուր դեռ նեցուկ գըտնէ կենացն իւր անձկոտ.
Բայց արդեօք այդ նա կը զգա՞յ:

---

1891

## ՓՈՒՇՆ ԵՒ ՎԱՐԴ

Որ մի յանկարծուստ մեծ կըռիւ ծագեց
Վարդին եւ փշին մէջ սաստիկ կատաղի,
Երբ փուշն աղջըկան մատերը խայթեց՝
Կորզելով յաչացն արտասուք աղի:

« Ա՛յ դու անողորմ, վարդն ասաց փըշին,
Փափուկ մարմնոյս մէջ խըրած անողոք՝
Սիրողիս խայթես մարմինն ու կաշին.

Քեզ դէմ առ Աստուած պէտք է տամ բողոք:
« Ես որ դըշխոյն եմ ծաղկանց համօրէն,
Գեղոյս հաւասար չունի մի ծաղիկ,
Զիս որ նըշանակ սիրոյ համարեն,
Քու ինձ կից բուսնիլդ չունի միտք՝ տեղիք:

« Սրահից՝ խորանաց զարդն եմ դողդոջուն.
Անոյշ հոտ սըփռեմ ցօղին ի՚ կաթուած՝
Որ այգըն թափէ ծոցումս պաղպաջուն,
Ցայնժամ դու զինուխս տալ ցաւ ու խայթուած:

«Երբոր սիրատրոփ լանջաց մէջ թաքուն՝
Բուրեմ ըղձայլմամբ, եւ կամ գեղեցկին
Հերաց մէջ փայլիմ, դու իմ վրայ կանգուն
Ցըցուած ինձ նեղես ընդդէմ իմ կամքին :

«Օ՜ն բաւական է, գնա՛ ուր կամենաս,
Դու ինձ համաձայն եղած չե՛ս ընկեր.
Քոյ ներկայութիւն վիշտ է ինձ ու վնաս,
Եւ գեղեցկութեանս է հակապատկեր:

«Գնա՛ դու եւ ապրէ՛ մացառաց ի՚ գիրկ՝
Վայրի մօրենւոյն տընկոց հետ ցամաք.
Նոցա մէջ գըտնես քեզ արժան մի դիրք,
Ու քեզնից փըրկուի ցօղնիս նուրբ քամակ»:

Այսպէս էր զոչում վարդն ունայնամիտ.
Զայրոյթէն ծոցն էլ փափուկ ու խոնաւ
Շիկնած էր՝ իբրեւ դըշխոյն քըղամիդ,
Ցօղն իսկ զովացնել կարող չէր զայն բնաւ:

Փուշն համեստօրէն լըսէր լըռելեայն
Այս գանգատանաց գոռոզ ձայնն որոտ.
Այլ նրան ճանչնալով անխելք եւ ունայն,
Իւր կարեկցութեան լոկ դատէր կարօտ:

Բայց երբ իմացաւ որ նա կամենայ
Բաժանուիլ իրմէ, վանել զինքն հեռու,
Այսքան դարերի ընկերն՝ անխընայ
Մոռնալ ու կոխել ի՚ մէջ ցեխերու...

Զայրոյթով արդար բարկացաւ ուժգին,
Ցըցուեցաւ փայլուն զինչ պողովատիկ.
Սակայն զըսպելով անձն իւր, մեղմագին
Խօսեց շեշտելով եւ հատիկ հատիկ:

«Ո՛վ ինքնահաւան դու յիմա՛ր բամբիշ,
Որ այդպէս ի՚ զո՛ւր կը բառնաս գանգատ
Նրա դէմ՝ որ յերկինս փընտռենք ակնապիշ,
Ոյր գործոց յանդուգն լինիս քըննադատ:

« Ի՞նչ գեղեցկութիւնդ կու տայ քեզ օգուտ.
Ի՞նչ փոյթ իսկ թէ ծոցդ անոյշ կը հոտի.
Բուրում քանդեն քեզ հովն ու կարկուտ,
Բուրումդ էլ քեզ հետ անցնի սընոտի:

« Իրաւ՝ միշտ կանայք մատամբք կակուղիկ
Քաղեն քեզ՝ եփեն անոյշ օշարակ.
Բայց անդ եւս մարդուն երբ մըտնես աղիք,
Հանգիստ չես կենար կըրքովդ անառակ:

« Չի քեզ ուտողին փորիկն իբր անձաւ՝
Քամիով լեցուի, գոռայ եւ սուրայ.
Ցած ասեմ, հոտդ էլ կու տայ գըլխու ցաւ.
Բայց թողնենք անոյշդ, խօսինք արդ միր վրայ:

« Տարերաց դէմ էլ կարող չես տոկալ.
Ոյժ՝ համբերութիւն ու կորով չունիս.
Իմ պաշտօնս էր քեզ պաշտպանել հոգալ,
Հետըդ բաժնելով պատառներն բերնիս:

« Այն ոյժն որ առնեմ շարունակ հողէն,
Ամբարէի ց'արդ միայն քեզ համար.
Իսկ դու զիս ցողնիդ իսկ տըկար կողէն
Կը վըռընտես հա՜ այսպէս վատաբար...

« Դու որ իմ հիւրն ես մէկ երկու ամիս,
Այլ ես ամա՜ռ ձմեռ ապրիմ եւ մընամ.
Դու գարնան կու գաս՝ տէր դառնաս տունիս,
Եւ ես չեմ թողած իմ հիւրն անխընամ:

« Ամառ եւ աշուն, մինչ իսկ ի՛ ձըմրան՝
Քեզ ըսպասելով տանիմ ձիւնն ու բուք.
Ցայնժամ երբ լըսուին երգերն ծիծեռան,
Մի եւ նոյնն եմ ես՝ երբ դու ծլիս փափուկ:

« Արդ դու լա՜ւ լըսէ զ'այս ճըշմարտութիւն.
Առանց ինձ քոյ բոյրն, գոյներդ երփներանգ
Եւ այդ նազելի նուրբ գեղեցկութիւն՝
Սին են, անցաւոր, խաբկան ու պատրանք:

«Ես եմ յատկութեանցդ պահապանն ու գինն,
Այս քոյ չի հանուած փուշին իմ շամփուր․
Հակառակ ինձ նման մտերիմ ծերունին
Անմարսելի՛ է քոյ կերած ապուր:

«Երամակք թռչնոց միշտ պատկառ երկչոտ՝
Կը փախչին հեռու, չեն թառիր քու վրադ,
Երբոր կը տեսնեն փշեկիս իմ նոթ՝
Որի վրայ թափես հայհոյանք՝ արատ:

«Ես ինքս իսկ շատ հեռ անխոհեմ անձին
Խայթեմ ձեռքն՝ որ քեզ կորզել յանդըգնի․
Եւ այդ արգելքն է իմ լուրջ հարուածին՝
Որով դու կը թուլիս աւել գեղանի:

«Գիտցի՛ր, աշխարհումս արգելքն է շատ հեռ
Որ շատ պարզ բաներ սիրուն կարծեցնէ.
Սիրեցեալ կանայք կան, թէպէտ տըգեղ,
Որք թուին արգելքով զուարթունք ի՛ ծընէ:

«Նոքա էլ քեզ նման սին են եւ գողտրիկ․
Կու փայլին սակաւ, այլ թառամին փոյթ․
Փուշեր էլ ունին, եղբարք, ծնողք, էրիկ,
Սիրահարաց դէմ խոչընդոտից կոյտ:

«Խոչընդոտն հէնց իսկ համն է վայելքին․
Առանց նորան՝ ո՛հ քաղցրութիւն չի կայ․
Սիրուած բաներուն նա դնէ արժէք՝ գին,
Երբ իւնքն ըստ ինքեան շատ դառըն կու գայ:

«Որքան մեծ լինին վըշտերն ու խայթոց,
Նոյնքան մարդս անեն ճարպիկ ու խոհուն
Ընդդէմ ցանկութեանց, որք իբրեւ խարտոց՝
Բըզըկտեն թելեր կենաց կարճ պահուն:

«Դու լաւ ըմբըռնէ՝ ընկե՛ր վաղանցուկ,
Թէ հազար հաճոյք չե՛ն արժեր մի վիշտ.
Եւ այս՝ փոքըրկանցդ յայտնէ դու ծածուկ,
Որք այժմ դեռ նընջեն կոկոնին ի՛ գիշտ:

« Բայց չ'ասես նորանց որ դու ապերախտ
Վանես քեզանից մըտերիմդ քոյ փուշ.
Լաւ է թող չ'գիտնան անձիդ բիծն ու աղտ,
Ու քեզ անուանեն անմիտ եւ ապուշ »:

Դեռ չէր աւարտած, յանկարծ թաթառ մի
Հարաւից գոռաց՝ շանթալից սաստիկ.
Կորզեց թերթքն ու բոյր վարդին մի առ մի,
Անհետ անելով զայն վատաբաստիկ.

Այլ փուշն ու տատասկ կը մնան յարատեւ
Աշխարհիս վերայ, կեանք ունին երկար.
Որոց խայթն ու վէրք թէ միշտ չեն թեթեւ,
Այլ բազմաց լինին դեղ եւ օգտակար:

---

## Ի ԾՆՈՒՆԴ ՓՐԿՉԻՆ

Ի շարս անթիւ աստեղաց մէջ մեր երկիր՝
Իբրեւ զանգուած բիւր մոլութեանց եւ ախտից՝
Դառնար գլորէր. եւ իւր միակ կարեկիր
Արեգակն էր՝ որ կը տար քիչ իւր լոյսից:

Քանզի ձըմեռն էլ տիրումէր ձիւնաթոր,
Սըրտերի նման՝ երկիրն էր պինդ ու սառած.
Հիւսիսամռունջ գիշերն բազմեալ յ'իւր աթոռ,
Հասած էր թուում այս աշխարհին կատարած:

Ի՛ շունչ մեղաց թաւալէր մեր մոլորակ,
Ուր յուսահատ ողբոց, կոծին մէջ, լալեաց՝
Լըսուէին մերթ ծիծաղք շուայտ եւ անառակ
Ոգւոյն չարի, հալածողին միշտ բարեաց:

Լուռ է Սինայն ձիւնակատար երկնհաղորդ,
Ծածկէ Աստուած Իսրայէլին զ'իւր երես.
Չիք տապանակ, ոչ մարգարէն այն միջնորդ
Լեառն ի՛ կատար՝ երկնապատգամ շանթակէզ:

Գըթաց բարին, նըկատելով յ'իւր բարձանց
Մեղաց մահուն զոհք մանգաղին սայրասուր.
Իջուց որդին յ'արգանդ կուսին ի' թափանց,
Արշաւաց մօտ ծնանիլ յ'անարգ ի' մըսուր:

Անդ նոր արքայն, նորածին սէրն ի' սիրոյ,
Ցըրտասարսուռ դողայր մօրկան լուր գըրկում.
Մարդն ի' հանոյս չըզգաց հըրաշքն ի' մըսրոյ,
Մինչ պաքք ոգեաց օրհնէին զայն երկընքում:

Զուարթնոց լուսոյ երեւեցաւ մի բանակ՝
Որ զխաւար ծեւացուց աստղ անդ յ'երկինս.
Որոյ ի' տես մոգն եւ արքայն երկըրպագ
Գան ի' հեւուստ, նուիրել ընծայս թանկագինս:

Արշաւն անգամ ողջակէզ կուոց եւ դիոց՝
Գառն Աստուծոյ մօտ ծընըրադիր խոնարհած,
Երախտապարտ՝ շընչովն մանկան անդամոց
Տար ջերմութիւն թագաւորին այդ հովուաց:

Խափշիկ արքայն երեսանկեալ խըշտւոյն մերձ,
Երկըրպագէր պատկառանօք ըզմայլմամբ,
Նըկատելով Տեառըն սիրոյ այդ ուղերձ՝
Որ ծառն կենաց պիտ' ոռոգէր իւր արեամբ:

Այլ Իսրայէլ ի' գիրկ կրից եւ հեշտութեանց՝
Բացակայ մնաց աստուածաբնակ այդ մըսրէն.
Զ'խմանալով թէ ինչպիսի՜ անգին գանձ՝
Թեւօք սիրոյ իջեալ յ'երկնից՝ գար այսրէն:

Վասն այսորիկ արտօսր հոսեց աչքերէն
Մանկան վըսեմ. զուցէ անդ իսկ նախ գոչէր՝
« Հա՜յր իմ, ո՜վ հայր, անցո՜ բաժակս զ'այս յ'ինէն ».
Մարմնոյն բողոք. զի հոգին վեհ ու քաջ էր:

Եւ այն արցունք՝ իբրեւ ասուպ լուսագէս՝
Սլացաւ ի' թռիչ յ'ոտս արարչին գահոյից.
Աստուածորդոյն վիշտն առաջին սիրակէզ
Դըղըրդեց համայն զ'աստեղատուն՝ հիմք երկնից:

Վըշտից քըրտանց մէջ երբ մրափէր մեր փըրկիչ,
Երեւեցաւ նորա տեսիլք երկնային.
Ամպ լուսափայլ, որ պարզուելով քիչ առ քիչ՝
Հըրեղինաց զոյգ մի իւր մօտն իջնային:

Մին փըշեղէն պըսակ ունէր ի՛ ձեռին,
Միւսն էլ խաչ մի արփիափայլ շողերով.
Եւ ձայնեցին. «Այս է պատուէրն հօր վերին,
Տանջուիլ մեռնիլ ի՛ սէր մարդկան ի՛ զորով»:

«Ո՛հ, մի՛ փըրկիչդ, մի՛ տըրտմիր այդ մարմնով հէզ,
Որ լոկ ցաւոց ն'աղիտից է հնթակայ.
Փութա ցըրուել մըռայլն հոգւոց, մեղաց մէզ,
Քեզ յաղթանակ՝ մարդկութեան սուրբ ապագայ:

«Գուցէ ոմանք լինին քեզ դէմ ապերախտ.
Այլ ի՛ տիեզերս կը փայլիս դու նման արփւոյն՝
Որ սեաւ ամպոց տակ իսկ մնայ միշտ ջինջ՝ անաղտ.
Միթէ խաւարն ընդպատաւոր չէ՞ լուսոյն:

«Այլ թէ կամիս ցաւերդ ու վիշտ նիւթական
Ցաղթահարել, տանջանս մարմնոյն, սիրէ՛ զթա՛.
Թէ զ'մահ կոխել սէրն ու զութ չ'են բաւական,
Առ խաչն ու պսակ, ե՛լ բարձրացիր Գողգոթա»:

---

## ԵՐԵՍՓՈԽԱՆ

Քու վսեմութեան զովեստն՝ համբաւ,
Տըզրուկի նման խայթող՝ կըպչուն,
Իմ ականջին ալ քիչ կըպաւ.
Հետաքըրքիր եղայ սաստիկ՝
Գէթ մի անգամ տեսնել ըզքեզ
Բարեկամացդ ի՛ նեղ շըրջան,
Ուր պաշտըւիս իբր աստուած կէս.
Զի աչ ու ձախ տալով կաշառ՝

Կ'ըսեն՝ եղար երեսփոխան,
  Որ քու անձիդ օգտին համար
Ազգին շահերն ըներս կոխան:
  Երեսդ փոխել յաջողեցար
Ըստացած նոր տխտղոսիդ տակ.
  Բայց ով ներքինդ լաւ ճանաչեց՝
Երեսիդ տալ ուզէր ապտակ:
  Եւ վերջապէս յաջողեցայ
Ներկայ գտնուիլ մի ժողովի,
  Ուր փըստութիւնք արտադրէին
Իբրեւ դըդումք ի' կողովի.
  Մէկ մ'ալ նայիս, դո՛ւ աններման՝
Քու պաշտպանած խեղճ գաւառիդ
  Ի' նպաստ՝ ըսիր ճառ մ'ակնոցով.
Այդ պատրուակ էր քեզ նոր աւիթ՝
  Ցոյց տալ ազգին սէրն որ չ'ունիս:
Եւ յիրաւի առջի անգամ
  Երբ տեսայ քեզ եւ լըսեցի
Խօսքերդ անմիտ՝ կակազ կարկամ,
  Տեսայ հասակդ բարձր ու գիրուկ,
Խեցգետնի նման երեսդ կարմիր,
  Հագուստներուդ ալ հիացայ՝
Որ կը ծեւէ՝ կ'ըսեն՝ միշտ Միր:
  Հապա մօրուքդ սուր՝ հաստաւմազ,
Միջին դարու նման դիւցազնի,
  Զ'որ թէ ուզէ մին շօշափել՝
Անշուշտ կարծէ լեռան ոզնի:
  Իսկ հապա այդ երկայն ու նեղ
Կարմիր ֆէսիդ ծուռ խողովակ,
  Որ կարծես թէ տոպրակն ըլլար
Տարտամ մըտաց քոյ նըշաւակ.
  Որու տակէն շուրջանակի
Ցոյց տաս մի մատ ճերմակ թաքեայ,
  Որ պաշտօնն է զով պահպանել

Ծարպոտ գըլուխդ այդ դուզնաքեայ:
Իսկ փիւսկիւլիդ ինչ խօսք չի կայ,
Որ տատանող գերթ ճօճանակ՝
Ափեղցըփեղ փուճ խօսքերուդ
Զափէ միջոցն ու ժամանակ:
Է՜յ, չէ՛, շիտակն շատ գըզուեցայ
Ի՛ տես դէմքիդ միրք գեղանի,
Ուր աչք դիտող խիկոյն կարդայ
Թէ արժան ես կախաղանի:
Չ՚գիտեմ ինչո՞ւ չես ձեռնադըրուիր
Աւագ տէրտէր կամ քահանայ,
Ազգին օգուտ տալու փափագդ
Ընտրելով քեզ լաւ [illegible].
Եւ դու տափակ՝ նուրբ կեղծաւոր,
Կը ձեւացնես համեստ մի վարք,
Մինչ որ շատերն յափըշտակուած՝
Անուանեն քեզ հայոց պատրիարք.
Արդէն այժմ իսկ ըզքեզ պատուեմ՝
Որովհետեւ ունիս ըստակ.
Վըսեմափայլ տան ածական՝
Որոյ փայլը չէ բնաւ յըստակ:
Խըմբագիրներն վըսեմաշուք
Կը կոչեն քեզ, եւ խել մ՚աղուոր
Միամիտ կանանց սըրտին մաշուք
Տաս կերպերովդ այդ կեղծաւոր:
Այդ է պատճառն գուցէ՝ որ ճոխ
Կը հագուիս միշտ ոտից ցըգլուխ,
Ու գէթ դըրսէն շըլացնելով,
Չի ճանչցուիս ուշ կամ կանուխ:
Քեզ խորհուրդ տամ. հարուստ ես շատ,
Եւ դըռնէն ալ առնես ռոճիկ.
Վարձքով բըռնէ որ փայլեցնեն
Քեզ Ղալաթիոյ յոյն լուստրօճիք:
Չի միշտ պատիւ փընտռես, փայլ, շահ.

Գործերդ լաւ են ի՛ Մանչէսթէր,
Սակայն կըրկին շահու համար՝
Ազգային սէր կը հաչես դեռ:
Քանի որ դու պատիւ առնես,
Շըքանշաններ, խմթիազ, պալա,
Արժանաւոր հայուն՝ աւա՛ղ՝
Հոգին արցունք միշտ պիտի լայ:
Այլ ազգային ժողովի մէջ
Թէ օր մ'ընտրին քեզ նախագահ,
Ո՛հ, այն պահուն մե՛րն է կարգը
Վրադ խնդալու՝ քա՛հ, քա՛հ, քա՛հ, քա՛հ.
Վա՜յ նախագահ:

---

## ԳԱՅԼԵՐ

Մինակ երբեմն, մերթ ընկերօք խըմբովին՝
Քաղցած գայլը ման գայ ի՛ ծոր եւ ի՛ դաշտ.
Երկինք՝ երկիր նային նորա միշտ անհաշտ,
Ըստիպուած է դէմ գնալ ցըրտին եւ հովին:

Խեղճ շինականն գալով հեռուից անձապար,
Սպիտակ հովտում գայլերն տեսնէ երբ ցըրուած՝
Իբրեւ տառերն մահուան վըճռոյն իւր կենաց,
Խաչակընքէ՝ ձեռքն առնելով զ'իւր տապար:

Այլ երբեմն էլ տապար, կապար կամ դանակ
Անկարող են ջարդել ցըրուել այն վոհմակ,
Որ պատէ խիտ ձիերն ու մարդ եւ սայլակ,
Հալեցնելով արեամբ ըզձիւնն անգունակ:

Ցըրտասարսուռ գայլից չոկատ եւ անգեղ՝
Ց'ամայութեան թագաւորեն անաչառ.
Սարսափն ու մահ եւ քաղցն ունին անդ կաճառ,
Դաշտք ապաստան երրորդութեան այս տըգեղ:

Բայց գիշատիչն անբան է ու անխորհուրդ,
Նա բընազդմամբ ապրի իբրեւ անասուն.
Չի զգար երկիւղն մեր սարսափ ու վայնասուն,
Ցʼամենայնի փընտռէ քաղցին իւր յագուրդ:

Այլ քաղքի մէջ մի թէ քի՞չ կան վայրենի
Անգութ գազանք՝ որք մարդու կրեն կերպարան.
Երբ դեռ ձագ են՝ յաճախումեն կըրթարան,
Ունենալով դաստիարակ՝ տուն հայրենի:

Բայց այդ բոլորն արմատախիլ չեն աներ
Դոցա խայթիչ ճիրանն, ակռան ու որկոր.
Նըմանն իրենց կը յօշոտեն մինչ յʼոսկոր,
Լարելով կեղծ սիրոյ՝ ժըպտի դարաններ:

Ոʼհ դոցանից պարտինք փախչիլ շատ հեռու.
Գայլն յայտնուի մի միայն ձըմեռ ժամանակ.
Այլ քաղքիններն չունին որոշ եղանակ,
Ամառ եւ ձմեռ գիշատիչ են սըրտերու:

Օʼն գիւղացիդ, ճամբէդ դու յետ մի մընար,
Քըշէ՛ ձիերդ, ջահ մʼէլ վառէ լուսաւոր.
Գազանք լոյսին մօտենալու չեն սովոր,
Գոնէ նոցա վանելու կայ մի հընար:

Եւ քաղաքում ջանա չի մնալ շատ ատեն.
Ոչ ջահդ եւ ո՛չ ձիերդ կու տան քեզ նըպաստ.
Անդ անտառի գայլին գըտնես գէշ պատուաստ,
Զʼոր արտաքուստ երբեմն ազնիւ կը դատեն:

Այդ գաղտնիքն է նախախնամ մեծ արարչին.
Եւ ստոյգ անշուշտ որ ամեն մարդ յʼիւր անձին
Մի կենդանւոյ բնոյթըն կըրէ առանձին.
Մարդն ու անբան միշտ միմեանց հետ մարտընչին:

Այդ կըռւոյն մէջ մարդն է ինքնին պարտական
Ջանքանն ընկճել՝ որ ի՛ կորուստ զինք քարշէ.
Այդ պատերազմ թէ եւ ամբողջ կեանք մ՚արժէ,
Բայց հոգեպէս երջանիկ է, յաղթական:

---

## ԱՌ ՖԱՆԹԱԶԻՕ

Դեռ նորափթիթ մատղաշ է քո կենաց ծառ՝
Որ ծըլի պերճ արեգական տակ պայծառ.
Ծիլն ու ծաղկունք պըճնեն ճիւղերն լերկ ու գօս.
Դեռ դառնութիւն չ՚պեղած ճակտիդ վըր ակօս,
Կենաց վըշտերն չըգծած այտիդ թոռում կընճիռ,
Ինչո՞ւ այնքան դու յուսահատ տաս վըճիռ՝
Դատելով կեանքն անգութ երկնից պատուհաս:
Ըստոյգ է որ ամեն պըտուղ դեռ տըհաս՝
Ի սկըզբան միշտ դառնահամ է եւ կըծու.
Բայց ջերմ արփին՝ ծառոց ծաղկանց տարփածու՝
Նորա ծոցում թափէ համեղ սիւք մ՚անոյշ,
Յօղն և անձրև տան արմատին կորով՝ ոյժ:
Նոյնպէս երբեմն լինին կեանքեր, ոյց ըսկիզբ
Պաշարած է աղետից հոծ մի պարիսպ.
Այլ նախախնամ ձեռք մի յանկարծ կու քանդէ
Զայդ ի՛ հիմանց, փըրկէ զհոգին ի՛ բանտէ,
Որ ուռճանայ՝ յուսով սիրով լիուլի՝
Այն ձեռաց տակ, որ չ՚է մեզ բնաւ քըննելի.
Այլ բնազդմամբ իսկ ըստէպ նորա շառաւիղ
Տեսնենք որոշ խաւար կենաց ի՛ շաւիղ.
Ոյր յանդիման մեր հոգին լուրջ ծընրադիր՝
Կը թըրթըռայ երախտանուագ զինչ փանդիռ.
Որոյ անուն մեր շըրթներից սըլանայ
Ց՚երկրէ յ՚երկինս յ՚օրհնութիւն և յ՚ովսաննայ:
Այն ձեռք կըրկին ըփռէ համայն ի՛ տիեզեր՝

Ինչպէս աւազն յ'ովկիանու ծովեզեր,
Նոյնպէս զաստեղս երկնից ի' ծոց անթափանց,
Իբրեւ կաթիլք արարչագործ իւր քրտանց:
Նա՛ է որ տայ կեանք, մահ, արցունք, ժպիտ, կարօտ,
Տանթն ի' մըրրիկ, ծիւնն ի' լերինս, ցօղն յ'արօտ.
Վազրին ճիրան, առիւծին բաշ և երախ,
Արծուին մագիլ, այլ սոխակին երգ ուրախ:
Գայլն ընդ ոչխար ապրին կենաց ի կըրկէս,
Մին զիշատիչ միւսն էլ խոնարհ ողջակէզ.
Եւ գլխիկոր թուին լինիլ յանձնառու
Այդ վճռակաց՝ շատ հակառակ իրարու.
Մարդկանց նըման չունին զանգատ ու բողոք
Այդ իմաստուն արարչին դէմ անողոք,
Որ նախախնամ իմաստութեամբն անյատակ՝
Ցամենայնի տըրած է պատճառ, ընպատակ.
Ամենայն ինչ համեմատ է, ներդաշնակ.
Չարին յորդոր, բարւոյն էլ տայ մըրցանակ:
    Հաւատա՛ ինձ դու՝ խիս քերթող պատանի,
Քեզ այս հաւատք անհրաժեշտ է պիտանի.
Թո՛ղ յոռետես հեղինակացդ բարբանջանք,
Որք վաստակի՝ լոկ փայլելու ունին ջանք:
Ցամաք Զօլան ընտած շքեղ ի' [illegible],
Միլիոն ֆրանքով մարդկութեան ողբն յօրինէ.
Թէպէտ ճանչնայ կենաց աղէտքն ու պատրանք,
Այլ սփոփելու արդեօք կու տա՞յ զէթ մի ֆրանք:
Տօբէնհաուէր նոյնպէս հանգիստ՝ հարուստ՝ կուշտ,
Նիւթապաշտի թըխած փորին լայն փափուկ,
Աղքատութեան ցաւերն քըննէ մի առ մի,
Ողբալով զայն իբր անհաստատւած Նըեմի.
Ողորմութիւն թէ խնդրէին մի [illegible],
Բարկանալով գուցէ դըռնէն դուրս պըրծէր:
Թերեւս դոքա իրենց կեանքից էլ գոհ չեն,
Հըրճուանք փընտռեն լոկ նուէթէն և ոչընչէն:

Ո՜հ առածն այս շատ արդար է ճըշմարիտ՝
Թէ չըգիտե՛նք գնահատել մեր մարգարիտ.
Հարուստն ամե՛ն կը դըժգոհի իւր գանգատ,
Միշտ աւելին ունենալով իւր նըկատ:
Այլ նիւթապէս բարեբաստիկն հեշտասէր
Երբե՛ք անձնիւր երջանկաց կարգ չի դասեր.
Զըրկեալն է որ տընանկութեան մէջ խոնարհ՝
Ապրի առողջ, տանի վըշտերն անհընար.
Զի մարմնական վայելքներում չէ՛ փըտած
Նորա հոգին. ուրա՛խ ունէ զ՚իւր չոր հաց.
Եւ կարծես թէ սըրտին իւր խոր նա կը զգայ
Մի նոր կենաց երջանկութիւն յետագայ:
Ես որ գըրեմ քեզ այս տողեր, սիրելի՛ս,
Տարուբերեալ եմ դառն ցաւոց մութ յ՚ալիս.
Թերեւս շա՛տ քիչ կարողացայ գնահատել
Շնորհքն Աստուծոյ, բարւոյն իւր սէր նիւթն առել.
Իւր պարգեւաց դէմ լինելով ապերախտ՝
Ժառանգեցի գուցէ ցաւերս՝ վէրքն և ախտ:
Զի ստէպ վէրքերն մեր ձեռօք է որ մեզ տանք,
Եւ տեսնելով մարմնոյն կըրից բիւր վըտանգ՝
Ազա՛տ կամօք կը դիմենք յայն ի կորուստ.
Բայց փըրկարար ձեռքն այն օրհնեալ՝ յանկարծո՛ւստ
Մեզ օգնութեան հասնի կըրկին և սաստէ.
Ա՛յդ իսկ նորա անբաւ սիրոյն մեծ փաստ է:
Անշուշտ երբեմն տկար մահացու իբրև մարդ՝
Կը վըհատինք թէ գան ցաւերն բարդ ի բարդ.
Մանաւանդ որ գործելով շատ ճիգ ու ջանք՝
Չի մեղմանար տաղտուկ վէրքիդ ցաւ՝ տանջանք:
Երբոր բըժիշկն յանկարծ ասէ, ո՛վ անբաղդ,
Ըզգոյշ կեցի՛ր, կոկորդիդ ցաւն է գընտախտ.
Ու տուն դառնամ գլուխըս կախած մելամաղձ,
Ո՛չ քուն ունիմ, ո՛չ իսկ ծարաւ եւ ո՛չ քաղց:
Սենեկիս մէջ ցաւօք՝ դեղօք պարունակ,

Խուճուճըդ մահու պաշարեն զիս շարունակ:
Երևակայութ քանիցս անգամ ինձ թուէր՝
Թէ սառն պատանք պատած մարմնոյս փաթաթուէր.
Մահն էլ գամէր գամերն կաղնեայ դագաղին՝
Ծանգոտ ու կոր պողպատովն իր մանգաղին:
Սեւ պատկերներ յաջորդէին մէն միւսին.
Այն գային յուղարկաւորքն հանդիսին,
Սև ուրուականք՝ սև զգեստներով, սեւ մօրուք,
Սեւ մաշտոցներ ձեռքերնուն մէջ հաստ գիրուկ.
Սեւ շալվարով ու սեւ ցուպով մի ժամկոչ,
Սեւ շապիկով տիրացուներ խառնագոչ՝
Որ լըփըռտեն նընջեցելոց շարական:
Ի կենդանեաց ով որ լսէ այդ կական,
Հանգուցելոյն բիւր երանի տայ գուցէ,
Այր ականջներն յաւէտ ընդ միշտ էլ գոց է:
Սոքա են որ մահն ահռելի մեզ տան ցոյց,
Մինչ բուն կենաց ջահն մեզ վառէ հոգելոյց:
Առարկայից մէջ խընկահոտ գորշ ու մռայլ՝
Միայն մի բան աչքի զարնէ լուսափայլ.
Թաւիշէ մեծ ծածկոյթին վրայ կարկըտած՝
Լուսափողփող և հանդարտիկ տարածուած՝
Մետաքսեղէն ճերմակ նուէրից լայն մի խաչ,
Որ մեղմ ծալքով մարմինս ծածկէ սիրահաճ:
Ես ընդ նըմին դաշտն հետեւիմ մեռելոց,
Ուր համառօտ մըռմըռան աղօթք ու հոգւոց.
Պահպանիչն էլ սովորական անհրաժեշտ
Փըսփսայ տէրտէրն բերնէ թափուկ եւ անշեշտ.
Անշուշտ մէկն էլ պիտի գըտնուի անպատճառ՝
Փըղծկեալ ձայնով խօսելու վրաս փոքրիկ ճառ.
Ցետ այնորիկ յուղարկաւորք թաղումիս
Ցըրուին անշուշտ՝ տալով հոգւոյս ողորմիս:
Ինձ հետ թաղուին այն տեղ հոգւոյս թանկագին
Ձաւակներն էլ, Համլէթ, Ուրիէլ, Լիր և Քին.

Դո՛ւ Ալփասլան՝ որ սիրեցի՛ր զՕթէլլօ,
Մի՛ թողուր գէթ զայն գերեզման խոթելոյ:
Եւ երբ այսպէս սեւեռ աչօք մըտախոհ
Նըստիմ տըխուր, հոգիս դատարկ և դըժգոհ,
Մանաւանդ երբ կը մըտածեմ ի սարսափ,
Անստուգութեան մէջ մոլորեալ ի խարխափ,
Թէ ձայնս արդեօք կը ստանա՞յ իւր փայլ նախկին,
Արդարն Աստուած պիտի ներէ՞ իմ մեղքին,
Թէ ց'մահ լռութեան դատապարտուած, բեմից զուրկ,
Ի խաւարի պիտ՝ շիջանին իմ աւուրք...
Եւ կենդանւոյն մեռնիլ է դա. բիւր աւա՜ղ:
Ո՜հ սպառնալից գաղափարն այս մռա՛յլ ճիւա՜ղ՝
Իւր ճիրանաց մէջ տըրորէ զիմ ուղեղ,
Պատելով զայն դըժոխային զինչ բաղեղ:
Իսկ այս բոլոր արհաւրաց մէջ սըրտայոյզ՝
Զի մնացի՛ ես անմըխիթար և անյոյս,
Հաւատալով՝ յուսալով միշտ առ Աստուած,
Զի մեր հոգեաց պալասամն է իւր հարուած:
Անձնասպանի ոճիրն անհեղ հրէշաւոր՝
Անվայել է խոհուն անձին բանաւոր.
Սակայն մարդիկ շատ հեղ լինին անըզգամք,
Երբ սըրբագրել ձըգտին Տիրոջ գործն ու կամք:
Եւ մեր դարուն քաղցկե՛ղն է այս հոգեկան.
Միշտ յըղփացեալ հեշտութեանց մէջ նիւթական,
Պաշտել՝ քըննել՝ սիրել և զգալ միայն զնիւթ,
Եւ դորանում լոկ որոնել կենաց հիւթ:
Եւ երբ ցամքի նորա աղբիւրն ի՛ պատիր,
Մին թէ չ'հասնի անուան փառաց շըքադիր,
Կամ խաղամոլն թէ բաղդն իրմէ տայ փախուստ,
Վաճառականն թէ ունենայ մեծ կորուստ,
Ուրիշին էլ մարմինն արդէն տկար գըձուծ՝
Ի լպիրշ հաճոյս փըտի ոսկերց մինչ ի ծուծ,
Թըշուառ հոգին կեանքից ըզգայ թոյն զըզուանք,

Զի չափազանց վայլեց նրաթին մեղկ զգուանք։
Կամ սիրահարք, որոց համար սիրոյ նետ
Մոռացեր է երջանկութիւնն բերել հետ,
Որք բուռն ՚ի սէր միմեանցից են զուրկ յաւերժ։
Եւ այս բոլորն յուսահատ և կենսամերժ,
Մին անձնասպան՝ թօթափէ իւր կենաց բեռն․
Մարդասպանի ոմանք գործեն ժանտ զեղեռն․
Շատն էլ զԱստուած յանդըգնաբար ուրանան,
Զայն անարդար կոչելու չափ կուրանան։
Այլ զիտնականք չեն տեսներ լոյսն իմաստուն,
Մոլորութեան մէջ մնան յամառ հաստատուն․
Ահա՛ դարուս յառաջադէմ իմաստակ
Միգն ու չանքեր, արդիւնքն՝ ունում ու վաստակ․
Որոյ զաւակն ես դու նոյնպէս, բանաստե՛ղծ,
Նըկատելով կեանքն անպիտան ու տըխեղծ․
Այն դարում՝ որ հոգւոց պատնէշ փոս փորէ,
Ցուսահատին՝ զանձն սպաննել յորդորէ։
Ես որ պաշտեմ քոյ այդ տաղանդն անխըտիր,
Անկարող եմ բացատրելու սա խընդիր՝
Թ՛ ինչո՛ւ թողած Պղատոնն ասեմ կամ Սոկրատ,
Մե՛ծ քիրթողներն և ըզհանճարս հոգեխրատ,
Կը հետեւիս տաղանդաւոր հիւանդաց,
Ինքնահաւան պատգամախօս ւմեծամտաց։
Թէպէտ ասի թէ զաւակն ես այս դարուս,
Սակայն կեանքում անփորձ՝ անմեղ, դեռ անուս․
Եւ նախ առաջ զաւակն ես այն արարչին,
Որից միայն զըգուանք տեսար առաջին,
Երբ լուսաւոր մատամբ ճակտիդ լինք դըրաւ՝
Առհաւատչեայ իւր մեծ սիրոյն լբրեւ գրաւ,
Բանաստեղծի կընիքն ու դրոշմ, հոգւոյ խանդ,
Որ մեղմանան կեանքիդ ցաւերն՝ վիշտն ու բանդ․
Որոյ դեռ նոր ծագում է չինչ արշալոյս,
Հետ բերելով մեծ ապագայ՝ խոստում՝ յոյս։

Ինչո՞ւ հոգւոյդ ծաղիկն ուզես դու փակել
Ի գերեզման, և այդտեղ զայդ մըշակել
Նեխեալ մարմնոց շամանդաղովն փոսփորի՝
Իբր անպիտան մի կտոր փըտած ոսկորի․
Նա որ այգուն մարգարտացնէ ծարաւի
Հովտաց քամուն, ճառագայթիցն արեւի,
Բանաստեղծիդ ինչո՞ւ սուրբ հրով երկնառաք՝
Լուսաւորել զալիհաւորս և զաւերակ․
Ինչո՞ւ կախել քընարդ ի մի չոր կըմախք,
Որ օրհասին ի շունչ միայն նուագէ տաղք:
Օ՛ն իմ եղբայր, ո՛ն սիրելիդ իմ քերթող,
Մըռայլ տըխուր մըտքերդ փութով ի բա՛ց թող.
Սիրով բնութեան լեցո՛ւր սըրտին քոյ զանօթ,
Եւ զԱստուածոյն՝ որ լոկ բարեօքն է ծանօթ:
Ապաշաւի վայր մ՚է երկիրս, հատուցմանց․
Մէկին տայ ժպիտ, միւսին հաճոյք, ցաւ ոմանց․
Տըղմոտ կեղտոտ է կեանքն իրօք նիւթական,
Ուր կորչի մարդ անշուշտ վաղ կամ անագան,
Եթէ երբեմն հառաչանօք ինչպէս Եունկ՝
Չի բարձրացնէ աչքերն յերկինս, քաղցրախունկ
Ծաղկին նման՝ որ թէպէտ աղբի մէջ թաղուած՝
Կենաց արփւոյն բանայ զիւր ծոց ցօղամած․
Կամ որդան պէս՝ որ սողալով միշտ յերկրի,
Զոր տերևօք աշխատութեան մէջ բերկրի,
Լուռ անտըրտունջ կը հիւսէ իւր խիտ շերամ․
Ցանկարծ օր մ՚ալ թեւեր առած, խուռներամ
Սլանայ յերկինս՝ ուր չկան պատնէշք՝ ցաւ ու խրամ:



# ԱՐՁԱԳԱՆԳ ՄԻ

*Ռուսաց սուրբ Նիկողայոսեան հիւանդանոցից*
*ի՛ Նշան թաղ*

Տեսա՞ծ էք այդ պատկառելին,
Կուրծքին կախած՝ մեր փարելին
Տեառն՝ Յիսուսի նշան խաչին,
Որ ի՛ համբոյր խոնարհ մատչին:

Տեսա՞ք ազնիւն այն հայրապետ՝
Սպիտակ ալեօք փայլուն վէտ վէտ,
Իշխանութեան մատնին յ՚աջին՝
Որով օրհնել մեզ կը հաճի:

Եւ իմաստուն իւր աչաց մէջ
Մարգարիտներն փայլուն ու գէջ,
Զորս արտադրէրն լոկ մեր աղէտ՝
Որ իւր ի՛ տես խոյս տայ անհետ:

Երբ ես տեսի, նա չէր բազմած
Ց՚աթոռի ճոխ եւ ոսկեմած.
Նա զաւազան չունէր ձեռին՝
Որով հովուէ իւր հօտերին:

Պարզ էր՝ անզարդ. վերարկուն թուխ
Ծածկէր զ՚մարմին. սեւ գտակ ի՛ գլուխ,
Որոնք տային մի նոր փայլ՝ ցայտ
Դիմաց ժըպտին իւր սըրտայայտ:

Համակրանաց իբրեւ նշան,
Իւր պարտիզից յասմիկ՝ շուշան
Քաղած՝ նուիրէր ինձ երեք փունջ,
Իւր խօսքերուն պէս քաղցրաշունչ:

Եկաւ բազմեց մահճիս ի՛ սնար.
Եւ շըրթունք իւր՝ օրհնութեանց քնար՝
Մըրմընջէին բանք աղօթից
Եւ ըսփոփանք հոգւոյս թախծ:

Կարծես ՚ինք չէր կաթողիկոս,
Իններորդըն (1) չ՚էր նա Պետրոս.
Այլ հայր, եղբայր, ընկեր մի պարզ,
Ապրող հեզիկ բարւոյն ի՛ մարզ:

Խորհած էի մերթ միայնիկ՝
Թ՚ինչո՞ւ արդեօք « գերերջանիկ »
Տան ածական տեառն հոգեւոր.
Երջանկութիւնն չէ՛ երկրաւոր,

Չէ՛ յաշխարհի. ուր զինչ պաշար՝
Կենաց անձուկ տան մեզ ի՛ նժար
Բիւր տառապանս, վըշտեր, տաղտուկ,
Ոյց բոլորն էլ մեզ են յատուկ:

Բայց հիւանդիս երբ ընդ յարկաւ
Արհիապատիւն խոնարհ եկաւ,
Իմ տառապանք ցաւերն ու խիթ՝
Այցելութեանն արած առիթ,

Որպէս զի իւր ներկայութեամբ
Վանէ ճակտէս տըխրութեան զ՚ամպ,
Ինքն իսկ արդէն զալուց ուրախ՝
Ժըպտէր դիմօք լուրջ եւ խաղաղ,

Համոզուեցայ այն ժամանակ,
Որ նա հոգի բարենպատակ՝
Սիրէ գործել միայն բարիք,
Եւ հոգւով է գերերջանիկ:

1. Պիտի լինի իններորդըն:

Անտարակոյս երջանիկ է
Նա՝ ոյր սիրտը բաղանիք է
Նմանին սիրով ջերմ՝ կարեկից,
Ուր լուայ նորա արատն ու բիծ:

Երջանիկ է, գերերջանիկ
Այնպիսին՝ որ խեղճ ընտանիք,
Ծերն եւ զ՚անկար խնամէ հոգայ,
Մենք չըյայտնած՝ ցաւերն ըզգայ:

Եւ Քրիստոսի խաչին ի՚ ստուեր
Մեր խաչերուն քակէ զ՚բեւեռ,
Որ մեզ փըրկէ. այլ խաչին բեռ
Մեզ հետ տանի յ՚երկինս ի՚ վեր:

---

## ԻՐԱԿԱՆ ՄԻ ԴԷՊՔ

Մեր հիւանդատուն ունի մի մատուռ՝
Շըքեղակառոյց քանդակօք պըճնած.
Երէկ ման գալիս բաց գըտայ ըզդուռ,
Մօտն էլ խուռն մարդիկ՝ դէմքով տըխրազգած:

Ներս մըտայ դանդաղ, ուր որ մի քանի
Լոյսեր վառէին՝ դեղին դալկահար.
Մէջտեղն կար դագաղ ի պատուանդանի,
Իբրեւ փոքր խեցի՝ որ պահէ գոհար:

Իրօք գոհար մի կար անդ եւս ամփոփ,
Մի ռուս գործատեար դըստրիկը մատաղ,
Կապտաչուփ՝ քընքոյշ եւ ոսկեխոպոպ,
Որի մերձ տէրտէրն երգէր մահու տաղ:

Դագաղին ծածկոյթն վեր առած մի պահ,
Թարմ ծաղկունք դըրին շուրջ ծաղկին թարշամ,
Որ փոս փորողին երկթէ ժանգոտ բահ
Շուտ պիտի տապլէր ի՛ մռայլ յարաժամ:

Ծընողքն աչքերից առատ դառնագին
Հանէին արցունք. այլ յուղարկաւորք
Փորից ի՛ ճակատ խաչեր ահագին՝
Ու յ՚աջից էլ ձախ, վարժ ձեւով ողորկ.

Պատկառ նայելով պատում նըկարուած
Շիջեալ եւ կարմրայտ մի գէր ծերունի,
Որ պատկերացնէր իբր թէ... Հայրն Աստուած.
Պատկեր տգիտութեան կղերի եւ ռամկի:

Զոյգ վարձկան կառքեր կանգնէին պատրաստ.
Առաջնում տէրտէրն դըրին ընդ դագաղին,
Ծնողքն էլ երկրորդում, վըշտից հեզ ու նուաստ,
Գերեզմանատան բռնեցին զ՚ուղին:

Այնտեղ դիմելով հարց արի մէկին՝
Թ՚ի՞նչ հիւանդութեամբ մեռաւ նորատին:
Ասաց. « Նա զոհն է սիրած բէբէքին.
» Նա բնաւ չ՚էր հիւանդ, ո՜հ ո՛չ, կոսբոտին:

» Նա շատ էր սիրում այդ փուճ խաղալիք.
» Ցանկարծ մէկ օր էլ ինկաւ իւր ձեռքից
» Ի՛ ծով, երբ յուզուած էին գորշ ալիք.
» Տղէն էլ ջուր նետուեց նորա քամակից:

» Իսկոյն սուզեցայ ծովերի յ՚անդունդ.
» Բարեկամք նոյնպէս շատ որոնեցին.
» Մէկ օրից յետ գտանք մըսեղէն մի գունտ
» Տախտակաց տակէն նաւամատոյցին:

» Մանկան դիակն էր, սառն ու կապտագոյն.
» Գիրկ եւ քարացեալ մատամբք՝ կուրծքին պինդ
» Դեռ սեղմէր բէբէքն իւր սիրելագոյն.
» Այլ նուաղ աչաց մէջ կարծես կար մի խինդ »:..

Երբ նա վերջացուց իւր ընկարագիր,
Սըրբեց մի արցունք որ աչքից ժայթքէր.
Հեռացայ նրանից սըրտով կարեկիր,
Մըտքումս տոգորուած փոքրիկին պատկեր:

Ի՛նչ անշուք թաղում, յ՚ակամայս խորհիմ,
Այս սիրոյ քընքոյշ աննշմուէր հերոսին.
Որքան չար անզգամք հանգչին ի՛ շիրիմ,
Այլ առաքինիք ի՛ խոր մութ փոսին:

## ԱՌ ՍՏԵՓԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

Ո՜հ, որքան քաղցր է լըքեալ հիւանդին,
Որ ամբողջ մի ձմեռ ցաւօք տառապէր
Միշտ աչքին առաջ մահու գերանդին,
Երբ շընչէ հովիկն ջերմ գարնանաբեր:
Երբոր հալածեալ Փետըրվարն ու Մարտ՝
Իրենց հետ տանին խռնաւ ցուրտն՝ անձրեւք,
Մինչ կանանչ զորգեր զգենուն դաշտն եւ արտ՝
Ջորս արդէն զըգուէ զեփիւռին զուարթ հեւք:
Մինչ բեռնաւորին ճիւղերն զօս ու լերկ,
Հիւթով բարգաւաճ՝ տան տերեւ ու ծիլ,
Դեռ յարատեւեն իմ ցաւերն ու վէրք,
Ու քնութեան նայած ըսկսիմ նախանձիլ:
Եկ հասիր շուտով, անձկալիդ Ապրիլ.
Քեզ համար ծառերն թարմ ծաղկունք բուսնին.
Ես էլ ՚նդ բոլորին կեանք կ՚ուզեմ, ապրի՛լ,
Երբ ծագ սոխակներն նոր երգեր ուսնին:

Այլ դու, ծիծեռնակդ իմ գարնանաւէտ,
Սլացի՛ր ու գընա մօտ իմ Ստեփանին,
Մի թեթեւ գրիչ տուր քոյ նախշուն թեւէդ
Որ չ'ուշացընէ զ'իւր նամականին:
Ողջոյններս էլ ա՛ռ սըրտիս խորերէն,
Ու փութա տանիլ նորան հաղորդել.
Եւ այս խօսքերս էլ ճըռուողէ իրեն,
Իւր ուսին վըրայ թառած դիւրընտել.
Ո՛հ, ո՛րքան բուռն է առ քեզ իմ կարօտ.
Միշտ ծարաւն ըզգամ գրոյդ եւ քոյ դիմաց,
Ինչպէս որ ցօղին պապակի արօտ
Եւ արեգական շողին գըգուանաց:
Թէ մօտս լինէիր, իմ հոգւոյ հատոր,
Պիտի խընդրէի քեզանից խոնարհ՝
Պատուհանին մերձ քշել զ'իմ բազկաթոռ,
Որ քեզ հետ նկատեմ գարունն ծաղկավառ:
Եւ երբ իմ աղօտ եւ նըւաղ աչեր
Զինջ հորիզոնին վրայ մընան սեւեռ,
Ուր շիկնած ամպերն միմեանց տան պաչեր՝
Դեռ խաւար գիշերն չ'հագած իւր սեւեր,
Թո՛յլ տուր ինձ դու եւս տալ քեզ իմս համբոյր.
Ձեռքդ էլ կուրծքիս վրայ սեղմած ամուր պինդ,
Թո՛ղ ծաղկանց նըման սիրտք մեր քաղցրաբոյր
Սուրբ մըտերմութիւն բուրեն միշտ ի թինդ:
Մահն իսկ յ'այն պահուն թէ գար ժանտադէմ՝
Հէգ մարմնից բաժնել հոգիս սիրակէզ,
Ցուսով դիմէի արարչիս յ'Եդեմ.
Զի շատ սիրեցի բարին եւ ըզքեզ:

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## 1885

### ՄՏԻ՛Ր ԿՈՒՍԱՍՏԱՆ (1)

Մօրդ համբոյրներով այտերդ են շինուած,
Երկնային ոսկւով նուրբ մազերդ օծած.
Գունատ է մարմինդ զինչ շուշան՝ ծաղկունք,
Ոտից մինչ ի՛ գլուխ քաղցր ես, երգող խունկ.
Եւ թէպէտ լինիս ամաց վեշտասան,
Մըտի՛ր կուսաստան:

Հազուագիւտ բոյսերն խնամքով միշտ պահուին,
Որ չ՛լինի՝ տաքից կամ ցըրտից վնասուին.
Այլ քեզի նըման բոյսիկն, որ հազիւ
Տեսել է գարնանց մի շատ փոքրիկ թիւ,
Որոյ վայլէ լոկ մի դըրախտ բուրաստան,
Մըտի՛ր կուսաստան:

Այն պարզ անթառամ ժըպիտն որ ունիս,
Որով երկնային հոգւոց նըմանիս,
Քոյ քոյրերն՝ եղբարք որոց թողել ես,
Կըրկին նոցա մօտ թէ դառնալ չ՛ուզես,
Գիտցի՛ր որ երկրումս իշխէ չար սատան,
Մըտի՛ր կուսաստան:

1. Այս քերթուածս կայ տպագրած նա և “ Գրական և պատմական հանդէսի „ Ա գրոց մէջ՝ ոչ սակաւ զանազանութեամբ։

Անցեալ կենացըդ երկնային վայելք
Թողել են քո վրայ անջընջելի հետք.
Ո՞ր անգութ սիրտը վասն իւր հաճոյից
Մահացրել է քեզ ի՛ կեանս այս թախիծ,
Որոյ ցաւալի՝ մութ է ապագան.
Մըտի՛ր կուսաստան:

Մեր խրախճանչիւր սէրն երբ յագենայ,
Կարծես մի զուարթուն յերկինս մահանայ,
Ցաշխարհ գայ ըղձի մարմնով սիլուանդ.
Ցըդանայ ի՛ ցաւս մեղսակիցն արգանդ,
Եւ հրեշտակըն՝ մարդ դառնայ յետ անկման.
Մըտի՛ր կուսաստան:

Արարիչն անգամ երբ իւր փառքն անհուն
Մարդուն ընծայեց ի՛ դրախտ ի՛ գարուն,
Նախապէս ասաց՝ որ ըզգոյշ լինի,
Չ՚ուտէ արգիլեալ պտուղըն գեղանի.
Օձի խորհուրդն է ծընունդը մարդկան.
Մըտի՛ր կուսաստան:

Չի կայ մի ծաղիկ, վարդ մ՚անուշահոտ,
Որ առանց աղբի կեղտոտ ու ցեխոտ՝
Սնանի ու բուրէ, ժըպտի երփներանգ,
Դառնայ ճոխ բնութեան հարսն ու զարդարանք.
Փըտութիւն սիրեն մարդն ու բուրաստան,
Մըտի՛ր կուսաստան:

Երբեմն էլ մարդըս նըման Համլէթի,
Խոկմանց՝ հոգեբրու կը դատապարտի,
Խըմէ ու ծըծէ մրուրըն բաժակին.
Լաւ հասկանալով կեանքն ու նորա գին,
Ցոյց տայ անմեղին փըրկութեան ճամբան.
Մըտի՛ր կուսաստան:

*Եւ ինչո՞ւ իրօք կեանք տալ դըժբաղդին՝*
*Առանց ցանկութեանն, առանց իւր կամքին,*
*Ու զորել նորան ի մահիճ վրշտաց,*
*Որ յառաջատում ի՛ քիրտ տըրփանաց*
*Ցազենայ զըրգիռն մեր վայրկենական.*
*Մըտի՛ր կուսաստան:*

*Կը հասնի ժամը, և կեանքը խաղաղ՝*
*Բիւր կրից և զգացմանց դառնայ դաշըն խաղ.*
*Մէկ ժըպիտն անթիւ արցունքով՝ ցաւով*
*Հարկաղրի զընել. և կենաց ի՛ ծով*
*Թերևըս մահն է մեր լոկ ապաստան.*
*Մըտի՛ր կուսաստան:*

*Աշխարհումըս լոկ կըրքերն տան պըսակ*
*Բիւր ունակութեանց լիրբ և անառակ.*
*Խեռ, ատելութիւն, եղբարց մէջ ոճիր,*
*Մարդուս միտքն՝ հոգին ծալեն ի՛ կընճիռ,*
*Չի դժոխք այստեղ է դրած իւր պատուանդան.*
*Մըտի՛ր կուսաստան:*

*Գոնեայ դու լինի՛ս այնքան բաղդաւոր՝*
*Գըտնել սիրոյ մէջ զէթ երջանիկ օր.*
*Ձաւակիցդ արդեօք դու պիտի խընդամ՞ս.*
*Գուցէ դեռ մատաղ՝ նորա մահն ողբաս,*
*Միմեանց շատ մօտ են գերեզմանն՝ որրան.*
*Մըտի՛ր կուսաստան:*

*Եւ յանկարծ մի մարդ մաշուած, ծեր, անպէտ՝*
*Քեզ ամուսին տան, հնազանդիս թէպէտ,*
*Այլ սըրտով սիրես պատանին գողտրիկ,*
*Բընական է. բայց... քեզ կոչեն պոռնիկ.*
*Նրանց մեղքն մոռցած, քեզ լոկ վայ կը տան.*
*Մըտի՛ր կուսաստան:*

Կամ իբրև մի նոր նըման Ժիւլեթի՝
Գըտնես Ռոմէօն ընտրեալն քոյ սըրտի,
Ի՚ սէր և ի՚ յոյս լողանաք միասին.
Նոքա տեղի տան շուտով զըզուանքին,
Հեշտութիւնք սէրը դըննեն ի՚ դամբան.
Մըտի՛ր կուսասաաան:

Ինչ որ ես, նոյնը ջանա մընալ միշտ,
Երկնային սիրոյ՝ կուսութեան նաժիշտ.
Մի՛ գերեր անձըդ երկրիս կըրքերուն,
Նոքա կարող են զանմեղըն զուարթուն
Փոխադրել դեւի սէգ ամբարտաւան.
Մըտի՛ր կուսաստան:

Կ՚ուզէի սիրուհի՝ սիրել կոյսդ անբիծ,
Զըսարսափէի թէ ապագայից.
Բայց երկուսիս էլ է այդ վնասակար,
Զի չըկան բարիք երկրումս հաւասար.
Իսկ դու գաղափարդ սիրոյս խնկական,
Մըտի՛ր կուսաստան:

Տեսնումե՞ս որ ես չի պահանջեցի
Ո՛չ սէրըդ և ո՛չ ծիրքերդ կանացի.
Ապաւինում եմ միայն կոյս հոգւոյդ,
Զի նա անմահ է և չի մնար անփոյթ
Իմ պաղատանաց արդար՝ հոգեկան.
Մըտի՛ր կուսաստան:

Ահա և վանքի զանգակներն հընչեն,
Ի՚ սփոփանս՝ յաղօթս նոքա մեզ կոչեն.
Կըճեայ սաւան որմունք տաճարին սըրբոց
Զովացնին միշտ կիրք ու սըրտերի բոց.
Ուր քեզ արժանի կայ աղօթարան.
Մըտի՛ր կուսաստան:

Դու փորձութիւնից կը մնաս այնտեղ զերծ,
Համեստ կուսեկան հազած ըզհանդերձ.
Քու աղօթից մէջ յիշի՛ր ինձ, ո՛վ կոյս,
Թէ հէգ այս կեանքում, թէ շիրմից յայնկոյս,
Ուր որ մեզ մըղէ գերանդին մահուան.
Մըտի՛ր կուսաստան:

Եւ երբ ոսկեփայլ թևերըդ պարզած՝
Դիմես բարձրանաս յերկինս առ Աստուած,
Ցիշի՛ր ինձ կըրկին Բարձրեալըն առաջ,
Հաղորդէ՛ նորա մեղացն իմ հառաչ,
Մի՛ մոռնար խնդրիս անշուք գերեզման.
Մըտի՛ր կուսաստան:



# ԱՆԿՈՉ ՀԻՒՐԸ

## Ա.

Օգոստոսի վերջերում Կովկասի մայրաքաղաք լեռնապատ Տփղիսը ծածկուած էր մի թանձր ու խոնաւ մառախուղով, և երկու օրուայ տեղացող փոշենման անձրևն արդէն լճակներ և առուակներ էր ձևացրած զառիվայրերի և քարայատակ փողոցների փոսերին մէջ։

Այնքան խտացած էր օդը, որ միջօրէի թնդանօթին հարուածն անգամ խուլ էր հնչում, և վառոդի սպիտակ ծուխը գոնէ մի վայրկեան սքօղում էր Ալէքսանդրեան այգիի վանդակապատ մուտքը, ուր ուրիշ օրերի նման չէր երևում շրջագայողների յամրագնաց շարժմունքը. Հազիւ մի քանի գործազբաղ մարդիկ կամ կանայք կ'անցնէին շտապ, ցեխի և ջրերի մէջ ոստոստելով։

Այդ ծանր ու խոնաւ մթնոլորտը որ յանկարծ կը յաջորդէ անտանելի շոգերին, վատառողջ է ամէն կարգի և կազմուածքի տէր անձանց, և բարոյապէս տխուր կերպով կ'ազդէ հիւանդ ջղոտների վերայ։ Մանաւանդ Կուր գետի մռայլ երևոյթը, որի դեղնած և պղտոր ջուրը սպունգի նման փրփուրի պղպջակներով ծածկուած, վազում է վազում, աջ ու ձախ գետեզերքի վերայ թողնելով իւր մակերևոյթում լողացող մարմինները. փայտի կամ գործարանաց ածուխի փշուրն ու կտորտանք, ցնցոտիք, մամռապատ եղէգներ. այս վերջինները ջրեղէն բաղեղների նման գալարուելով կը փաթաթուէին ցիցերի, լաստերի և Միքայէլեան կամրջի

ստորոտին թմբոցը, ուր ջուրը՝ քմահաճ և խելապտոյտ շըրջաններ անելով, փրփրալով, ֆշշալով, կ'եռայ ու կը դառնայ և կը շարունակէ իւր ճանապարհը։

Կամրջի երկու կողման հեռաձիգ տեսարանները ծածկուած են գոլորշիով, և չեն երևիր այն անյողդողդ ժայռերի ու բլրակաց վերայ հիմնարկուած պատշգամաւոր տըները, ցան ու ցիր եզերքում սփռուած տնակ, խրճիթ և գործարան։ Այլ միւս կողմից տեղ—տեղ կ'երևին ծառեր, ծխող ծխնելոյզք, որոց ետևից՝ երկնից պարզութեան ժամանակ, մի կապարագոյն մշուշով պատած կը նշմարուին սրածայր լերանց գագաթները, մերթ վարդակարմիր և մանուշակագոյն, երբեմն էլ սպիտակ, արեգական ընթացքին համեմատ։

Կամրջի տակից անցնող ջրին նման մարդկային մի հոսանք էլ նորա վերայից միշտ անց ու դարձ կ'անէ, որի կարծես բարեկարգութիւնը անվրդով պահպանելու համար կը հրամայէ հսկել Վարանցովի խստահայեաց և չքեղադիր պղնձեայ պատկերը՝ իւր լայնանիստ պատուանդանին վերայ արթուն և կանգուն։

Գիշերն աւելի քսամնելի է այդ գետին երևոյթը, այդ բազմամարդ, գողտրիկ և ծաղկեալ քաղաքի կեդրոնում վազող ու փրփրացող սարսափելի գաղտնեաց նեղ և ընթացիկ ովկիանոսը, որի տափարակ և պռոտուն ալիքները աղօտ կերպիւ կ'անդրադարձնեն եզերքի վառուած լոյսերը, որ իւր լռութեան մէջ անգամ ունի մի խորհրդաւոր մըրմունջ, և իւր յատակում թաղուած յոյսերն ու գաղտնիքները կը պատկերացնէ երբեմն մահասարսուռ ժպիտով՝ իւր պղտոր ալիքների մակերևոյթում։

Այլ երբեմն արշալուսոյ խաղաղ և փայփայող լուսովը կը հանդարտի, կը կանոնաւորէ իւր ընթացքը, գրաւիչ մի պատկեր կը ստանայ ու կը հանէ իւր ծոցիցը կապուտակ գոլորշիներ, որք մերթ կը պատեն եզերքը մառախուղի քողով, յետոյ ծանր առ ծանր արեգակին հետ բարձրանալով՝ ամպ կը կազմեն երկնքում։

Սակայն երբ ամառուայ շոգերն կը սկսին, և քաղաքը կը ծածկուի ծանրակշիռ մթնոլորտով, երբ գերդաստանք շոգից պատսպարան կ'որոնեն շրջակայ գիւղերում, այն ժամանակ քաղաքում մնացող գործատեարց համար գետեզերքի մօտ շատ անգամ կարելի է շունչ քաշել, լողանալ։ Արդէն շատերն իրենց գործերի բերմամբ էլ այնտեղ են հաստատած բնակարան, գործատուն և գրասենեակ, որոց մէջ նշանաւորներից մինն է Գուլթունու ալիւրի գործարանը, որի կից է նաև գրասենեակը մի յարկի վերայ՝ անմիջապէս ջրերին մօտ, ուր աղան երբեմն գիշերները կ'անցնէ իւր գործի շահերից ստիպեալ, ուր կը պահէ մի երկաթէ արկղի մէջ իւր փողն ու թղթերը և թանկագին առարկայք... Արկղի աջ կողմն է գրասեղանը կանաչ չուխայով և զանազան գրելու պիտանի առարկաներով ծածկուած. մեծ հաշուագրքեր, հաշուաշար, փոքր քսակների մէջ ցորենի օրինակներ։ Պատին մէջ հաստատուած մի ճանկից կախվում են մեծ ու փոքր թղթերի և հաշիւների թերթեր, նոցա մօտ մի օրացոյց դարձեալ պատից կախ. այլ աջ կողմի պատում կայ մի կրակարան նոր ձևով ծեփած. նորա կողքին մի կլոր սեղան ու վերան թէյի մի բաժակ իւր արծաթէ բաժկակալովը, որով տէրն երբեմն թէյ կը խմէ, կրակարանին մէջ փայտ նետելով օդին և գետի խոնաւ զովութիւնը մեղմելու համար, որից շատ էլ ղգուշանալու տեղի չունէր, նայելով իւր քաջառողջ կազմուածքին, որով կարող էր մրցել տակաւին իւր 55 տարեկան հասակում շատ երիտասարդների հետ։ Սակայն իւր առատ մազերն ու բեխերը բաւականին սպիտակ էին արդէն. այլ աչքերը արտասովոր կերպիւ կը փայլէին այն թխագոյն պատկերին վերայ, նեղ և բարձր ճակատով ու գեղեցկաձև քթով. իսկ կարմրաշուրթ բերանը մեծ էր, և երկու անկիւններում լայն կնճիռները կը կորչէին բեխերի մազերին մէջ։ Դէմքի վարի մասը վերևից աւելի ընդարձակ էր, այտերը փոքր ինչ ծալուած ականջների մօտ. նոյնպէս մի խորին ծալք երկու յօնքերի մէջ-

տեղ, որ սպառնալեց նիզակի նման կը ցցուէր բարկացած ատեն։ Այսու հանդերձ այս ամբողջութիւնը իսկապէս մի տգեղ երեւոյթ չունէր, միայն թէ լաւ ազդեցութիւն չէր գործում ընդհանրապէս առաջի նորա հանդիպող անձին։ Բայց նա գիտէր գրաւել բոլորին փաղաքուշ ժպտով և ձեւերով. ունէր ևս գրաւիչ և համոզող մի ձայն, որ ուզած ատեն կարող էր շատ կատաղի և խրոխտ կերպիւ հնչեցընել։ Բայց այդ մեղոյշ ձեւերը կարող էին և կեղծիք լինել. սակայն կարելի՞ է դատել մարդկանց նոցա արտաքին երեւոյթի վերայ հիմնուելով. չէ՞ որ միայն արտաքինը երբեմն խաբէական կարող է լինել. միայն կարելի է մարդս իւր գործերից դատել, և շատ անգամ մեր վերայ գործած տպաւորութեամբ, որով քիչ կը պատահի՝ որ խաբուինք. և այդ բանը կարող է զգալ դիտող և զգայուն մարդը, և կամ ըմբռնել Լաֆատէրի և Գալլի դրութիւնը ուսումնասիրած անձինք, որոնք դարձեալ իբրև դիմագէտք կամ գանգաբանք պատահի որ սխալուին։ Ահա այդ պատճառաւ դիմագիտութիւնը տակաւին հաստատուն գիտութեանց կարգը անցած չէ. Անհրաժեշտ ուսումն, որ մեծ ծառայութիւն պիտի մատուցանէր մարդկութեան. զի մեծամեծ չարեաց առաջն պիտի կարողանայինք առնել, եթէ հնարաւոր լինէր մեզ զանազանել կեղծ մարդասէրը ազնիւ մարդասպանից։ Առ այժմ դատում են մարդուն իւր հրապարակական գործունէութիւնից, բարձրահնչիւն անունից և նորա հարստութեան տեսակէտից. մանաւանդ եթէ նորա այդ առաւելութիւններով մեզ օգուտ և շահ ծագի, եթէ նորա դրութեան շնորհիւ կարողանանք մենք ևս բարւոքել մերը. Մնացեալը ո՞ւմ հոգն է։

Ահա ձեզ մի անձնաւորութիւն որ բոլորից սիրուած է և յարգուած, չնայելով որ խօսել են նորա համար էլ չար լեզուներ ո՛չ նպաստաւոր. բայց ո՞վ կը հաւատայ, թէ նա Պետերբուրգում ունեցել է մի գայթակղեցուցիչ դէպուած. գրպարտութիւններ. որովհետև ահա վեց տարի կը լինի որ

Գողթունի հաստատած է Տփղիսում իւր գործերն և բնակութիւնը. այս վեց տարուայ ընթացքում բարեգործութիւնից 'ի զատ ոչ ոք ոչինչ չէ տեսել նորանից։ Ամէնքին իրեն գրաւած՝ այնքան բարձր է ընդհանուրի կարծիքը նորա մասին, որ քաղաքում փոխանակ անուանելու իւր Գողթունի ազգանունով, կոչում են «բարերար տէր» կամ «աղա»։

Չնայելով որ մի մեծ հարստութիւն էլ չունի և իւր ալիւրի գործարանից դէն մի շահ չէ կարողացել ստանալ, այսու հանդերձ ճոխ կ'ապրի։ Ուր որ լինի, առանձին ճարտարութեամբ կը խօսի առաքինական յատկութեանց վերայ, անիրաւութեանց թշնամի է կամ լինել կը ձևացնէ, տարօրինակ գաղափարներ կը յայտնէ։ Օրինակի համար, երբ հարցնէին թէ ինչո՞ւ հրաժարուեցաւ փաստաբանութիւնից, ինչո՞ւ առանց աւարտելու իրաւաբանի ուսումը թողուց համալսարանը և վաճառականութեան գործերը պարապեց, նա կը պատասխանէր՝ թէ ատում է այն արուեստը, ուր հարկադրուած է փող վաստակելու համար մարդասպանին, գողին և առաքինւոյն հաւասար եռանդեամբ պաշտպանել. երբէք չկարողանալ ասել իւր սեպհական կարծիքը. սևը սպիտակ հանդիսացնել և սպիտակը սև. իրեն համար ապրելու նպատակաւ՝ այլոց համար խորհել և խօսել. մարդկութիւնից հրաժարուած, մի խօսուն մեքենայ դառնալ, որին կարելի է լարել տրուելիք գումարին համեմատ, և այլն։ Սորա նման գաղափարներ կ'արտայայտէր, որպէս զի ուրիշներից ջոկուի և բարձր կարծիք ունենան իւր վերայ։

Աւիթ բաց չէր թողնում ձեռքից իւր առաքինասէր կողմը ևս ցոյց տալու. օրինակ. փաստաբաններ վարձելով, պաշտպանեց իւր երկու գործաւորաց դատը և նոցա փրկեց դատապարտութիւնից։ Երեք աղքատ աղջիկներ օժտեց և հարսնացուց՝ նոցա միոյն կնքահայր դառնալով, որոց երկուսը աղախնոյ պաշտօն վարած էին իւր տան մէջ։ Այ-

պիտի գործեր․ աւելացրէք նորա վերայ մի քանի ազգասիրական ճառեր, որ արտասանեց տարբեր առիթներով․ բարեգործական ընկերութեան գանձանակին նիւթապէս տուած օգուտները․ այս բոլորը այնքան բարձրացրին իւր անունը ժողովրդեան մէջ, որ ուսեալ և տգէտ, գործաւոր և ռամիկ, բարերարի մակդիրը դրոշմեցին նորա ճակատին․ իսկ աղքատներն իրենց պաշտպան հրեշտակն էին անուանում։

Առաւօտից մինչև երեկոյ պարապում էր գրասենեակի մէջ գործատան հաշիւներով և կարգադրութիւններով։ Կէսօրուայ նախաճաշիկի կը գար տուն, յետոյ նորից գրասենեակը վերադառնալով՝ մինչև երեկոյ կը զբաղէր․ կը պատահէր, որ մինչև հետևեալ օրը ստիպուած գիշերն այնտեղ մնայ․ այլ ընդհանրապէս սովորութիւն ունէր երեկոները տուն վերադառնալ թէյի ժամանակ, եթէ չի գնար այցելութեան մի տիկնոջ, որին հետ շատ սերտ յարաբերութեամբ կապուած էր։

Տանը իւր վերադարձին կը սպասէին տասնևիննամեայ աղջիկը՝ պառաւ խնամակալուհու հետ․ այս վերջինը՝ գլուխը ձեռքում հիւսած գուլպային վերայ խոնարհեցնելով, ծնկան վերայ նստած կատուին հետ կը մրափէին։ Պառաւը միայն գլուխը բարձրացնելով, նիհար ձեռքով ինքնաեռը կը շօշափէր, նայելու համար՝ որ ջուրը սառած չլինի․ և եթէ աղան յանկարծ գալու լինի, թէյը ժամանակին պատրաստ չգտնէ և բարկանայ։

Որովհետև արտաքին անձանց հետ հեզաբարոյ և քաղցր վարուող աղան նոյնը չէր դժբաղդաբար իւր տանը մէջ, — մանաւանդ մի քանի օրից ի վեր զգալի կերպով փոխուած էին թէ իւր սովորական վարմունքը և թէ երեսի արտայայտութիւնը, առանց դորան էլ մեծաւ մասամբ վատ կը վարուէր իւր աղջկան հետ, — խեղճ Երանուհին շատ էր տառապում այդ վարմունքից։ Հեշտ չէ մի երիտասարդ օրիորդի՝ իւր մատաղ հասակում տեսնել իւր մօրը, մանա-

ւանդ իւր միակ բարեկամուհուն մահը, որի գգուանքն ու խանդաղատանքը պաշարած ու օրօրած էին իւր մատղաշ տարիքը, որք իւր սրտին անհրաժեշտ մի պէտք և սնունդ դարձել էին: Յանկարծ կորցնել այդ բոլորը, զգալ ինքն իրան մի ցաւալի դատարկութեան մէջ, ուր միայն նշմարելի էր հօրը դաժան և խստահայեաց պատկերը, ցամաք խօսքերը... վշտալի՜ փոփոխութիւն: Սակայն Երանուհի իբրեւ արդարակորով, սովորականից դուրս խելացի եւ առաքինի մի աղջիկ, տանում էր այդ հրեշտակային համբերութեամբ. քիչ առ քիչ վարժվում էր այդ առանձնութեան եւ մաշող կեանքին, թէպէտ ցաւելով՝ այլ առանց երկիւղի տեսնում էր հօրը վարմունքը. սակայն ընդհակառակն երկիւղ կը զգար այն ատեն, երբ հայրը ծիծաղէր և ձայնը հրամայողական կերպիւ չեշտէր... որ երբ[illegible] սաստիկ բարկութեան եւ աղետից հետեւանք կամ աւետա[illegible] սուրհանդակ համարէին:

Անմայր, բոլորովին անընկեր, միայն մի պառաւ խնամակալուհու հսկողութեանը տակ՝ օրերը կ՚անցնէին, որից իբրեւ ղաւակ սիրուած էր արդէն. բայց կարելի՞ է միթէ որ եւ է մի ուրիշ սիրով մոռացնել նորան իւր վաղամեռիկ մօր յիշատակը: Այսու հանդերձ Երանուհի սիրում էր իւր խնամակալուհուն, իւր միակ՝ բայց տկար պաշտպանը՝ խիստ հօր յարձակմանց դէմ, որոյ կնճռագիծ պառաւի ճակատը վաղուց արդէն ծածկում էին արծաթափայլ մազեր, այդ տաղտկալի կենաց փոթորկալից վէճերը տանելով ի սէր որբ աղջկան. Ներկայ լինելով նոյնպէս հանգուցեալ մօր կրած տառապանքին ու վշտաց, որից միայն մահը կարողացաւ փրկել, եւ որին նա քոյր էր անուանում:

Սակայն տարիներն ու հոգսերը չէին կարողացել ջնջել նորա դէմքի ազնուական եւ բարի արտայայտութիւնը՝ խոր աչքերով և արծաունգն քիթով, որ բոլոր տեսնողաց պատկառանք կ՚ազդէր:

Տխրագին լռութեամբ կը նայէր Երանուհու երեսին, որոյ

գեղեցկութիւնը դեռ չէին կարողացեր մթագնել արտասուք եւ տառապանք։ Այո՛, գեղեցիկ էր Երանուհի այն գեղեցկութեամբ, որ շատ անգամ կը գոյանայ հոգւոյ ազնուութեանց դէմքին վերայ անդրադառնալովը. համակրելի է, քաղցր ու գրաւիչ, առանց ունենալու կլասիքական արուեստապահանջ գծերը. գեղեցկաց գեղեցիկն է նա իւր գունատ պատկերով, մուտ չրթունքներով եւ աչքերով, որոց կապոյտ երանգն ու լայնահատ շրջանակը պարունակէին մի անյողդողդ նայուածք, ուր կարելի էր նշմարել առաքինութեան, խելքի եւ անձնուիրութեան նշոյլները։ Հասակը միջին՝ նուրբ և դիւրակոր, համեստաքայլ. ոտից ցգլուխ կուսական շնորհաց մի կենդանի ծաղիկ։

Բոլոր օրը կը զբաղուէր տան գործերով, երբեմն էլ ընթերցմամբ՝ անշուշտ տխուր մտածութիւնքն ու ձանձրոյթը վանելու համար։ Շատ քիչ անգամ դուրս կ՚ելլէր տանից, այն էլ այգիում շրջագայելու երեկոները խնամակալուհուն հետ. կամ երբեմն հօրը հրամանաւ կ՚երթան այցելել մէկ երկու բարեկամուհեաց, դպրոցական դասակիցք, որոց չափահաս եղբայր կամ ամուսին չունենալնուն նախապէս տեղեակ էր հայրը. ապա թէ ոչ՝ նոցա հետ էլ տեսնուիլը անհնարին կը դառնար, որովհետև հայրը մտադիր էր մի հարուստ եւ մեծ անուան տէր փեսի տալ իւր աղջիկը... որովհետեւ Գողթունի դեռ չէր բաւական իւր վայելած յարգանքիցը. նա աւելի հեռուներն էր ակնարկում։ Նա մեծամեծ նպատակներ ունէր, որին հասնելու միակ միջոցն էր առատ փող եւ բարձրաստիճան անձանց ազգականութիւնը, կամ լաւ եւս ասել, խնամութիւնը. առ այժմ կարող էր գոնեա մինը այդ նպատակաց իրագործել, եւ Երանուհի թերևս գործիք դառնար։ Թշուառ զոհ... էհ, ինչ փոյթ. բաւական էր որ ինքը բարձրանայ. ո՞վ է փընտռում եւ քննում, թէ արձանին պատուանդանը ինչի՞ց է շինած կամ ինչո՞վ է յօրինուած...

Դժբաղդ էր Երանուհի. անապատաց լքեալ բուսեկին

նման՝ իւր վաղ երեւակայութեան մէջ տպաւորուած էին ցաւալի յիշատակաց սեւագոյն պատկերներ, որոց մէջ առաջին տեղը կը բռնէր իւր մօր մահը. այն օրից՝ որ նորան կորցրուց, իւր շուրջը ամեն բան սուգ զգեցաւ, աշխարհն չունէր այլ իւր հրապոյրն իրեն համար։ Այն սիրտը, որի մէջ ինքն ապրում էր, երբ սառեցաւ մահի ճիրանների տակ, իւր կեանքն էլ կիսով չափ սառեցուց. կարծես մի բան պակասում էր իրանից, որին մայրը հետը գերեզման էր տարած։ Բոլոր իւր յոյսերը, անխառն ծիծաղը, անմեղ զբօսանքները, ամենը միով բանիւ, կորած էին, մինչեւ անգամ քերթողաց ընթերցումը. սիրելի Լերմոնտովը, որն որ շատ գիշերներ ձեռքումը անկողնին մէջ կարդալով կը ննջէր, ու երբ կիսաբաց գիրքը ձեռքերիցը ինկնար... նա արդէն երազումը սկսել էր Թամարա դառնալ, դեւի գրկացը սաւառնել երկնից անհուն եւ ընդարձակ կամարին վերայ ուր իւրաքանչիւր երկնային մարմինք մի նոր, հրաշալի տեսարաններ կը ներկայացնէին իւր զմայլած հոգւոյն աչացը։ Եւ այդ բոլոց նիրհմանց յափշտակիչ ցնորքն ու պատիրքը առաւօտեան լուսով կը սրբագործուէին մօր համբոյրների քաղցրութեամբ, երբ նա անկողնին մօտ նստած մայր եւ աղջիկ գրկախառն համբոյրներով բարի լոյս կը մաղթէին միմեանց։

Իրականութիւն եւ երազ, ամեն ինչ անհետացան խափանուեցան գերեզմանի քարի տակ, եւ նա ապրում է այժմ, ինչպէս իւր բնիկ կլիմայից եւ սովորական սնունդիցը զրկուած մի թռչնիկ. Շաբաթը մէկ կամ երկու անգամ գնում էր այգի ման գալու խնամակալուհուն ընկերակցութեամբ. իւրաքանչիւր ծառուղիք, հովանիք կամ նստարանք յիշեցնում են անցեալը։ Տեսնում է օտար աղջկանց իրենց մայրերի հետ ման գալը ու արտասվում է լռելեայն, ծածկելով աչքերը սգաւորի գլխարկի սեւ ու թանձր քողովը։

Մի երեկոյ ընդունելով հօր առաջարկութիւնը, խնա-

մակալուհին էլ առած՝ երեքը միասին պարտէզ գնացին, ուր մի երիտասարդ, որ վաղուց նշմարած էր Երանուհուն, հօրը՝ երեւի՝ ծանօթ լինելով արդէն ու առիթ քաղելով նորա աղջկան մօտ գտնուելուց, գնաց ողջունեց Գողթունուն, որին այս վերջինը իսկոյն աղջկանը հետ ծանօթացուց։ Այն երեկոյից յետոյ երկու անգամ եւս գնացին այգի եւ ամեն անգամ էլ հանդիպեցան Վարեհ իշխանին, որոյ ընկերութեան պատճառած հաճոյքը գրեթէ անմարսելի էր Երանուհու համար. այն աստիճան, որ վերջերումս տկարութիւն կամ գլխի ցաւ պատճառ բերելով՝ այլ եւս այգի չէր ուզում գնալ. եւ երբ հայրը բարկացած կը պնդէր՝ որ ընկերէ իրեն, Երանուհի երեկոների զովութիւնը իւր առողջութեան վնասակար լինելը յայտնելով կը մերժէր։

Մինչեւ անգամ մի երեկոյ իւր խուցը քաշուած էր, երբ իշխանը իրենց մօտ եկաւ հօրը հետ առաջին անգամ. այլ Երանուհի չերեւեց։ Այս բանից սաստիկ զայրացել էր հայրը. ուզեց խօսիլ աղջկանը հետ. բայց տեսնելով՝ որ բարկութիւնը չպիտի կարողանայ զսպել, որովհետեւ շատ վատ միջոց էր Երանուհուն միտքը բացատրելու համար, տանից դուրս գալով իշխանի հետ՝ գնացին կլուբ, ուր աշխատեց լուռ եւ մտազբաղ վիսթի կամ գինւոյ մէջ մոռանալ աղջըկան յանդուգն վարմունքը, եւ յակամայս խեղդել իւր զայրոյթը։

Բ

Մի երեկոյ Գողթունին սովորականից շատ աւելի վաղ էր վերադարձել տուն, ու վեր բարձրանալով՝ ուղղակի սըրահ մտաւ, ուր գտաւ աղջկանը դաշնակին առաջ նստած, որի վերայ Բէթհովէնի եղերերգական եւ իւր մօրը կենդանութեան ժամանակ նորա սիրընտիր մի հատուածն էր նուագում։ Տեսնելով հօր մտնելը, չկարողացաւ զսպել յակամայս մի սարսուռ, որն որ իսկոյն տեղի տուաւ երկիւղի,

նշմարելով հօրը երեսին վերայ մի ժպիտ, այն աղէտալի եւ չար ծիծաղը, որ չէր կարող առանց սոսկումի տեսնել։ Այսու հանդերձ առանց այլայլելու դիմաւորեց հօրը, մատուցանելով ճակատը հայրական համբոյրին, եւ կրկին նստեց իւր առաջին տեղը։

Խնամակալուհին նստած մի անկիւնում, լուիկ թէյ կը խմէր։ Գողթունի գլխով ողջունեց նորան, եւ մի քանի տարտամ հարցեր անելուց յետոյ, մտազբաղ վերադարձաւ ու կանգնելով խնամակալուհու առաջ, մեղմ ձայնով ասաց.

— Խնդրեմ, հրամայեցէք՝ որ վերարկուիս ցեխերը մաքրեն։ Յետոյ սպասեցէք ինձ վարի սենեակում, ես կ'իջնեմ շուտով։ Ձեզ հետ առանձին խօսելիք ունիմ։

Սոքա միայն պատրուակներ էին նորան այնտեղից հեռացնելու համար, որն որ թէյի բաժակը ձեռքին, դեռ [illegible]ւարտած եւ առանց պատասխանելու՝ հեռացաւ Գողթ[illegible] քամակիցը, կասկածոտ մի հայեացք ուղղելով։

Գողթունի մի բազկաթոռ գլորեց դաշնակի աթոռակի մօտ, որի վերայ նստած էր Երանուհին. եւ թաւ ձեռքը աղջկայ փափուկ բազուկը շօշափելով, սկսեց ուշադրութեամբ նորա աչացը մէջ նայել. հազաց, ժպտեց և յետոյ այսպէս բաց արաւ խօսակցութիւնը.

— Դարձեա՞լ երկիւղ եմ ազդում քեզ, որ չես ուզում գլուխդ բարձրացնել եւ ուղիղ երեսս նայել. չպէտք է մարդկանց դատել գաղավիժաբար. երբ որ մարդուս հոգին յուզուած է հոգսերով, ի՞նչպէս կ'ուզես որ երեսը ուրախութիւն ցոլայ. իրենց ներքին զգացումը արտաքուստ չյայտնելու յատկութեան մէջ կանայք են միայն ընդունակ... Արտաքին դաժան կերպարանքս չէ կարող երբէք հաստատել, որ անգութ լինիմ, կամ լաւ եւս ասած, աղջկանս օգուտը չմտածեմ, չճանաչեմ իմ հայրական պարտականութիւնս. ընդհակառակն խիստ լաւ գիտեմ, որ արդէն վաղուց ժամանակ է խորհել քո ապագայի մասին... գիտեմ։ Եւ լաւ նկատած եմ այս կեանքին քո հասակիդ պահանջ-

մանց բոլորովին անհամաձայն լինելը. եւ վերջապէս մի՞ թէ ես չեմ ցանկար քո երջանկութիւնը... ի՞նչ ես կարծում... չէ՞ որ այդ իմ հայրական պարտականութիւնն է... ուստի...

Ճակատը սկսաւ շփել, կարծես լաւ շարադրելու համար ասելիքը. եւ փոքր ինչ լուռ մնալուց յետոյ՝ շարունակեց.

— Ես այդ մասին միշտ հոգատար էի, միշտ խորհում էի... սպասելով մի յարմար եւ վայելուչ առթի... Եւ ահա այդ առիթն էլ ներկայացաւ...

Երանուհի թէպէտ նախազգուշակած էր հօրը դիտաւորութիւնը, բայց խաբում էր տակաւին ինքն իրան, չուզելով հաւատք ընծայել այդ ստուգութեան, որ իրեն համար շատ դառն էր։ Նա աչքերը մեծ մեծ բանալով, անձկութեամբ նայում էր հօրը երեսին, որն որ տեսնելով աղջկան վարմունքը, շարունակեց կրկին մի փաղաքուշ ձայնով, որ հարկ եղած ատեն գիտէր ճարտարութեամբ գործ ածել.

— Յիշո՞ւմ ես, Երանուհի, սորանից մի քանի շաբաթ առաջ այգիում քեզ հետ ծանօթացող երիտասարդ զինուորականը, վերջապէս Զարեհ իշխանը, որ վաղուց քեզ նըշմարած էր եւ համեստ դիտաւորութեամբ ուզում էր հետդ ծանօթանալ, որին դու շատ սառն կերպով ընդունեցար. մինչեւ անգամ անցեալ երեկոյ նորա մեզ մօտ եղած ժամանակը սենեկիցդ չուզեցիր դուրս գալ, այդ բանը ինձ շատ նեղացրեց։ Ես քեզ ոչինչ չեմ ասել մինչեւ այժմ. սակայն կարծեմ, որ դու այդպէս վարուելով՝ հօրդ նախ անպատուած կը լինիս, յետոյ այն անձին, որ բարձր դիրք ունի ընկերութեան մէջ եւ ազդեցութիւն, առանց հաշուելու իւր երեք միլլիոնի արժողութեամբ փողերն ու կայքերը. պէտք է նոյնպէս ի նկատի ունենալ, որ շատ լաւ ընդունուած է մեծ դքսի պալատում եւ բոլորից յարգուած... Ես կարծեմ, որ մեզ պատիւ պէտք է համարինք այսպիսի անձանց ծանօթութիւնը...։

Հայրը այս վերջին խօսքերը արտասանելով՝ ծանր կերպով ձեռքերը կը շփէր ու Երանուհու երեսը կը նայէր, որն

որ ջղային մի թեթեւ դողով ոտք ելաւ. ձեռքը մեքենայաբար դաշնակի մատնաստեղեաց վերայ դնելով, որոնք մեռելային զանգակի նման հնչեցին այդ սպառնալից լռութեան մէջ, յետոյ հօրը աղաչագին նայուածք մը տալով՝ ասաց.

— Հա՛յր, առաջին անգամն է, որ այսպէս երկար խօսում ես ինձ հետ՝ առանց բացարձակ միտքդ յայտնելու. դու ինձ երկիւղ ես պատճառում. գոնեայ...

Իսկ Գողթունի մի քմծիծաղով պատասխանեց աղջկայ այս խօսքերին. ձեռքիցը բռնելով՝ նորից իւր տեղը նստեցուց, յարելով.

— Երախայական զգացմունքներդ մէկդի թող և նստ այստեղ. դեռ խօսքս չեմ վերջացրել եւ դու շտապելու ոչինչ պատճառ չունիս. լսի՛ր... — Ու ցուցամատովը Երանուհու ծնօտը շօշափեց, ստիպելով որ գլուխը քիչ բարձրացնի և ապա շարունակեց.

— Այսօր, ինչպէս շատ օրեր, հանդիպեցայ կրկին Զարեհ իշխանին. նա համարձակ յայտնեց ինձ քո վերայ զգացած սէրն ու յարգանքը, եւ աղերսագին խնդրեց իմ հաւանութիւնը քեզ իրեն հարսնացնելու համար... Ես անշուշտ շատ ուրախ էի նորա առաջարկութիւնիցը եւ պատրաստ էի նաեւ տալ լիովին իմ հաւանութիւնը... սակայն նախապէս ուզեցի քեզ յայտնել այս ուրախաբեր լուրը, որպէս զի այսուհետեւ սառն չվարուիս նորա հետ, դու ես տաս քո հաւանութիւնը, ընդունիս նորա այցելութիւնները, որովհետեւ մտադիր եմ շտապել հարսանիքը... Այս մի անսպասելի բաղդ է, որ ձեռքից բաց թողնելը կատարեալ յիմարութիւն կը լինի։

Անբացատրելի ներքին այլայլութեամբ լսեց Երանուհի այս սոսկալի յայտարարութիւնը, ու մունջ կանգնած խորհում էր, մտաբերելով իւր մօր կրած տառապանքները հօրը ձեռքից.... Նա արդէն զգուած ու սարսափած էր ամուսնական վիճակից եւ շատ ցաւալի գաղափար էր կազմել այդ մասին։

Մանաւանդ իւր թշուառ մօր մահը այնպիսի մի լայն վէրք բացաւ իւր սրտում, այնպիսի մի սուգով պատեց, որ երկար ժամանակ դժուար պիտի լինէր մերկացնել այդ սիրտը սուգից՝ կրկին մի նոր սիրով կամ զգացմամբ պատելու համար։ Իսկ եթէ երբէք ժամանակը ջնջէր այդ սուգն ու ցաւը, եթէ այդ արդար եւ անաչառ հոգին սիրէր մէկին՝ ընտրելով իւր կենաց ընկեր, անշուշտ նա չպիտի որոնէր նորանում ոչ հարստութիւն, ոչ անուն եւ ոչ արտաքին ձեւեր, այլ անձնուէր եւ աննիւթ բարեկամութեան կապը պիտի լինէր իւր տաքինահիւս սիրոյ շղթան։

Գուցէ այս կուսական անմեղ հասակի պահանջները կամ երեւակայութիւնքը անիրագործելի համարուին իրականութեան մէջ, բայց նա առ այժմ այդ անգամ որոնելու ոչ տրամադրութիւն ունի եւ ոչ կամք։ Ո՞ւր մնաց լինել ամուսին մի որ եւ է անծանօթի... մի մարդու, որին հազիւ երկու կամ երեք անգամ հանդիպած ու հետը խօսած է, մի երիտասարդ իշխանի՝ դեռ կեանքի անփորձ եւ անտեղեակ. Նորա միայն վարդագոյն կողմերը տեսած է 'ի շնորհս իւր հարստութեան։ Ի՞նչ ընկեր կարող է լինել Երանուհուն զուարճութեամբ յափշտակուած մի անձ՝ պչրող եւ կանացի, իւր զինուորականի այրական համազգեստին մէջ իւղոտած մազերով, սրածայր բեխերով եւ ոտից խթանի բոժոժներով, որ քայլած ու խոնարհած ատեն կօշիկները միմեանց կը խփէ, մետաղի հնչիւններ հանելով. որոյ սպիտակ ձեռնոցները աւելի դուրս կը ցայտեցնեն երեսի թուխ գոյնը, գուցէ թեթեւամտութիւն. երկոտանի եւ շարժուն մի պահուճապատանք, որի մէջ ո՞վ գիտէ, կարող է թերեւս գտնուիլ մի ազնիւ սիրտ, և կամ զանազան ունակութիւններ ու ախտեր են ծածկուած, վատ դաստիարակութեան կամ բնոյթի հետեւանք։

Մօրը մահիցն յետոյ մի տարին հազիւ լրացած, հանել իսկոյն սգոյ սեւ զգեստները՝ հագնելու համար հարսանիքի կուսափայլ սպիտակ հանդերձանքն, գերեզմանատան մէջ

պարահանդէս սարքել... սրտագին արցունքները կեղծ ծիծաղի փոխարկել... զարհուրելի՜ էր... Մեքենայաբար տեղի կանգնեց Երանուհի, գնաց շտապ միջին սեղանի մօտ, ու ջուր լեցնելով բաժակում՝ խմեց մի քանի կաթիլ. յետոյ բարակ թաշկինակը շրթունքների վերայ սեղմած, միւս ձեռքը սեղանին յենլով, մտածկոտ ու շուարած կանգնէր, երբ հայրը նոյնպէս կանգնելով, մօտեցաւ ու հարցրուց.

— Ի՞նչ ես խորհում. ինչո՞ւ չես պատասխանում հարցիս...

— Պատասխանս համառօտ եւ կարծեմ շատ էլ բնական է, հայր։ Եթէ ասելու լինիմ, որ չեմ կարող ընդունել այդ առաջարկութիւնը, ոչ ոք ինձ չէ կարող մեղադրել, մանաւանդ դու, հայր իմ. որովհետեւ դու ինքդ ասացիր իմ երջանկութիւնը կը ցանկաս. եւ հէնց ես այդ [illegible] վերայ հիմնուելով, մերժում եմ համարձակ. զի եթէ հաւանութիւն տամ նորա կինը դառնալ, որին ոչ կը ճանաչեմ եւ ոչ կարող եմ զգալ փոխադարձաբար սէր կամ համակրութիւն, դժբաղդ պիտի լինեմ։ — Չի կարողացաւ շարունակել, եւ շուարած՝ հօրը երեսը կը նայէր, որ ուզել էր մի քանի անգամ ընդմիջել իւր աղջկան։ Նորա կնճռոտ դէմքի գունատութիւնը ցոյց էր տալիս մի մօտալուտ փոթորիկ. բեխերի միջից Փչալով շունչ փչեց, եւ ինքն իրան զսպելով, մօտեցաւ ընտանեբար, ու Երանուհու զգեստից կախուած սև ժապաւէններից մինը մատներին մէջ բռնած խօսելով ասաց.

— Այլ եթէ այդ խնամութիւնը ես ինձ, իմ նպատակների համար անհրաժեշտ համարէի, մէկ խօսքով մի բաղդաւորութիւն, այն ժամանակ չէի՞ր կամենալ արդեօք մէկդի թողնել այդ երեւակայական ցնորքները եւ հօրդ լաւութիւնը միայն աչքի առաջ ունենալ...

— Քո լաւութի՞ւնը, հա՛յր... բացագանչեց Երանուհի ընդմիջելով հօրը. ուրեմն քո լաւութի՞ւնը ուզում ես ապահովել, հիմնել աղջկանդ դժբաղդութեան մէջ. ո՛հ, չէ՛,

անկարելի է որ դու այդ բանին հաւանութիւն տաս։ Գուցէ հարստութեան հրապոյրը մի րոպէ գրաւած լինի քո սիրտը, սակայն խորհէ՛ր մի անգամ, որ այդ բանը ուրիշ մի արդիւնք չունի ինձ համար, բայց միայն դառնացնել իմ դրեթէ բանդարկեալի վիճակս, զուրկ ամեն իմ տարիքս ունեցող աղջկանց անմեղ հաճոյքներից. անմայր, տխուր, լքեալ, մինչեւ անգամ չի վայելելով քո խանդաղատանքը, աշխատում եմ լքցնել իմ մենարանի առանձնութիւնը մօրս քաղցր յիշատակով, որ միակ մխիթարանքս ու սրբազան պարապմունքս է։ Դու ուզում ես նորանից էլ զրկել ինձ. ուզում ես այս սուրբ յիշատակով տոչորող ու չնչող սրտին մէջ մի օտարի դէմ յակամայս ատելութիւն սերմանել, որի անշուշտ գերին կամ վերջ ի վերջոյ զոհը կարող եմ դառնալ։ Ո՛չ, հայր իմ, ո՛չ. Աստուած չի ներեր այդ բանը, չի թողներ որ վաղամեռիկ մօր գերեզմանը նորա աղջկանը հարսանեաց պսակին սեղան եւ զոհի բագին դարձնեն։

Արցունքները խցկեցին ձայնը կոկորդում, եւ սկսեց հեծկլտալ. մինչ դեռ հայրը՝ երկու ձեռքերը քամակին վերայ ծալած, կատաղի աչքերը գետին սեւեռելով, աջ ու ձախ ման կու գար սրահին մէջ։ Ցանկարծ երկու երեք անգամ կեղծ հազաց, իբրեւ թէ մի զայրոյթի ազդակ խեղդել ուզենար կուրծքին մէջ. մօտեցաւ աղջկան, կանգնեց մօտը, ու աջ ոտքը մեքենայաբար դողացնելով, ցասկոտ հեգնութեամբ ասաց.

— Ա՜յսպէս ուրեմն հա՜.. բացագանչեց։ Ա՞յս է իմ այսքան տարուայ քեզ տուած դաստիարակութեանս պտուղը. Դպրոցում ստացած ուսումներդ հօրդ կամքը քեզ բռնաբարե՞լ սովրեցրին, նորա դառն եւ լիրբ պատասխաննե՞ր տալ, ընդդիմանա՞լ։

Այստեղ նկատելով Երանուհու յակամայս ցաւալի մի շարժումը, ձայնը մեղմեց, եւ համոզողական կերպով բառերը չեշտելով, շարունակեց.

— Հասկացէ՛ր գոնեայ մի անգամ ընդ միշտ, որ ես ոչ

ոքի չարիք չեմ կամեցեր, ո՛ւր մնաց իմ աղջկանս. սակայն չեմ էլ թոյլ տար, որ այլք նոյնը ցանկանան ինձ համար, մանաւանդ երբ ձեռնարկած գործիս մէջ նիւթական շահերս լինէին ինձ շարժառիթ. այն ատեն վա՜յ նորան, որ կը յանդգնի խոչընդոտ կանգնել իմ ճանապարհի վերայ... Անկասկած ես անարգել կը փշրեմ եւ յառաջ կը գնամ... ո՛վ որ լինի, կատուին ճիրանները, մինչեւ անգամ օձին թունաւոր ակռան կարող եմ խլել, եթէ ինձ վնասել ուզենան... հէ՜ հէ՜... — Երանուհի գլուխը կը շարժէր, մեղմ մերժողական կերպիւ։ Գողթունի այս տեսնելով, մռնչեց.

— Մայրդ էլ յամառ էր քեզ նման, բայց վերջապէս լռեց...

Այս վերջին բառերը՝ զայրագին հեգնութեամբ արտասանուած, չարաչար վիրաւորեցին համբերատար աղջ[illegible] այնպէս որ քիչ մնաց նուաղեալ գետին ինկնար. Սա[illegible] բոլոր ոյժը քաղելով իւր որդիական սիրոյն մէջ, ա[illegible] խրոխտութեամբ բարձրացուց գլուխը. եւ բողոքանաց [illegible]տակ մի ձայնով, որ յատուկ է ընդհանրապէս երկար ժամանակ ընկճեալ եւ բռնաբարեալ անձանց, որոնք ի վերջոյ իրաւամբ կ'ապստամբին, գոչեց.

— Լսէ՛, հա՛յր, եւ յիշէ՛ր միանգամայն, որ դու պարտական ես յարգել իմ մօր յիշատակը, այդ տառապեալ կնոջ, որի ամբողջ կեանքը արցունք, ողբ ու կոծ էր քո պատճառաւ... Նա այժմ Աստուծոյ է պատկանում. անմահութեան աւար դարձած՝ ազատուած է աշխարհէց, եւ ոչ ոք իրաւունք չունի նախատել մեռեալին ոսկերոտիքը։ Մտաբերէ՛ր, հայր, որ մի Աստուած կայ երկնքում, որ չի ներեր բնաւ առ ինքն փոխադրուած հօգւոց յիշատակին եղած նախատինքը եւ ոչ անմխիթար որբին արցունքը... Պատրաստ եմ ամեն բան տանել, ամեն բանի ներողամիտ լինիլ. սակայն...

Դեռ խօսքը չէր աւարտած, մինչ հայրը կատաղի գալով՝ դէմը արձանացաւ. ձեռքի բուռը օդին մէջ բարձրաց-

նելով, ուզում էր գուցէ հարուածել իւր զաւակին, երբ յանկարծ դրան կողքից խեղդուկ մի ճիչ ստիպեց նորան գլուխը դարձնել։ Նա տեսաւ պառաւ խնամակալուհուն՝ շուարած ու գունատ, որ շտապէր գրկացը մէջ առնել արտասուաթոր Երանուհուն, և կցկտուր ձայնով մրմնջէր. Տէր Աստուած, դու ողորմիր. յետոյ աղային դառնալով կ՚ասէր.

— Գոնեայ փոքր ինչ գութ ունեցէք, մեղք է ձեր աղջկան. վերջապէս մտածեցէք, տանը ծառայք կարող են լսել այս աղմուկը, յետոյ ձեր պատիւը...

Գողթունի ուշադրութիւն անգամ չդարձնելով նորա խօսքերին, մօտեցաւ բազկաթոռին մէջ հեծեծող աղջկանը. և հազիւ հազ բարկութիւնը զսպելով, արտասանեց խրոխտաբար.

— Լսի՛ր, Երանուհի. արցունքներ ու ողբերգական կերպերն բոլորովին անտեղի են եւ չեն կարող դղրդել իմ դիտաւորութիւնը. ասածս ասած է։ — Յետոյ դառնալով խնամակալուհուն, որ ձեռքերը միմեանց կցած, աջ ու ձախ գլուխը տատանէր, հրամայական ձայնով ասաց.

— Ահա հրապարակաւ նորա առաջ քեզ եւս ասում եմ. աշխատի՛ր համոզել սորան, թէ կենդանիք չեն կարող մեռեալներին զոհել իրենց շահերը... Կենդանի մնացողներին ապրուստ եւ մի դիրք հարկաւոր է ունենալ ընկերութեան մէջ։ Մեռեալների հետ գործ չունիմ, այլ կենդանիներից կը սպասեմ ապագայ. ջանա՛ սորան հասկացնել այս։ Եթէ այսուհետեւ կրկին յանդգնի մերժել իմ առաջարկութիւնները, վիճել ինձ հետ, այն ժամանակ կարող եմ ենթադրել, որ դու ես գրգռում նորան ինձ դէմ, եւ յետոյ... Ուստի իմացի՛ր, որ աղջիկս իշխանուհի պիտի լինի, այդ վճռած է. եթէ մինչեւ անգամ բոլոր ունեցածս նորա օժիտ պահանջեն, պատրաստ եմ տալու։ — Յետոյ դառնալով Երանուհուն.

— Է՛հ, բաւակա՛ն են հառաչանք եւ արտասուք, կանացի տկարութեան ախտանիշներ, որոնք կարող են ծիծաղի փոխարկուիլ հարսանեաց հետեւեալ օրը...

Խեղճ Երանուհի խօսելու անկարող, հեծկլտալով, ձեռքերը մերժողական նշանով օդի մէջ կը տարուբերէր… Հայրն այս տեսնելով, յարձակուեց. եւ կոպտաբար մի կողմ հրելով խնամակալուհուն, որ ուզում էր արգելել, ուժգին բռնեց աղջկան բազկիցը ու ցնցելով բարձրացուց նորան. յետոյ խուլ բարկութեամբ եւ կերկերեալ ձայնով հրամայեց.

— Կորի՛ր սենեակդ, գնա՛… յուսամ մինչեւ վաղը միտքդ կը փոխուի: — Յետոյ յամրաքայլ մօտեցաւ սեղանին, առաւ ճրագը, եւ առանց իսկ նայելու աղջկայ վերայ, հայհոյանք մրմռալով անհետացաւ միջին դռնից:

Երանուհին առանց մի բառ արտասանելու դրեց իւր ձեռներով յուզեալ գլուխը պառաւ ընկերուհուն կուրծքին վերայ, եւ երկուսն էլ արտասուէին:

Սենեակը լուսաւորուած էր աղօտ մի կանթեղով միայն, որն որ վառած էին անկիւնում զետեղուած ոսկ[illegible] շրջանակով Աստուածամօր պատկերին առաջ. որի մ[illegible] աչքերը լուսաւորուելով, մթութեան մէջ կ'երեւէր գթալից հայեացքը, որ կը տարածէր այդ տառապեալ խմբակին վերայ, իբրեւ պատասխան եւ քաջալեր նոցա աղերսանաց հայեացքին:

Գ

Այն երեկոյից սկսեալ զգալի մի փոփոխութիւն երեւեց Երանուհու վարմունքի եւ բնաւորութեան մէջ. տարտամ եւ անհաստատ էր նայուածքը, խօսքերը մեղմ եւ սառն, գլխակոր, կարծես բոլորովին պատրաստ՝ գալիք եւ ներկայ թշուառութեանց անձնուէր մի ողջակէզ դառնալ:

Մանաւանդ երկրորդ օրուայ հօրը եւ իւր մէջ տեղի ունեցած բանակցութիւնից յետոյ՝ նա բոլորովին կորցրուց իւր հաստատամտութիւնը:

Գողթունի առաւօտեան կանուխ մտնելով իւր աղջկան սենեակը, աշխատել էր քաղցրօրէն համոզել նորան, ասելով.

— Ես մտադիր չեմ բռնաբարել քեզ, աղջիկս, քաւ լիցի․ սակայն խորհիր մի անգամ, որ ամբողջ կեանքումս աշխատել եմ՝ մեծամեծ դժուարութեանց յաղթելով, ունենալ մի դիրք, մի փոքր ինչք ու հարստութիւն, եւ մինչեւ այժմ ստիպուած եմ տակաւին գլուխ խոնարհեցնել զոռոզ հարուստների առաջ։ Այն գործարանը որ բաց արի, վնասից աւելի ոչինչ չէ տուել ինձ․ դեռ չի կարողացայ նորա պատճառաւ արած ծախքերս ծածկել... Եւ հիմակ դու ես իմ միակ յոյսս․ եթէ դու ի սէր քո հօրդ՝ վերջապէս նորան ամօթից ազատելու համար՝ հաճութիւն տաս Զարեհ իշխանի կինը դառնալ, մի խօսքով, եթէ մի իշխան փեսայ ունենամ, որոյ շնորհիւ կարող լինիմ ծանօթութիւններ հաստատել եւ մի կերպով ազատուիլ իմ պարտքերից, այն ատեն յուսամ՝ ինձ բաւական կը լինի գործարանիս բերած շահը հանգիստ ապրելու համար... Եթէ ոչ, կարելի է որ ընկնեմ յետին աղքատութեան մէջ, եւ կամ այս անելանելի դրութիւնից ազատուելու համար կարելի է որ... — Նա չաւարտեց խօսքը, տեսնելով Երանուհու երկիւղալի հայեացքը։ — Ո՛հ, ո՛չ, ո՛չ, աղջիկս․ եթէ մի ցածութեան ընդունակ լինէի... այն ատեն... Այսու հանդերձ, կարծեմ, քեզ հաճելի չէ քո սրտի ազատութիւնը վայելելու համար տեսնել հօրդ բանդում կամ չքաւորութեան մէջ... Դիցուք թէ չես սիրում իշխանին․ բայց խորհիր, որ նա միակ մարդն է, որին կարող ենք ապաւինել, միակ ապաստանելու տախտակը այս փոթորկալից դրութեան մէջ։

Գողթունի փոքր ինչ սպասեց և ապա յարեց.

— Միթէ քեզ համար պարծանաց առիթ չէ՞, աղջիկս, երբ յաղթելով քո հակակրութիւնն ի սէր քո հօր փրկութեան, մի փոքր զոհողութիւն անես, նորա ազատարարը դառնաս, ամուսնանալով Զարեհ իշխանի հետ, որ գուցէ այնքան հակակրելի եւ վատ չէ, որքան որ դու կարծում ես... — Յետոյ սենեկին մէջ մի շրջան անելով, յարեց կեղծաւորաբար․ Մի՛ կարծիր, որ ես չեմ գնահատում

այդ սուրբ յարգանքը, որ սրտումդ տածում ես մօրդ յիշատակին համար. բայց ես էլ, իբրեւ հայր, գոնեայ կիսով չափ իրաւունք չունի՞մ քո ծնողը կոչուելու, քո կարեկցութեան արժանանալու:

Եւ նկատելով Երանուհու լռութիւնը, որ կարող էր իբրեւ համաձայնութիւն մեկնել, ձայնն ու կերպը փոխելով, ժամացոյցը հանեց ու նայելով ասաց. Օ՛, արդէն ժամը տասն է, ինձ հարկաւոր է շտապել երթալ գործատուն... Հա՛, լաւ միտքս եկաւ. կը հաճի՞ս այս երեկոյ Մուշտայիդի այգին երթալ: — Երանուհի հազիւ նշմարելի կերպով գլուխը ծռեց. Գողթունուն այդքանն էլ բաւական էր, որ գլխարկը առնելով ասաց. Այսպէս ուրեմն երեկոյեան ժամը 5ին երկուս միասին կ'երթանք: Ես կու գամ ձեզ առնելու: Ցտեսութիւն, աղջիկս:

Երանուհին ոչ մի բառ չպատասխանեց: Նա այժմ գտն էր մի տաղտուկ դրութեան մէջ, խորհելու եւ որոշելու կարող, դժբաղդ ճակատագրին անձնատուր եղած, նման երեխայի, որի ձեռքերը բռնած ման են ածում փողոցն մէջ, և որի շուրջը բարձած աղմուկն ու գտնուած առարկաները կարող են միայն ապշեցնելով թմրեցնել նորան:

Երեկոյին հայր եւ աղջիկ՝ խնամակալուհուն հետ մի շքեղ կառքի մէջ նստած, գնացին Մուշտայիդ: Գնալ ու գալը գրեթէ 50 վայրկեանի ճանապարհ՝ կառքերու խառն բազմութեան եւ փոշւոյ մէջ, հրապուրիչ մի շրջագայութիւն չէր անշուշտ Երանուհու համար: Սակայն հօրը կամքը դէմ չի վարուելով՝ ստիպուած էր բազմութեան երեւիլ, այդ ուրախ եւ ժպտերես ու նորելուկ հանդերձներով պճնեալ տիկնանց շարքում իւր սգաւորի պարզ սեւ գլխարկովն ու զգեստովը հակապատկեր հանդիսանալ: Կառքերի կակուղ բարձերին վերայ թեք ընկած անձինքների ոմանց քաղաքավարական ողջոյնը նա ստիպուած էր փոխադարձաբար ընդունել, մինչեւ անգամ ժպտել յակամայս, ներքին վիշտը արտաքուստ չի յայտնել: Մանաւանդ երբ պարտէզի ծա-

ուղիներին մէջ կառքերը կը սկսին յարմարաքայլ շրջագայել, այնտեղ բոլորը մօտից միմեանց հարուստը եւ երեւը կը զըննեն. այդ տաւմնոյն քննութիւնը անշուշտ աւելի կանանց սեռին կը վերաբերի։

Իսկ երիտասարդք, սպայք եւ մեծատանց որդիք, ոմանք հեծեալք, այլք կառքերի մէջ, աչքերով տիկնանց կ'ուտեն. եւ մի րոպէ զբօսարանի դրանն առաջ կանգնելով, դարձնելով կամ որ եւ իցէ մի ըմպելիքով կը մեղմեն իրենց ծարաւը՝ առանց մի րոպէ նստելու։ Շատ քիչերը բարձրանան զբօսարանի սանդուղներից, ուր տեղից կը լսուին առանձին սենեակներին մէջ Կախէթի գինարբութեամբ գարթացած մի քանի խառնակեաց ստարուհիների ծիծաղին քրքիջը ու յստակ ելեւէջները, եւ կամ սրտաբաց թամադայի եւ սեղանակցաց գինեհոտ շրթանց պռոշտիների չփչփոցը։ Այս ներքին վիճակը բոլորովին չի համապատասխաներ արտաքինին. դուրսը հազիւ թէ լսելի են կառաց անիւների աղմուկը, մօտակայ գործարանի շոգւոյն միակերպ ֆշֆշալը եւ գազոտ պաղպաջրերի խցանին պայթիւնը։

Պարտիզում ամենքը լուրջ են եւ զգաստ, ուր միմեանց տեսնելու համար մաքուր օդ ծծելը առիթ առնելով, այնտեղ են եկած. այլ գեղեցիկ տիկնայք՝ երիտասարդներին զմայլեցնելու։

Գողթունի կառքին մէջ նստած՝ անոյշ ժպիտով եւ հովանաւոր նայուածքով երկու կողման ողջունողներին վայելուչ կերպով կը պատասխանէր։

Մին քանիսը մատնանիշ կ'անէին նորան, անուանելով բարերար աղան. ուրիշներն՝ հաւատք ընծայելով նորա մասին տարածուած բարի լուրերին, պատկառանօք կ'ընդունէին նորա ողջոյնը։ Կային, որ չէին համակրում նորան, կասկածում էին եւ, սակայն թուով քիչ. չէին կարող ազդեցութիւն ունենալ ընդհանուրին վերայ։

Այնտեղ Գողթունի բոլորովին ուրիշ մարդ էր պատկերանում. ոչ խոժոռ նայուածքն ունէր եւ ոչ այդ անգութ

ծիծաղը․ մանաւանդ այն երեկոյին սովորականից աւ
վստահեցուցիչ էր իւր գեմքի արտայայտութիւնը։ Երան
հու հետ ունեցած խօսակցութիւնը մի ամոքիչ յոյս էր տա
իւր սրտին։ Եւ անկասկած, եթէ իշխանը մի լաւ բանա
իւր ճանկում, կամ լաւ եւս ասել՝ աղջկանը սիրով,
ժամանակ մի քանի հարիւր հազարներ ստանալու յոյս կ
իրեն համար։ Անշուշտ, եթէ իշխանը խելակորոյս կերպ
սիրէր Երանուհուն, միթէ կարո՞ղ էր ի բաց թողնել
սիրելայն հօրը օգնելու առիթը՝ մի գումարի փոխադարձ
թեամբ, որ բաղդատելով իւր հարստութեան՝ քառորդ մա
անգամ չէր համարուիլ։

Յետոյ գուցէ կարողանայ մի օր հոգաբարձու դառն
քաղաքային բանկի մէջ․ ո՞վ գիտէ… այդ ապագան է,
րին քիչ առ քիչ կարող է տիրանալ․ յոյս ունի իւր
ճարպիկութեան նորագիւտ միջոցներին վերայ, Յաջ
ինքն իրեն կ'երթայ։ Եւ մի անգամ որ աղջկանը տե
ւորէ, այնուհետեւ ո՞վ կարող է նորան մեղադրել, եթէ
ամուսնոյն մահից յետոյ ամուսին առնէ այն կնոջ, ո
հետ արդէն վաղուց ծանօթ էր, որոյ համար զգար գ
անսանձելի եւ մարմնական մի կիրք, որն որ ստէպ յա
նալով, կարծես աւելի սաստիկ կը ստիպէր նորան՝ կն
թեան առնել այդ վատթար և անզգամ արարածին․
ուրիշ մայր տալ իւր աղջկան, որին աղախինը անգամ
ժանի չէր լինել։

Այդ կինը գրեթէ ոչինչ չունենալով, համարեա մի ժ
մանակ նորա հետ Տփղիս եկած, անկասկած չէր կա
Գողթունուն շահասիրութիւնից չդրդել այս միութիւնը
տարել․ անշուշտ ունէր մի ուրիշ զօրաւոր պատճառ
Սակայն ինչ որ էլ լինի, ամենից առաջ հարկաւոր էր
ճարել, հարստանալ․ եւ այդ մի միայն կարելի էր Երան
հուն իշխանի վերայ ազդած սիրոյն շնորհիւ։ Այո,
աղջկան զոհաբերութեամբ, որին պիտի ծախէր կամքին
կառակ, անարգաբար իւր ընչասիրութիւնը յագեցնելու

զանազան ամօթալից նպատակներին ծառայելու դիտաւորութեամբ։ Պիտի ծախէր այնպէս, ինչպէս հասարակաց տների մէջ ծախում են կանանց. սա տարբերութեամբ, որ նոքա ծախվում են իրենց անառակ հաճութեամբը շատ մարդկանց եւ քիչ փողով, իսկ Գողթունի ծախում էր իւր աղջկան առանց իւր հաճութեանը մի մարդու՝ շատ փողով։ Սոսկալի եւ արիւնազանգ նախատինք, որ երբեմն շահասէր ծնողք անում են իրենց անմեղ զաւակացը, եւ այնպէսով յօրինում են դժբաղդ գերդաստաններ եւ քանդում են տներ։

Երկձի կառքը՝ շարունակելով իւր պտոյտը՝ հետեւում էր միւս կառաց, երբ խնամակալուհին մեղմով դրդեց Երանուհու թեւը՝ ցոյց տալու համար երեսուն քայլ հեռաւորութեամբ իշխան Ջարեհին, որ մի սպիտակ ձիու վերայ հեծեալ՝ հեռուից նորանց նշմարելով, փութանակի յառաջ կը գար։ Գողթունի եւս իսկոյն նշմարելով, հրամայեց կառապանին՝ որ կանգնի. եւ կիսով չափ տեղից բարձրանալով, փեղոյրը բացաւ ու յարգանօք ողջունեց։ Իշխանը աճապարեց պատասխանել Գողթունու ողջունին, զինուորական գտակը ձեռքում բռնած՝ աջ այտին մօտ. մի քանի քաղաքավարական խօսքեր արտասանեց, որոց Երանուհի պատասխանէր մի մունջ ժպիտով։

Յետոյ իշխանը առաջարկեց մի փոքր ման գալ պարտիզի մէջ. առաջարկութիւն, որ շատ սիրով ընդունեցաւ Գողթունուց։ Իշխանը ձեռք կարկառեց օրիորդին եւ իւր խնամակալուհուն՝ կառքից իջեցնելու համար, եւ մտան պարտիզի միջին հրապարակը՝ զբօսարանին հանդէպ շրջապատուած խիտ ծառուղիներով։ Իշխանը քայլում էր Երանուհու մօտից, առանց երկար ժամանակ մի բառ կարողանալ արտասանելու։ Բայց նայելով նորա դէմքի գունատութեան եւ շրթանցը դողդողալուն, կարելի էր եզրակացնել՝ որ սրտումը ունէր մի որ եւ է զօրաւոր շարժառիթ այնպէս այլայլելու. մի բուռն պատճառ, որին դժուար է իսկոյն սէր անուանել. կարող էին տրփանք լինել։

Երբեմն օրիորդի կողմը դառնալով, տեսնում է նորա ծանրաբարոյ ու լուրջ կերպը, եւ չէ համարձակվում մի բառ արտասանել. Թերեւս չէր էլ ուզում խանգարել նորա մտածութիւնքը... Այսու հանդերձ երջանիկ էր այն րոպէին, գտնուելով Երանուհու կողքին, շնչելով նորա հետ մի և նոյն առողջարար եւ մաքուր օդը, ուր խառնվում էին շրջակայ ծառերի անուշահոտ բոյրը։ Այո՛, սիրում էր իշխանը, սիրում էր... Սակայն ինչ տեսակ սիրով. նորա կանացի նիւթական ձիրքերի՞ցը գրաւուած, թէ հոգեկան ազնիւ յատկութիւններիցը, որոց՝ պէտք է ասած՝ իշխանը չէր կարող դեռ տեղեակ լինել։

Գողթունի այդ տարտամ դրութիւնից իշխանին հանելու նպատակաւ ասաց.

— Վաղո՞ւց է՝ որ այստեղ չէք եկած, իշխան։

— Այո, պատասխանեց իշխանը. մանաւանդ որ վերջին շաբթու մէջ շարունակ անձրեւների պատճառաւ կա-ժոկ անգամ երթալը գրեթէ մի հրապոյր չունէր։

— Ե՞րբ պիտի փոխադրուին ձմեռնային կլուբի մէջ։

— Կարծեմ երեք օրից, պատասխանեց իշխանը. յետոյ դիմելով Երանուհուն. Այլ դուք, օրիորդ, գրեթէ բոլորովին տանից դուրս չէք գալիս. հաւանականաբար ձեզ չեն հրապուրում բոլոր այս զբօսանաց տեղերը։

— Ո՛չ, ասաց Երանուհի, այդ գրեթէ սովորութիւնից կախումն ունի. ես վաղուց տանը նստելու աւելի վարժուած եմ։

Իշխան Զարեհ իւր բարձր հասակը օրիորդին կողմը խոնարհեցնելով, կաղամախի ծառի նման, որ իւր մօտը ծաղկած տկար բուսիկը կամենար ճմլել իւր ծանրութեան տակ, ասաց ժպտելով.

— Ներեցէք ինձ ասել, օրիորդ, որ դուք փոքր ինչ անձնասէր էք այդ մասին. որովհետեւ պէտք է 'ի նկատի ունենաք ուրիշներին, խորհելով որ եթէ դուք չէք ցանկար նոցա տեսնել, կան անձինք՝ որք իրենց բաղդաւորութիւն

կը համարին տեսնել ձեզ, խօսել ձեզ հետ եւ... — Չի կարողանալով յաջողութեամբ աւարտել իւր սիրահարի ճառը, չփոթուած երեխայի պէս Երանուհուն կը նայէր։ Նորա համար շատ ծանր էր լսել այնպիսի մի բարբառ առաջին անգամ, եւ այն այդ անձից, որի համար ոչ սէր կարող էր զգալ եւ ոչ համակրութիւն։ Սակայն իւր կանացի հպարտութիւնն էլ չէր թոյլ տար չը պատասխանել, որովհետեւ կանացի նրբամտութեամբ հասկանում էր, որ իւր լռութիւնը իշխանը ըստ իւր քմաց եւ հաճոյից կարող է մեկնել. ուստի այդ բանի առաջն առնելու համար պատասխանեց.

— Ես շատ շնորհակալ եմ այն անձինքներից, միանգամայն եւ կը ցաւիմ նոցա վերայ, որոնք կարողանում են հաճոյք զգալ՝ տեսնելով մի անձի, որ գրեթէ անզգայ եւ անտարբեր է ամեն բանի...

Այս վերջին երեք բառերը դիտաւորութեամբ չեշտելով արտասանեց, որ շատ մխիթարիչ եւ քաջալերական չէին իշխանի համար։ Բայց խնամակալուհին, որ բնիկ մի հակակրութիւն կը զգար զինուորականների դէմ, սրտից ուրախ էր, թէպէտ տեսնում էր իշխանի շփոթութիւնը, գունատ պատկերը. եւ ինքն իրան խորհրդածելով կ՚ասէր. Գուցէ եւ սիրում է, բայց ի՞նչ օգուտ, եթէ Երանուհին չէ սիրում նորան... Հետեւաբար ո՞վ կարող է հաստատել, որ նորա այժմեան սէրը պիտի տայ Երանուհուն երջանկութիւն եւ հանգիստ. քի՞չ սիրահարներ կան, որոնք չ՚ամուսնացած, պատրաստ են կեանքերնին զոհել իրենց պաշտամանց առարկային, եւ մէկ քանի ամսից յետոյ հէնց իսկ իրենց սիրոյ առարկան կը զոհեն իրենց կենաց հաճոյիցը, կամ ուրիշ կանանց սիրոյն... Սիրում է. էհ... ի՞նչ արած. կը սիրէ ու կը դադրի...

Գողթունի էլ լսած էր իւր լրտեսի ականջովը Երանուհու խօսքերը. եւ յանկարծ զայրոյթը զսպելով ու չարութեամբ հազալով, ձայն տուաւ իշխանին.

— Եթէ կը կամենաք, նստինք փոքր ինչ այս սեղանին մօտ, ասաց նա ու գաւազանովը հեռուից նշան արաւ ծառային, որ աթոռներ բերէ։ Իշխանը կանգ առաւ, եւ խթանները միմեանց խփելով, գլուխը ծռեց 'ի նշան խոնարհ հաւանութեան։ Խնամակալուհին Երանուհու աջ կողմը նստեց նստարանի վերայ. մինչդեռ իշխանն ու Գողթունի աթոռներ առած, նոցա դէմը բազմեցան։

Նստած խօսում էին անկարեւոր եւ օտար նիւթերի վերայ. ընտանեկան երեկոյթ կլուբում, Թատրոն, Դումայի կարգադրութիւնք։ Երբ նոքա խօսէին, մի վրացի մուրացիկ կին՝ կարկատաններով ծածկեալ, կեղտոտ մի զգեստ հագած, գրկում մի երեխայ, խիտ եւ խուխ մազերիցը պռողեալ եւ աչքերովը՝ ցաւագին նայելով, մօտեցաւ ակումբին ողորմութիւն խնդրելու։ Երանուհի այս նկատելով, իսկոյն խնդրեց խնամակալուհուց փողի քսակը, եւ մի հինգ րուբլիանոց ամաչելով ու կարմրելով՝ մատուց մուրացկուհուն։ Երբ այս վերջինը երեսը խաչակնքելով՝ շնորհակալութեան աղօթք եւ օրհնէնք կը փափսար, իշխանը ժպտելով եւ զգացուած, քաղաքավարի ընտանութեամբ ասաց Երանուհուն.

— Ո՛րքան բարի եւ ողորմասիրտ էք, օրիորդ... — Ու յետոյ Գողթունուն դառնալով յարեց.

— Չեմ զարմանար օրիորդի առատաձեռն բարերարութեանը. նա դորանով ապացուցանում է ում դուստրը լինելը։

Գողթունի ուսերը բարձրացնելով, գլուխը խոնարհեցուց, եւ ձեռքերը բաց արաւ, իբրեւ թէ ասել կամենար մի կեղծ համեստութեամբ, թէ ինչ մեծ բան. մեր ամենիս պարտքն է այնպէս վարուել, ես անարժան եմ ձեր գովեստին։

Թէպէտ մի որ.եւ է մուրացկան աղքատի հինգ րուբլի ողորմութիւն տալը սովորութիւն չէ եղած, եւ գուցէ շռայլ ցուցամոլութիւն գտնէին տեսնողները, բայց ով որ լաւ ճանաչէր Երանուհուն և նորա բնիկ ողորմած սիրտը, իսկոյն կ'ըմբռնէր, որ նա հինգ րուբլին շնորհեց ոչ միայն

մուրացկանին, այլ մի թշուառ մօր, յիշելով իւր դժբաղդ հանգուցեալ մօրը, որ իրաք նորանից շատ աւելի թշուառագոյն էր բոլորովին մի տարբեր վիճակի մէջ։ Եւ այդ չնչին ողորմութեամբ, կարծես, ուզում էր բողոքել մարդ թշուառութեան դէմ, մի չնչին յարգանք եւս մատուցանելով իւր սիրելի մօրը յիշատակին։ Իսկ մարդիկ, այդ բարի վարմունքը (բարերար աղա) հօրիցը ժառանգած համարեցին։

Սեպտեմբերի վերջերում երեկոները շատ ցուրտ կը լինին։ Ցերեկը քաղաքի մէջ տիրած բարեխառն եւ գաղջ օդը՝ արեւու մար մտնելուց յետոյ՝ տեղի կը տայ շրջակայ լեռներից իջնող սառնութեան. ուստի իւրաքանչիւր ոք կը փութայ տուն վերադառնալ բաց ախորժակով, ուր տաք թէյը իրեն կը սպասէ։

Գողթունի իւր ընտանիքով նոյնպէս պատրաստուեցաւ վերադառնալ տուն, կրկին եւ կրկին խնդրելով իշխանից, որ իրենց պատուէ իւր այցելութեամբը։ Իշխանը լսելով Գողթունուն, տեսնում էր նաեւ Երանուհու երեսին անտարբեր սառնութիւնը։ Տխուր քաղաքավարութեամբ շնորհակալ եղաւ, խոստանալով որ առաջին առթիւ կը փութայ օգտուիլ այդ հրաւէրից, եւ կու գայ անձամբ մատուցանել իւր յարգանքն ու համակրութիւնը։ Այս խօսքերը արտասանեց շեշտելով և վարանմամբ՝ կրկին Երանուհու երեսը նայելով, որ զգալի կերպիւ և ծանրութեամբ խոնարհեցնում էր։ Իշխանը մի երկու վհատեալ քայլեր անելուց յետոյ՝ թոյլ կերպով գլուխը ծռեց, առանց այս անգամ խթանները միմեանց խփելու. այդ երաժշտութիւնը անհամաձայն էր սրտին տխրութեան հետ։

Եւ երբ Գողթունի ցած ձայնով կը յայտնէր Երանուհուն իւր դժգոհութիւնը իշխանին արած սառն ընդունելութեան մասին, արդէն նա իւր սպիտակ ձիուն վերայ շտապով հեռացել էր այն տեղից։

# Դ

Այդ երեկոն Երանուհուն համար շատ յուզեալ և տխուր անցաւ, ինչպէս շատ անգամ։ Հայրը տանից դուրս էր գնացել ըստ սովորութեան, թէյ խմելուց յետոյ. իսկ Նա մնալով առանձին իւր խնամակալուհու հետ, չէր կարողանում մինչև իսկ լսել Նորա միակերպ, այլ բարի սրտից բղխած մխիթարական խօսքերը, որ սովորութիւն ունէր մի ձայնի վերայ արտասանել։ Գիշեր բարի մաղթելով Նորան, գնաց ու սենեակը առանձնացաւ. և անկողին մտնելով, առաւ իւր պաշտելի հեղինակին՝ Շէքսպիրի մի հատորը և սկսաւ կարդալ։ Դիպուածով բացել էր այն էջերը, այն հրաշալի տեսարանը, ուր Լիր թագաւորը ճանաչում է վերջապէս իւր սիրելի և անձնուէր դստեր՝ Կորդէլիային, և գնահատելով Նորա որդիական սէրը, օրհնում է Նորան և լալիս։ Հրաշալի ողբերգութեան այդ պատկերը միշտ խորին և բուռն տպաւորութիւն թողած էր Նորա վերայ։ Բայց այս անգամ անհուն և տարօրինակ հոգեկան յուզմանց մէջ գըտնուելով, աւելի ուժեղ զգաց այդ տպաւորութիւնը, աւելի յափշտակիչ և վառ գոյներով հանդիսացան իւր երևակայութեան առաջ համակրելի և հայրասէր դիւցազնուհուն զոհաբերութիւնքն, զրկանքն և հոգսերը։ Նա Կորդէլիային ներկայացնում էր իւր հոգւոյն սառն լուսեղէն շրջանակի մէջ բոլորուած մի պատկեր, որն որ կազմվում էր իւր առաքինական գործերից. գուցէ իւր կամշոտ, կրքոտ և հրամայելու վարժուած հօրը՝ ալէզարդ թագաւորին օրհնութիւնն էր Նորա աղբիւր։ Ինկած ամենայետին թշուառութեան մէջ, թափառելով ժայռոտ լերանց և անձաւների խորքում, որք զարհուրելի արձագանգներով կրկնում են Նորա ողբաձայն աղաղակները ու գանգատանաց հառաչանքները. իւր գահազուրկ հայրը փոխանակ արքայական ծիրանւոյ՝ վայրի բաղեղներով և եղէգներով է զարդարել իւր նիհար մար-

մինը ծածկող ցնցոտի կապան։ Արտասուաթաց և ցաւալի գլուխը՝ փոխանակ իշխանութեան թագին՝ թառամեալ և գլխակոր ծաղիկներով է պսակուած։ Նա լոյս է փնտռում իւր խաւար կենսացը մէջ կոյր աչքերով և կոյր մտքով. Նորա մօտ իւր ծաղրածուն խելացի է համարվում, Նորա չէ կարողանում փրկել իւր հաւատարիմ Կէնտին անձնանուէր բարեկամութիւնը անգամ։ Իւր աղջկանց ապերախտութեամբը հալածեալ ու շանթահար՝ թափառում է նա ինչպէս մի արքայազն Ագասուէր, մինչև որ գտնելով իւր խանդակաթ աղջկան, Կորդէլիային, ինկնում է Նորա գիրկը, ուր և գտնում է վերջապէս իւր աղօտ մտացը Նշոյլ և Յացեալ աւուրցը համեստ երջանկութեան մի յոյս։ Իւր միակ, անձնուէր աղջկան կողքին հայրն ու թագաւորը միանգամայն զարթնում և կանգնում են կրկին Նորա մէջ... այլ աւա՜ղ, ամենայն ինչ անշնչանում է մահուան գրկում։ Հօր սպիտակ ալիքը մեռեալ աղջկայ մարմնոյն պատանք է դառնում, որոյ վերայ և հայրը գտնում է իւր անտանելի ցաւոց գերագոյն հանգիստն ու անդորրը։

Կորդէլիայի միւս քոյրերը կորչում են թշուառացեալ իրենց հօր անէծքից։ Ո՜հ, այդ բոլորը սարսափելի է, քըստմնելի, սրտառուչ և ահեղ։

Սակայն ո՛չ. Երանուհին չէ կարող տանել, չէ կարող արժանանալ հօրը անէծքին... Նա խորհում էր, որ լիովին տրամադիր է՝ զգալով իրանում բաւականի ոյժ և անձնուիրութիւն, մի Կորդէլիա դառնալ իւր հօրը համար։ Նա անկասկած կարող է անել այդ բոլորը, ինչ որ արած էր Կորդէլիան ի սէր իւր հօրը՝ Թագաւորին։

Սակայն մի՞թէ Նորա հայրը կարելի էր բաղդատել Կորդէլիայի հօրը հետ. մի՞թէ Նա այնքան թշուառ և կարօտ էր իւր զոհաբերութեան։ Հետևաբար իւր անելու զոհը աւելի ծանր չէ՞ր, քան այդ արքայադստեր. զի հակառակ իւր հաւանութեան և կամաց՝ պահանջում են իրանից ամուսին, բարեկամ և վերջապէս կենակից ընտրել այն մար-

դուն, որին նա չէ սիրում. որի արտասուալից տխուր դէմքից պահանջում են միանգամայն գոհունակութեան ժպիտ:

Երկինքը միայն կարող է ծիրանի գօտի ցոյց տալ անձրևի կաթիլների միջից: Նա պատրաստ է տանել ամենայն նեղութիւն ու վիշտ, բաց 'ի այդ ամուսնութիւնից... Բայց այն ժամանակ մտաբերեց Երանուհի իւր հօր խօսքերը, թէ «իւր բաղդը կախուած է այս խնամութիւնից, և թէ առանց դորան պիտի ինկնէ յեղածայր չքաւորութեան մէջ»:

Յետոյ երևակայեց իրեն արդէն ամուսնացած իւր սրտին սիրելի, բայց աղքատ մի անձի հետ, և նոյն միջոցին աչացն առաջ եկաւ իւր հայրը, թշուառ, օրեկան հացին կարօտ: Գուցէ այն ժամանակ իւր աղջկանը համեստ օգնութիւնն էլ պիտի մերժէր արհամարհանօք, ողորմութիւն և նախատինք համարելով իրեն, և պիտի մեռնէր քաղցած մինչև վերջին շունչը անիծելով իւր զաւակին:

Դորանից յետոյ պիտի կարողանա՞ր արդեօք երջանիկ լինել, եթէ իւր սրտին սիրելոյն մօտ իսկ գտնուէր...

Ո՛հ, ո՛չ... անհրաժեշտ է, հարկաւոր է տեղի տալ անողոք ճակատագրին, գլխակոր և լռելեայն հնազանդել ծնողի հրամանացը, եթէ մինչև անգամ կեանքը զոհել հարկ լինի...

Մի րոպէ մնաց լուռ և երազացնոր: Գիրքը հանգչում էր ծնկացը վերայ, և իւր կուսական անուշահոտ սենեակում տիրած լռութեան մէջ որոշ զգում և լսում էր ազնիւ սրտին կանոնաւոր, այլ զօրեղ բաբախումը: Գլուխը ամուկին յենած կը խորհէր. բայց յանկարծ ցնցուելով, երկու ձեռքը ճակատին դրաւ և հարցուց ինքն իրեն՝ թէ «արդեօք այդ ծանր զոհողութեամբ պիտի կարողանա՞յ ինքն էլ արժանանալ հայրական օրհնէնքին. արդեօք կարող պիտի լինի՞ վանել նորա դէմքից այդ տխուր և վայրագ արտայայտութիւնը, որ այնքան սարսափ կ'ազդէր իւր վերայ»:

Նա միայն այս էր սպասում վարձատրութիւն իւր անձնուիրութեանը. ցանկանում էր տեսնել հօրը գոհ և ժըպ-

տերես. այո՛, վայելել նորա ժպիտը ի գին իւր ազատութեան...

Այլ իսկոյն մի տխուր ծիծաղ փայլեց իւր վեհանձն դէմքին վերայ, մինչ դեռ շրթունքը մրմնջում էին այս բառերը. «առաքինութիւնը առանց որ և է վարձատրութեան նկատմունքի կարող է առաքինութիւն կոչուել: Նա պէտք է որ իւր մէջը պարունակէ անձնուրացութիւն և անշահասիրութիւն, առանց դորան»... Անկողնին մօտ վառուող նըրագը արդէն պլպլալով արձակում էր իւր վերջին կայծերը, որ մի վերջին անգամ ևս անդրադարձաւ Երանուհու երեսին՝ փայլելով մի զոյգ արտասուաց մարգարտի մէջ, և յետոյ ամեն ինչ ծածկեց մի խորին, լուռ մթութիւն:

Քնած էր Երանուհի անմեղ և տանջեալ զոհերի յատուկ քնով, որի քաղցրութիւնը կրկնապատկվում էր իւր դիւցազնական որոշումից, այսինքն՝ հնազանդիլ անտրտունջ իւր հօրը կամաց:

Բայց առաւօտուն երբ աչքերը բացաւ, գիշերուան ցնորքների հետ փարատած էին հոգին ճնշող զգացմունքները: Սակայն կրկին իրականութեան մէջ վերադառնալով, զգում էր եթէ ոչ զղջումն, գոնէ մի ցաւ՝ իւր արած որոշման հետևանքը մտածելով. որովհետև որքան անձնուէր լինինք, որքան էլ հաստատակամ լինի մեր զոհաբերութիւնը, դարձեալ մի բնիկ զգացմանց ձայն կայ մեզանում, լիովին մեր անձնական շահերի սեպհական և օրինաւոր աղաղակը, որ կը բողոքէ մեր որոշմանց դէմ: Հոգեկան մեծ ոյժ և կորով է հարկաւոր լռեցնելու համար այդ ձայնը. և ուր որ նա կը լռէ, առաքինութիւնը այնտեղ միշտ կը յաղթանակէ:

Երանուհի ևս այդ ներքին պատերազմով յուզուած էր. այլ նա յուսալիր հաւատում էր իւր առաքինական ոյժին և նահատակի համբերութեանը, մի միայն իւր հօր բարելաւութիւնը 'ի նկատի ունենալով, որ նոյն գիշերը՝ առաւօտից մինչև երեք ժամը նստած էր կլուբում, մինչև փակման ժամու վերջին զանգակը: Հիւրասիրում էր իշխանին,

խօսելով. Նորա հետ ընտանեբար զանազան գործերի վրա-յօք, անուանում էր նորան իւր որդին։ Իսկ իշխանը Գողթունու վարմունքից քաջալերեալ և Շամպանի գինուց զուարթացած, խնդրում էր, որ յառաջիկայ շաբթուն՝ իւր անուանակոչութեան օրը՝ բարեհաճի երեկոյին իրեն մօտ գալ օրիորդ Երանուհու հետ. հրաման ուզելով միանգամայն Գողթունուց, որ թոյլ տայ իրեն՝ անձամբ գնալ հրաւիրել օրիորդին.

Գողթունի շնորհակալ կը լինէր իշխանից բոլոր իւր փափուկ դիտաւորութեան մասին, կրկին խնդրելով որ իրենց մօտ գալու համար երբէք հրամանի կամ թոյլտուութեան չսպասէ։

Այս սիրալիր խօսքերից յետոյ իշխանը մի բաժակ առաջարկեց բացակայից կենացը. և Գողթունունն իւր [illegible] հական կառքին մէջ առնելով, տարաւ և իւր տան դ[illegible] առաջ իջեցուց։

Լաւ զննելով իշխան Զարեհի պատկերը, չէր կարելի հաստատ ասել, որ նա մի անսիրտ և անխելք մարդ լինի. ընդհակառակը, իւր վարմանցը մէջ ընդհանրապէս ցոյց էր տալիս և բաւականին մտաւոր կարողութիւն, որ կորցրել էր իւր նախկին ոյժը՝ արած քէֆերուն շնորհիւ։ Ուսում առած էր Պետերբուրգում. և երկար ժամանակ էլ ապրած լինելով այդ խոնաւ և սառն կլիմային տակ, ոչ մի կերպիւ չէր կորցրեր իւր տփղիսեցու եռանդուն արիւնը և յափշտակուող ու հիւրասէր բնաւորութիւնը։ Իսկ իւր առած ուսման, կարելի է, մի մասին երեք քառորդը մոռացած լինէր. Երբեմն այնպէս տգէտ էր ամենապարզ խնդիրներու մէջ անգամ, որ համարձակ կարելի էր եզրակացնել, թէ Պետերբուրգում եղած տեղն աւելի գիշերները պարապեր է ուսմամբ քնոյն մէջ, այլ ցերեկին արթնութեան ժամանակ՝ քէֆով. այսու հանդերձ շատ է սիրում մատենագրութիւն, գեղարուեստիւք կը կրթէ ճաշակը. Սակայն արդէն երեսունին հասած մի մարդու մօտ, որ քէփ է սի-

րում, բնականաբար տկարանան ուղեղի ընդունակութիւն-ները և կը կորչի յիշողութիւնը, ճակտի մազերուն պէս, որք քիչ առ քիչ սկսած են մորթին վերայ լուանցք բա-նալ։

Գեղեցիկ սեռին մոլեգնաբար պաշտող և հակամէտ, ու-նեցել է ինքն էլ իւր ժամանակին սիրոյ յաղթանակներ ոսկեհեր օտարուհեաց ակումբին մէջ՝ իւր երբեմնսւին նման սևափայլ մազերի գանգուրներովը. — Թէպէտ այժմ էլ շա-րունակում է, ինչպէս մի անհրաժեշտ պէտք և ունակու-թիւն, հետևել կանանց։ Այդ է իւր գլխաւոր տկարու-թիւնն ու պակասութիւնը, որի վնասը շատ անգամ միայն ինքն է զգացել. — և այդպիսի մի պատկեր ունեցող անձ ուրիշ կերպ չէր կարող վարուել։ Սև ու մեղմահայեաց աչքերը մի տեսակ տափանաց կայծ ունէին. աւելացրէք նոցա վերայ մի մեծ քիթ՝ շարժուն ռնգունքով, նիհար այ-տեր և լայն պրկունքներ։ Սակայն այդ բոլորը կարող էին և նշանակ լինել մի քաջ ու ազնիւ սրտի։

Բայց ի՞նչպէս ենթադրել, որ այս կովկասցի Դոն–Ժու-անը, այս մեղրածուծ մեղուն, որ հազարաւոր ծաղկանց վերայ թռչկոտելով, նոցա բոյրն ու քաղցրութիւնն էր քա-ղել, նոցանից հեռանալուց յետոյ յանկարծ պիտի կանգնի և հանդարտի մի պարզ և համեստ ծաղկի հովանւոյն տակ այնպէս՝ իբրու թէ այլ ևս թևեր չունենար թռչտելու։ Ու՞վ պիտի կարողանար կտրել նորա թևերը. մի՞թէ նա պիտի բաւականանար մի ծաղկի մեղրովը. Մի՞թէ հոգւոյն սէրը այնքան զօրաւոր պիտի լինէր, որ յաղթէր անասնական զգացմանց։

Իւր կենաց մէջ առաջին անգամ նա հանդիպեցաւ մի աղջկայ, որի ազդած սէրը չէր նմանում ուրիշ կանանց մօտ զգացածին։ Այո՛, այս առաջին սուրբ սէրն էր, որ զգում էր իւր կենացը մէջ Երանուհու համար, առանց անշուշտ հաշուելու այն տրփանքը, որ բորբոքուեցաւ իւր մէջ՝ քսան տարեկան հասակում, գրեթէ անփորձ եղած ժա-

մանակը. տրփանք մի գերմանացի դերասանուհու համար, որոյ պատճառաւ քառասուն հազար ռուբլին ադամանդեայ ընծաների, հանդերձանաց, ասորէների և Շամպանի գինու փոխարկելուց յետոյ՝ հեռացաւ Պետերբուրգից, իբր յիշատակ տանելով հետը մի զզուած սիրտ, հիւծեալ մարմին ու դատարկ քսակ, որին յետոյ լցնելը դժուար եղաւ. օրովհետև հայրը՝ ամեն բանի տեղեակ լինելով, համառօտ կերպիւ յանդիմանեց որդւոյն: Բայց իւր որոշումը յանդիմանութեանը պէս համառօտ չեղաւ դժբաղդաբար. և նա կը տար իւր որդւոյն այնքան գումար, ինչքան որ անհրաժեշտ էր և անվրէպ նորա կարևոր ծախքերին: Ամենայն ջանք անհնարին եղան հօրը համոզելու, երբ առէին թէ սորանից յետոյ որդին խրատուած է, թէ այլ ևս չպիտի հետևւի կանացի պատկերով քսակաց սիրուն տզրուկներին և այլն: Սակայն նա անյողդողդ մնաց իւր կարծիքի վրայ:

Ճշմարիտ որ այնքան էլ խիստ վարուել չէր կարելի երիտասարդ անձի հետ. սկիզբից եթէ նորան վարժեցրած լինէին խնայողութեան և ժուժկալ կեանքի, նոյնը իրաւունք կ'ունենային այժմ էլ պահանջել նորանից: Դարձեալ ծնողքն են մեղաւոր, որք սովորեցնում են իրենց որդիքը մի հեշտ կեանքի, իրենց կրքերն ու ցանկութիւնները դիւրաւ յագեցնելու փողի առատութեամբ: Իսկ երբ այս կեանքից մնաավում է նոցա առողջութիւնը, ծնողք դեռ ոչինչ չեն նկատում. այլ կոյր աչքերնին բացվում և սրտերնին զգում է ցաւ այն ատեն, երբ քսակնին է մնաավում, երբ հարկ է լինում նիւթապէս տուժել իրենց անփոյթ տգիտութիւնը:

Իշխանի հայրը վախճանեցաւ վերջապէս (բարեբաղդաբար գուցէ), թողլով իւր որդին ինքնիշխան ժառանգ բոլոր իւր հարստութեանը: Սակայն դորանից յետոյ Զարեհ իշխանը առիթ էլ չունեցաւ յիմար ծախքեր անելու: Ի սկզբան վայելուչ կերպով տարաւ հօր սուգը. և յետոյ նորա տեղը բռնելով, կարծես աւելի ծանրաբարոյ դարձաւ ու

լուրջ. մանաւանդ որ նա արդէն հասած էր այն տարիքին, երբ մարդս աւելի մի հաւատարիմ և սիրող տիկնոջ բարեկամութեանը կը կարօտի, քան թէ գեղապաճոյճ սիրուհւոյ վաղանցուկ և չահանկատ փաղաքշանացը։

Եւ այդ ընկերը, այդ ամուսինը նա յոյս ունէր գտնել Երանուհու մէջ, այն վաղուց երազած գաղափարական աբարածը, որի սիրովը չանթահար եղած էր յանկարծ ու յանպատրաստից. այժմ ամեն ջանք գործ էր դնում հասնել իւր նպատակին։ Բայց պէտք է ասել, որ Երանուհի գրեթէ առաջին անառիկ կինն էր, որ պատահում էր նորան կեանքում. սա չէ՛ր այն փաղաքուշ սեղեխներից, որոց կարելի է հրապուրել քաղցրահոտ նամակների, ծաղկանց փնջերի անձրևով, ականակուռ ընծաների աչք և երբեմն առաքինութիւն անգամ շլացնող փայլովը։

Սակայն չէր յուսահատվում, մտածելով որ գուցէ ժամանակ անցնելուց յետոյ միտքը փոխէ, և բարեբաղդաբար էլ թոյլատրութիւն ունէր մտնել նոցա տունը, տեսնել նորան մօտից, խօսակցել հետը... Եւ գուցէ այսպէս շարունակ յաճախելով, կարողանար վարժեցնել օրիորդին իւր ներկայութիւնը՝ առանց հակակրութեան տանելու... Եւ թերեւս ո՞վ գիտէ՝ ժամանակաւ վարժուելով, անհրաժեշտ համարէր իրեն համար այդ ընկերութիւնը իւր տխուր կեանացը առանձնութիւնն զուարթացնելու համար... Ալֆրէդ Միւսսէ ասում է, թէ կանանց սիրտը մի մայր եկեղեցի է, Աստուծոյ սուրբ տաճարի խորանը հէնց իսկ սրտի մէջտեղն է. սակայն ինչքան անթիւ մատուռներ կան իւր շուրջը։ Իշխան Զարեհ բաւական կը լինէր մի մատուռով և, միայն թէ թոյլ տային կամ ընդունէին իրեն այդ մայր եկեղեցւոյն մէջ. մատուռից աւագ խորան հասնելու ճանապարհը շատ երկար չէր, այսինքն՝ համակրութիւնից դէպ 'ի սէր։

Այս խորհրդածութեամբ և յոյսերից քաջալերեալ, հրամայեց՝ որ կառքի ձիերը լծեն։ Հազաւ ամենանոր հա-

մազգեստը՝ ոսկէ ծոպերով զարդարուած, ծածկեց ձեռքերը
ամենամաքուր սպիտակ ձեռնոցներով, և հայելիի մէջ մի
ակնարկ տալուց յետոյ՝ ինքն իրենից գոհ, գնաց և նստեց
իւր երկձի կառքի մէջ։

Գողթունի արդէն յայտնել էր իւր աղջկան՝ իշխանի այն
օրերը իրենց մօտ գալու դիտաւորութիւնը, և խնամա-
կալուհին մի քանի օրից ի վեր միշտ աշխատում էր կոկել
և վայելուչ կերպիւ հագնուիլ, որոշ չգիտնալով իշխանի
ո՛ր օր գալը, և վախենալով՝ որ Երանուհի առանձինն չլինի
նորան ընդունելու ժամանակ։ Կէս օրից մի քառորդ ժամ
անցած հնչեցին դրան զանգակը, և քիչ յետոյ իշխան
Զարեհի խթանների հնչիւնը լսուեց, որ սանդուղներից
կը բարձրանար։

Միջին դռնից ներս մտաւ՝ փոքր ինչ գունատ, և մի
քայլ առաջ գալով՝ խոնարհուեց. և մերձենալով միմեա
ձեռք տուին, նոյնպէս և պառաւ խնամակալուհուն։ Ցե
Երանուհու հրաւիրանօք նստեց սեղանին մօտ բազկաթոռ
մէջ. իսկ օրիորդն իւր խնամակալուհուն հետ նորա հակա-
ռակ կողմը նստեցան։ Փոխադարձ քաղաքավարական, բայց
անհրաժեշտ խօսքերից յետոյ՝ երկու վայրկենի չափ լռե-
ցին. իշխանը արագ շունչ էր առնում՝ սանդուղները բարձ-
րանալուց դադարած և ձեռնոցները հանելով։ Խնամակա-
լուհին ձեռքը բերնին դնելով՝ երբեմն մեղմ կը հազար, եր-
բեմն էլ պարապ չմնալու, իւր շփոթութիւնը ծածկելու հա-
մար զգեստին ծալքերը կ՚ուղղէր. բայց Երանուհի աչքերը
գետին սեւեռած, խօսակցութեան մի յարմար նիւթ կը փըն-
տռէր. նոյնը անում էր իշխանը, իւր շուրջը պատերին
նայելով։ Վերջապէս երկչոտութեան քողը պատռելով, ինքը
իշխանը առաջին անգամ սկսեց խօսել իրենց տան դիրքին,
օդի լաւութեան մասին։ Պատից կախուած Այվազովսկու
երկու պատկերաց նկատմամբ դիտողութիւններ արաւ, ո-
րոնք բուն իսկականին իւղատիպ օրինակները լինելով,
ներկայացնում էին Կոլոմբոսի ճանապարհորդութեանց դէպ-

քերը, ասելով թէ ինքը տեսած է բուն վարպետինը. երկու հրաշալի նկարներ, որոնք շատ վատ են լինում իւղաներկ տպուած. այդ միջոցը գրեթէ նուաստացնում է իսկականին արժէքը, և երբէք տպագրութեամբ նոցա ճիշդ գաղափարը չէ կարող տալ։ Խօսեցան նաև ընտանեկան երեկոյթների և զբօսանաց վերաբերեալ հարցեր։ Իշխանը մի յարմար միջոց գտնելով, ասաց վերջապէս Երանուհուն երկչոտ կերպիւ, տեսնելով նորա լուրջ և բռնազբօսեալ ժպիտը.

— Ներեցէ՛ք, օրիորդ, իմ համարձակութեան. սակայն ձեր հօր ազնիւ վարմունքը քաջալերեց ինձ այսօր ձեզ մօտ գալու հաճոյքը վայելել և միանգամայն հրաւիրել ձեզ իմ տօնախմբութեան յառաջիկայ ուրբաթ երեկոյին։ Եթէ ունենամ ձեզ ինձ մօտ տեսնելու պատիւը, երջանկութիւնս և երախտիքս անսահման պիտի լինին։ — Այս խօսքերը նա այնպիսի քաղցրութեամբ արտասանեց՝ գլուխը աջ ուսին վերայ ծռելով, աղաչական կերպիւ, որ ճշմարիտ դըժուար էր իսկոյն մերժելը։ Երկու կանայք շուարած միմեանց երեսը նայեցան։

Խնամակալուհին, որ իւր յամառ ներկայութեամբը շատ հաճելի չէր եղած իշխանին, Երանուհու վերայ մի վայրկեան նայուածք ձգելով, իւր միահնչիւն ձայնովը պատասխանեց.

— Գիտէք, իշխան, որ Երանուհին դեռ սուգի մէջ է. և շատ անյարմար կը լինի, եթէ նորան տեսնեն յանկարծ տօնախմբութեան մէջ. կարծեմ...

Երանուհի տեսնելով խնամակալուհու տարակուսանքը, յարեց. Անտարակոյս որ դորանում ոչ մի մեղադրելի բան չկայ. սուգը մարդուս սրտումը կը լինի և ոչ արտաքին ձեւերում. սակայն անշուշտ ձեզ էլ յայտնի է, որ մարդիկ այնպէս չեն մեկներ. մարդիկ սովոր են արտաքին երեւոյթից դատել ամեն բան...

Գողթունի՝ որ սրահ մտած ատեն լսած էր այս վերջին

խօսքերը, բարձրաձայն ու սիրով ողջունեց իշխանին, և ձեռքը նորա ուսին վերայ դնելով՝ դարձաւ Երանուհուն ու ասաց գոհունակ ծիծաղով.

— Մի՛ վախեք, աղջի՛կս. մարդիկ կարող են անվայել համարել, երբ տեսնեն սգաւորին օտարների տան կամ հասարակաց զբօսավայրերի մէջ. Սակայն մի եղբօր, մի բարեկամի տան մէջ քո ներկայութիւնը ոչ ոք իրաւունք չունի մեղադրելու, որովհետև ես հաւատացած եմ, որ իշխանը մեզ համար մի բարեկամ է... և մինչև անգամ յոյս ունիմ, որ շուտով ինձ որդի էլ լինի...

Երանուհի և մինչև իսկ իշխանը՝ սաստիկ ամաչելով այս խօսքերից, կարմրեցան. առաջինը շանթահար, իսկ երկրորդը ուրախութիւնից ևս, որն որ զսպելով՝ երախտա... նայեցաւ Գողթունուն. յետոյ օրիորդին դառնալով ...

— Դուք, անկասկած, լիովին իրաւունք ունիք վար... այնպէս, ինչպէս որ պատշաճ կը դատէք. բայց այ... միայն թոյլ տուէք ինձ ասել, որ իմ տօնախմբութեան երեկոյին ձեր բացակայութիւնը կարող է իմ տունս էլ սգով լցնել, որքան այժմ ձեր սիրտը: — Եւ 'ի վերջոյ վախենալով, որ Երանուհի ժամանակ կ'ունենայ նորից մի մերժողական պատասխան տալու, իսկոյն լռութիւնը ընդմիջեց. և դառնալով Գողթունուն՝ խնդրեց նորանից, որ երեկոյին բարեհաճի գալ կլուբ. յետոյ իւրաքանչիւրին ողջունելով, ասաց ցտեսութիւն և մեկնեցաւ:

Իշխանի մօտ իւր տօնախմբութեան օրը՝ բաց 'ի մի քանի հեռաւոր ազգականներից ու ծանօթներից, ուրիշ ոչ ոք չպիտի գտնուէր: Իշխանը ցանկանում էր Երանուհուն ծանօթացնել նոցա հետ, մանաւանդ մօրաքրոջ հետ, որ մի զուարթաբարոյ պառաւ էր, որպէս զի Երանուհու և նորա մէջ սերտ յարաբերութիւն հաստատէ, կարողանայ աւելի ստէպ օրիորդին հետ տեսակցելու առիթներ ունենալ և մի կերպիւ փութացնել հարսանիքը:

Հայրն էլ եռանդեամբ սպասում էր այն օրին, սակայն

արտաքուստ շատ լուրջ և ծանր էր բռնում իրեն։ Մինչև սանդուղի գլուխը իշխանին առաջնորդելուց և ուժեղ նորա աչք սեղմելուց յետոյ՝ սրահ վերադարձաւ. բոլոր դէմքում ու ձևերում գոհունակութիւն էր արտայայտում։ Ձեռքերը միմեանց շփելով, մէկ երկու շրջան արաւ սրահին մէջ. ու աղջկանը մօտ մի բազկաթոռի մէջ ինկնալով, ուրախ ձայնով ասաց.

— Է՛հ, աղջի՛կս, կարծեմ իշխանը այնքան երկիւղալի մի երևոյթ չունի, որքան որ դու կարծում էիր. վատ տղայ չէ... լօթի է, լօթի, ինչպէս որ ասում են Տփղիսում։ Սակայն լօթիք ընդհանրապէս լաւ մարդիկ են լինում, միայն հարկաւոր է հետերնին վարուելու կերպը լաւ իմանալ. օրինակ, պէտք չէ մերժել իւր հրաւէրը... յիմարութիւն կը լինի մեր կողմից, եթէ...

Երանուհի նայում էր պատուհանից դուրս, բոլորովին տարբեր մտքերով զբաղուած՝ առանց լսելու հօրը խօսքերը, երբ խնամակալուհին ընդմիջեց, ծանուցանելով թէ նախաճաշիկը արդէն պատրաստ է։

## Ե

Երանուհի այն փափուկ և երազացնոր տարիքին մէջ որոշեց վերջապէս իւր սրտին սլացմանց և յոյսերին փականք դնել. և ոտքի տակ կոխոտելով հոգւոյն բնիկ և իրաւացի պահանջները, մի միայն իւր որդիական պարտքը կատարելու դիտաւորութեամբ իշխան Ջարեհի կինը դառնալ։ Սակայն վաղուց իւր մէջ յուզուած տարբեր և խառն զգացմանց պատերազմիցը սաստիկ վնասուած էր խեղճին առողջութիւնը. իւր դէմքի այդ անոյշ և թափանցիկ դալկութիւնը սկսել էր կանաչ երանգներ գոյացնել երեսի ոսկորոտ մասերին վերայ։ Շարժմունքը դանդաղ և մեղմ էին, խօսքերը սակաւ։

Հէնց իսկ իշխանի տօնախմբութեան օրը՝ 'ի սրտմտու-

թիւն իւր հօրը՝ ինքն իրան շատ վատ էր զգում. և չնայելով հօրը, մանաւանդ իշխանին անդադար Թախանձանացը, չկարողացաւ անկողնից դուրս գալ և գնալ հօրը հետ իւր ապագայ ամուսնոյն տունը։

Այսու հանդերձ հայրը գործում և կարգադրում էր ամեն բան։ Այժմ գրեթէ վստահ էր աղջկան հաւանութեանը։ Սերտ բարեկամացաւ իշխանի մօրաքրոջ հետ. Նա էլ փոխադարձաբար եկաւ Երանուհուն այցելելու և երկու անգամ էլ երեկոյեան թէյի, ուր իշխանը մօրաքրոջը տուն վերադարձնելու պատրուակաւ կը գար փոքր ինչ վաղ, ժամերով կը նստէր և կը խօսէր, բայց միշտ լուրջ և զգաստ։

Ի վերջ բանի, իշխանի մեղէտու մօրաքոյրը և Գողթունին [illegible] պէս գործը կարգադրեցին, որ վերջապէս նշանի մա[illegible] օրհնուեցան։ Բաց 'ի Երանուհուց՝ բոլորը գոհ էին և ու[illegible] և հարսանեաց օրը կը ջանային փութացնել ընդդէմ [illegible] նուհու պաղատանաց, որ խնդրում էր գոնէ դեռ մէկ [illegible] յետաձգելով հարսանիքը, Թոյլ տան իրեն երկարել իւր մօրը սուգը. սակայն անլսելի եղաւ իւր աղաչանաց ձայնը։

Գողթունին յուսալիր և շատ բաւական սրտով աղջկան օժիտովը կը պարապէր։ Երբեմն կ'երթար այդ կնոջ տեսութեան, որը երեսուն և հինգ տարին անցնելուց յետոյ՝ սպիտակն ու կարմիրը առատօրէն գործ ածելով, կ'ուզէր տասը տարի աւելի պակաս ցոյց տալ։ Նա խիստ կը վարուէր Գողթունու հետ. բարձրահայեաց, քիչ անգամ փայփայող. սակայն կ'ուզէր մի ժամ առաջ դառնալ նորա կինը... Երկուքն էլ միմեանցից ակնարկութիւններ ունէին, բայց բոլորովին տարբեր տեսակէտով։ Այդ գոռոզ և խորամանկ մարդը՝ իւր կրիցը և անցեալին գերի, մի սողացող զեռուն կը դառնար այդ գիշատիչ ագռաւի ճիրաններին մէջ։ Ներբամիտ կինը, երևի, լաւ էր ճանաչում նորան, շատ լաւ տեղեակ էր նորա իսկութեան, քան մի ուրիշը։

Շատ նեղ պարագաներում Գողթունի խորհուրդ կը հարցնէր նորանից, մինչև անգամ աղջկանը հարսանեաց

կարգադրութիւնն ։ Միայն... թէպէտ վերջերումս չէր կարո-ղանում գնալ անձամբ նորա տեսութեան, սակայն ընդունում լինելով ցերեկ ու գիշեր թէ՛ տանը և թէ՛ գործարանին վե-րաբերեալ գործերով։ Վաճառականներից ստացել էին արդէն ժամերին վերաբերեալ անհնարին ափոփոխ... Մոսկուայից Սե-տագա, Թորոս և այլոց.

Մի շաբաթ ժամանակ էր մնացել հարսանիքին։ Պատ-րաստ պատրաստ էին ոսկեգիր հրաւիրատոմսերը, որոց պա-հարաններին վերայ Գայթանի հասցէն կը գրէր, նստած գրա-սենեակում, երկրորդ հաշւեհանրը այնքէն անցուցանելով։ Գի-շերուան ժամը տասը լրացել էր, իսկ նա մտադրում չէր դնել ժամանակին այնպէս արագ թռչելը, մանաւանդ որ այն օրուան արած զանազան երթևեկութիւններից ցաւ-րած էր, և նստած հանգիստ կը պարապէր։

Գրասենեակում բաց՝ի նորանից ոչ ոք չի կար. արդէն գրագիրը արձակուրդ առնելով գնացել էր Գորի՝ ծննդեան տեսութեան։ Գործարանը, ուր շատ անգամ գիշերներն էլ գործէին, այն օրը փակ էր բոլորովին. և գործաւորք ու ծառայք, անշուշտ առթից օգուտ քաղելով, գնացել էին ամենք զբօսնելու, այլք տան մէջ եղած պատրաստութեանց կ՚օգնէին։ Գրասենեակի ծառան ուղարկուած էր զանազան տեղեր յանձնարարութիւններով։ Գայթանին նորան կը սպասէր, որ տուն վերադառնայ։

Սաստիկ էր ցուրտը։ Աղամ վեր կացաւ և մի քանի փայտ ևս նետեց կրակարանին մէջ. յետոյ կրկին իւր տեղը վե-րադառնալով, ծրարեց ամբողջ ստամակները, դրաւ մի կողմ. ու մի բոպէ գլուխը ձեռացը մէջ առնելով, սկսաւ ճակատը շփել, իբրև թէ մի ծանր խնդիր կամենար լուծել։

Ոչ մի ձայն չէր լսվում շրջակայքում, բաց՝ի պատուհանի կիսաբեկ ապակուց գետի ընթացքին մեղմ մրմունջը, որ գործարանի և գրասենեակի պարսպաց ստորոտը կ՚ողողէր։ Գուցէ անխոհեմութիւն լինէր նորա կողմից առանձինն միայն այնտեղ. գիշեր տանեն բաց գրասենեակում, բայց այդ

Նարան, Անդրէաս, որի կեանքը բարոյապէս սպանելուց յետոյ՝ ուզում ես նիւթական կեանքն էլ դաւաճանել... Չէիր գուշակում իմ գալուստը, այնպէս չէ՞... Բայց մոռացար որ հարստանք ունիս շուտով, և ես յինքս անձամբ եկել եմ ընդունելու իմ հրաւէրի ստացականը քո ձեռքից։ այսպիսի մի անկոչ հիւր չէիր սպասում, այնպէս չէ՞... հէ, հէ, հէ... ի՞նչ ես դողում. գուցէ կարծում ես, որ քեզ սպանելու համար եկած լինիմ այստեղ... Չէ՛, իմ նպատակս բոլորովին ուրիշ է. ես եկել եմ պարզապէս տեսնուելու հետդ։ Ճառ հեռուից՝ Սիբիրից եմ եկել, կ՚ուզեմ բաց անել կոյր աչքերդ, որ մի անգամ ես դու քեզ ճանաչես, տեսնես անցեալդ։ Եկել եմ արդար և իրաւացի վրէժ լուծելու քեզանից, խոնարհեցնել այդ անիծապարտ գլուխդ, որ մինչև այժմ պէտք էր որ ջախջախուած լինէր շատ անմեղների արեան ծանրութեան տակ, որին տակաւին ուզում ես կանգուն և հպարտ բարձրացնել ուսերիդ վերայ, նորանոր ոճիրներ նեցուկ տանելով... Գիտես ապատեմ վերջապէս մարդկային ընկերութիւնը քեզ նման մի անգգամ հրէշից, որոյ գլխաւոր զոհերն են. նախ՝ ես. յետոյ՝ իմ անդամալոյծ խեղճ հայրս, որ չկարողանալով տանել իմ դատապարտութեան լուրը, մեռաւ յուսահատ, ինձ անիծելով. երրորդ՝ իմ քոյրս՝ կորսուած, անհետացած. յետոյ՝ կինդ։ Դո՛ւ, շատերի մահուան և աղէտից պատճառ, պէտք է որ վերջ դնես քո ոճիրներիդ, պէտք է որ տուժես բոլորին և ինձ մանաւանդ տուած հարուածներդ...

Գողթունի դիակնաման և դողդոջուն, կատաղաբար ձեռքերը տարաւ վզին փողպատը լայնացնելու, որ աւելի ազատ շունչ քաշէ. իսկ յետոյ մռնչեց խեղդուկ ձայնով.

— Դու ի՞նչ իրաւամբ ինձանից համար և տուգանք ես պահանջում... ի՞նչ եմ արած քեզ, որ գազանի նման գողունի յարձակվում ես իմ վերայ... Ճիւա՛ղ... քո կորըստեան պատճառը դու ինքդ ես։ Ես առաջարկեցի քեզ, ճշմարիտ է... բայց դու ազատ էիր մերժելու կամ ընդունելու։

— Աղա՜ն էր նա, ազա՞տ էր, բացագանչեց Արտաշ. և դո՞ւ ես համարձակվում ասել ինձ այդ բանը, դո՛ւ, անօրէն, որ այդ արքանեակ կնոջդ ինձ տուած տառապանքովը յաջողեր էիր կաշկանդել իմ կամքը և սիրտը: Այո, քեզանից դեռ տարիքով փոքր, քաջառողջ էի, և արիւնը եռում էր երակացս մէջ. մինչև այն օրը, որ քեզ հետ ծանօթանալու առիթը ունեցայ, ապրում էի խօթացեալ հօրս և քրոջս կողքին, պահպանելով նորանց իմ համեստ վաստակովը: Երջանիկ էի՝ սիրուած բոլորից, և Պետերբուրգի պէս մի քաղաքի մէջ յաջողել էր ինձ լաւ ճարտարապետի համբաւին արժանանալ. ամենքը հաւանում էին իմ ջրաներկերի գծագրութեանց և յատկագծերին, գովելով էին խօսում իմ վերայ... Եւ յանկարծ մի օր դու կարծես դժոխքից վերծեցիր և կանգնեցար իմ յաջողութեան ճանապարհին վերայ, տարիր ինձ այն անարգ կնոջ մօտ...

— Ո՛հ, լռէ՛, լռէ՛, մի՛ տար նորա անունը...

— Ո՛չ, ընդ հակառակը, պէտք է որ յիշեմ. դու և նա անձ էք կազմում, նորա հետ միասին հրապուրեցիք ինձ... Հրապուրեցիք իմ արուեստաւորի անձնասիրութիւնը, գովելով իմ ջրաներկ գծագրութեանց նրբութիւնը, և մինչև անգամ մի երեկոյ յանդգնեցար ծիծաղելով ասել, որ եթէ կեղծ հինգ կամ երեք րուբլիանոցներ յօրինել ուզենայի, այնքան պիտի յաջողէր, որ շատ վարժ աչքերն իսկ չպիտի կարողանային նորան իսկականիցը զանազանել: Մի և նոյն հեգնական կերպով ասուած խօսքերը քանիցս հեզ կրկնեցիր ինձ պաղ արեամբ, երբ գործակից և արքանեակ այդ վհուկի սիրովը գրգռեալ՝ ուզում էի վայելել նորան: Մի տարփայոյզ անբան էի դարձել, բոլոր ցանկութիւնս և նպատակս մի էր, ունենալ այն կնոջ, և այդ բանի միակ միջոցն էր շատ փող ունենալ. բայց ի՞նչպէս, ի՞նչ կերպով և ո՞ւր տեղից ճարէի: Կուրացեալ և շուարեալ խորհած ժամանակս՝ դու օգուտ քաղելով իմ սոսկալի դրութիւնից, արբածի վիճակիցս, եկար կրկին իբրև չարութեան ոգի,

օձի նման սկսեցիր Փշալ ականջիս, համոզելով ինձ՝ որ կեղծ թղթադրամ շինելը մի յանցանք չէ. թէ կայսրը փող շատ ունի... մեղքը աղքատին զրկանալը չէ. այլ հարուստին է: Ես կը խոստովանիմ, թոյլ գտնուելով, լսեցի քո այլետաբեր խորհրդին, միջամուխ եղայ այդ ձեռնարկութեան: Այն ժամանակ դու ինձ օգնեցիր կնոջս փողերով, գործատունս հաստատելով առանձին մի տան մէջ և ամեն զգուշութիւն ի գործ դնելով, որ չիմացուին քո ինձ հետ ունեցած յարաբերութիւնները: Յետոյ իմացայ նաև, թէ ինչո՞ւ իմ նամակացս գրութեամբ չէիր պատասխանում, և թէ ինչո՞ւ այրում էիր իմ նամակները... Ունէիր նոյնպէս մարդիկ, որոնք պատրաստի չինուած կեղծ թղթադրամները զանազան տեղեր փոփոխում էին իսկականների հետ, որոնց անշուշտ քո մասը էիր հաւաքում, իբրև ընկեր, հէ... Առաջին փորձերը յաջող անցան. և մի քանի անգամ տուիր ինձ իմ անարգ աշխատութեանց մի մասը, և արբանեակդ սկսում էր նուազ հակառակիլ ինձ... Մեկ օր էլ յանկարծ չգիտեմ ինչպէս, ոստիկանութիւնը պաշարեց իմ գործատունը, ուր միայն ես կայի պարապած իմ վատթար զբաղմունքով, ձեռքերս կապեցին և նետեցին ինձ 'ի բանտ... Մի ամսի չափ տևեց դատապարտանս. այն միջոցին մատնեցի քեզ դատաւորաց, բայց նոքա ոչ քո ընթացքին և ոչ մօտդ գտնուած թղթերի մի որ և է փաստ կամ մեղսակցական ապացոյց չգտնելով, ազատ թողուցին քեզ: Այդ վհուկ կինը և արբանեակներիցդ երկուսը փախած, աներևութացած էին: Բայց այժմ նա այստեղ է գտնվում և մատնուած ոստիկանութեան, որն որ յանկարծուստ կ՚երթայ այս գիշեր թղթերը ձերբակալելու և նորան հարցաքննութեան ենթարկելու: Անշուշտ, նորանից ինչպէս էլ որ լինի, կ՚իմանան քո մասին տեղեկութիւններ, որից դու վախենալով ուզում էիր ամուսնանալ հետը, ճանկերից մէջ առնել ամեն մի բոպէ քեզ խայթել սպառնացող թունաւոր օձը: Ես յետոյ... հօրս իմ վերայ կարդացած անէծքին մասամբ դու

մտածակից ես. և ահա եկաւ այն րոպէն, որ օձը թոյնը թափէ, որոյ միջնորդութեամբ տղանից վեց տարի առաջ ինձ այնտեղ ուղարկեցիր. Հայրս մեռաւ...

Գողթունի ցրտասարսուռ կը դողար, և հազիւ հազ կարողանում էր արտասանել. Ո՛չ, ո՛չ, նա չի յանդգնիլ ասել այդ բոլորը. անկարելի է այդ, սուտ է, սուտ... Այնտեղ փնտռելու պատճառը քո անխոհեմութեան հետևանքն է, դու սուտ ես:

— Ո՛չ, ո՛չ, ընդ հակառակը, ճշմարտութիւն եմ ասում, այնպէս հաստատ, ինչպէս իմ վեց տարուայ տանջանքս ու տագնապս: Այո՛, բանտարկուեցայ ես այնտեղ, որոյ տէրը ամեն արդար հոգւոյ տարափ ազդէ. այնտեղ, ուր փոխանակ սփոփիչ առանձնութեան՝ յանկարծ ինկայ ը[illegible] դաւաճան ոճրագործների բազմութեան մէջ, որք վար[illegible] էին հեռու, ինչպէս իրենց հաւատարի հետ: Անկարու[illegible] կարող զայրոյթս սանձել, և ամօթահար՝ արխոտ դղա[illegible] կը բարձրանար. այդ տագնապալոյզ կեանքին մէջ հիւանդացայ... սակայն Աստուած չկամեցաւ իմ մահը, երկար տևեց առողջութիւնս: Ամենայն օր կը տեսնէի ինձ շրջապատուած եղեռնատիպ պատկերաց ստուերներով, կը լսէի հայհոյութիւնք Աստուծոյ դէմ, ամեն րոպէ յիշոցք և աղտեղի խօսքեր... Հոգիս դժուարաւ կը հանդուրժէր այդ բոլորը, և սիրտս տանջանօք կ'ընդունէր իւր մէջ այդ տեղի գարշահոտ և ապականեալ օդը, որ ստիպուած էի շնչել՝ շաղախեալ անիծիւք և մրէժխնդիր բողոքանօք ընդդէմ մարդկային դատաստանի. Սակայն խեղճ հօրս զգօն խրատները իբրև սկզբունք սրտումս արմատացած, (որք առ ժամանակ գրգռում էին մի մեղսալից ջերմի կրակով), յանկարծ երևան ելան. և փոխանակ իմ թշուառ բանտակցաց նմանելու՝ աշխատեցայ նորանց համոզել 'ի բարին, խրատել և մխիթարել. և փոխանակ զզուանքի՝ մի միայն ցաւակցութիւն զգացի նոցա վերայ... Սակայն մի նպատակ ունէի, մի յոյս, այն էր՝ փախչել կալանքից. և հօրս գերեզմանին

վերայ երդուեցայ, քեզ գտնելով՝ վրէժ առնել... Հինգ տարիներ անցան, տանջանաց ու անձկութեան հինգ տարիներ, բայց ես յոյս չէի կտրած... Մի երեկոյ՝ դաշտային աշխատութիւնը աւարտելուց յետոյ՝ կալանաւորաց խումբը, որ քառասուն հոգուով էր բաղկացած, ի բանտ վերադառնալիս. և դրան մօտ ըստ սովորութեան երբ կրկին համարելով ներս թողնէին մի առ մի, փոխանակ քառասունի գտան միայն երեսուն և ինն հոգի. քառասուներորդը աներեւութացել էր։ Այն ժամանակ միայն յայտնի եղաւ փախուստս, բայց ես արդէն շատ հեռու էի.

Աստուծոյ միայն յայտնի է, թէ ինչ քաշեցուցիչ երկիւղ, հոգ ու տառապանք եմ կրել, ինչ փորձանքների եմ յաղթել, մինչև որ ինձ որոնողների սահմաններից դուրս եկայ, նորա հսկողութիւնից կարողացել եմ ազատել ինձ։ Որքան խորամանկութիւն և զգուշութիւն եմ ի գործ դրել՝ քո ամառին տեղեկութիւններ առնելու, միով բանիւ քեզ գտնելու համար... Եւ վերջապէս իմացայ, որ այդ դէպքից յետոյ՝ գուցէ ամաչելով կամ արդարներից հեռանալով, եկել ես այստեղ, քաղաքացի ես դարձել, կնոջդ փողերը լիովին կողոպտելով (որ իբրև օժիտ և աղջկանը պահում էր), հիմնել ես այս գործատունը, և արտաքին պաշտպանողական ձևերով ու բարեգործի կեղծ վարմունքով, շատերի առաջ պատիւ և յարգանք ես ունեցել... Ահա մի տարուց աւել է, որ հետևում եմ քեզ քայլ առ քայլ, դիտելով բոլոր վարմունքդ, և յարմար ժամանակի սպասելով, որ յայտնուիմ աչացդ. Այսուհետև իմ ուխտս կատարելուց յետոյ պիտի գնամ Տփղիսից, որպէս զի կորած քոյրս որոնեմ և գտնեմ։ Բայց նախ պէտք է, Անդրէաս, որ քեզ հետ վերջացնեմ հաշիւներս։

Անդրէաս, այժմիկն Գողթունին, զարհուրանօք, աչքաները պինդ սեղմած, մինչև վերջը առանց շունչը ազատ առնելու, լսում էր Արտաշի արած պատմութիւնը, որոյ վրդոված բերանից կայծակի նման ինկնում էին բառերը.

որ և է տարաձայնութիւն յայտարարել համաձայնութեան մէջ, ի՞նչպէս է, հաւանեցա՞ւ ես տեղեկութիւններիս. այժմ ինձ էլ կարո՞ղ ես խաբել... յիմարի՜ կեղծաւորութեամբ, անձկանօք ևս ծածկելով նորան պաշտպանելու ձևացնելով... Ո՛չ, ո՛չ հակառակն, քեզ կոչելով, իմ նպատակս է զանել անմեղ պաշտպանը փրկել, և քեզ դնել այդ վիճակին մէջ, որ չկարողանաս համեր նպատակդ իրագործելու:

— Ահա՛ տեսնե՛ս, զուարթ Անդրէաս՝ երկաթէ արկղին բանալին՝ նետելով զրաստեղանին վերայ. ա՛ռ. ահա. սա չէ՞ միթէ պահանջածդ. ա՛ռ, զողացի՛ր... բայց լսէ՛...

Արտաշ լուրջ բարկութեամբ ժպտելով պատասխանեց.

— Այդ խօսքը մի ուրիշի բերանից մի՛ արհեստագանդ նախատինք կարող եմ համարել, այլ քեզանից լսելը շատ բնական է. Թո՛յց հասկացիր զանէ մի անգամ ընդ միշտ, որ իմ նպատակս քո փողերդ կամ հարստութիւնդ զողանալ չէ:

— Հապա ի՞նչ ուրեմն:

— Ահա այժմ կը տեսնես:

Արտաշ մի չուան առաւ, սեղմեց ատամների մէջ և երկու կորեղ ձեռքերով զսպելով Անդրէասին, որ սաստիկ ճգնում կ'ուզէր դիմադիր լինել, բռնի նստեցուց նորան բազկաթոռի վերայ. և այնտեղ նորան այնպէս պինդ կաշկանդեց չուանով, որ չկարողանայ շարժել. Յետոյ առնելով բանալին, բացաւ արկղը. և հաւաքելով զանազան ոսկի ու արծաթէ իրեղէններ, նոցա պատուհանից մի առ մի ջուրը գցել նորանց. ոսկի ապարանջանք, գինդեր, բրոշ և սկանակուռ զարդեր, գոհարեղէնք՝ անձրևի պէս գետն էին թափվում մինը միւսի ետևից, մի խուլ ձայն հանելով ու պղպջակներ կազմելով ջրին մէջ. և գետը դարձեալ կը շարունակէր իւր անտարբեր ընթացքը, իւր պատկանը սուզած պարունակէք նոցա:

— Սոքա կնոջդ հարստութեան յետին մնացորդն էին, ասաց Արտաշը, որոյ մի մասը ուղղած էիր անշուշտ աղջը-

տղէցը․ այնտեղ է դեռ զարհուրելին Արտաշ, անողոք վրէժխնդիր, որ ծաղրելով նայում է նորա երեսին։ Այլ Անդրէաս չկարողանալով այլ ևս տանել այդ քստմնելի և սոսկացուցիչ հայեացքը, բոլոր թոքերի ուժովը սկսեց մռնչել, երկարեալ և հոգեվարքի ձայնով․

— Ինչո՞ւ համար… ինչո՞ւ համար…։ — Նա արտասուաց ակնաղբին մի հեղեղ, կարծես արեան փոխուելով, լցվում էին լայնաբաց աչքերին մէջ, կարմրացնելով նորանց, երբ շրթունքները արտասանէին․ Անիծեա՜լ… անիծեա՜լ… ո՜հ… ո՛չ նպատակս… անօրէն…

— Հա՛, հա՛, հա՛, գոռաց Արտաշ․ ինչ նպատակս… Այն նպատակս, որ՝ եթէ հրաշքով ազատուիս դատապարտութիւնից, այլ ևս բարեգործ չձեւանաս․ այն նպատակս, որ այսուհետեւ չխաբես ուրիշներին, չձեւանաս կեղծ ազգասէր, խարդախ մարդասէր։ Վերջապէս այն նպատակս, որ ապրելով ազատ և դատապարտուած, գոնէ մի փոքր ճաշակ կարողանաս առնել այն տագնապայոյզ վշտերից, որ քաշեց և մանաւանդ ինձ պատճառեցիր․ չկարողանաս էլ այսուհետեւ ժառանգութիւն թողնել աղջկանդ այնպիսի մի հարստութիւն, որին նա զզուանօք պիտի մերժէ, տեղեկանալով նորա աղբիւրը․ և չկարողանաս մինչև անգամ կաշառել նորանց, որոնք շուտով գան քեզ ևս ձերբակալելու այն րոպէին, երբ ես այստեղից շատ հեռու կը լինիմ։

Արտաշ մի անբացատրելի կերպով ծիծաղեց, որ նմանում էր պողպատի կամ յախճապակեայ մի անօթի վերայ քսուած խարտոցի, կամ պողպատի ձայնին։ Այդ ծիծաղը արմատից դղրդեցուց Անդրէաս Գողթունու ջղերը, որ մի յետին և գերագոյն ոյժ տալով ինքն իրեն, թօթուեց իւր բազկաթոռին մէջ, իբրև թէ կամենար իրեն կաշկանդող կապերը խզելու, և բազկաթոռը հետը քարշ ածելով, յարձակուիլ Արտաշի վերայ, երբ յանկարծ հաւասարակշռութիւնը կորցնելով, գետին գլորուեց մարմնոյն և բազկաթոռին բոլոր ծանրութեամբը։ Իսկ Արտաշ՝ հոգէառ հրեշ-

տակի նման յաղթական մի վայրագ ծիծաղ արձակելով, անտրտունջութեան այնտեղից։

Այս տեսակցի երեկոյից երկու ամիսներ անցան։ Եւ որ Դելորգավայեա փողոցին նեղմելեայ տնակների մէջ անց ու դարձ անող հետաքրքիր մարդիկ՝ աչքերնին չփելով և ուպուչ ու զարմանեաց հայեացքով՝ տեսան տաղք, սովորաբար գինետներաց մէջ շրջապատեալ Գողթանին. այն բարերար աղջնե, կալանաւորի կապան հանած, ոտքերը շղթայակապ՝ հինգ ուրիշ կալանաւորաց հետ անցնելը, համարձակ և հաստատ մի հայեացք տալով իւր շուրջը։ Անզգամութիւնը դեռ նշմարւում էր այն կարծր, նիհար ու ոսկրոտ երեսի վերայ, ուր իւր վաղամեռիկ աղջկան յիշատակն անգամ չէր կարողացել ցաւոց մի հետք դրոշմել, և որոյ սուգն անդամ պահելու անզգայ և անարժան էր։

1885



## ՕՐԹԱԳԻՒՂ

Սիրեմ եզերքդ՝ ուր ջինջ ալիք
Գան ի՛ փըրփուր փըշրին հեզիկ.
Սիրեմ շընչել օդուքդ անուշակ,
Նըստել ծառոցդ հովանույն տակ:

Փողոցներուդ մէջ նեղ՝ քարոտ
Ու խորդուբորդ եւ գարշահոտ
Կ'ուզեմ ճեմել երազացնոր,
Ուր գողտր անցեալն թըւի ինձ նոր:

Զի քոյ ծոցում, ո՜վ Օրթագիւղ,
Թարմ հասակով գարնանաճիւղ
Սիրեցի ես եւ սիրուեցայ,
Որով հոգիս մինչ արդ ցընծայ:

Լաւ կը յիշեմ այն երեկոն,
Երբ վարդ չ'ունէր այլ եւս կոկոն,
Երբ գաղջ նայէր երկրին արեւ,
Երբ ծառն էր զօս եւ անտերեւ:

Սպիտակ ալիք սուրբ Յակովբին
Ծածկէր զ'երկիր, սքօղէր արփին.
Բնութիւնն ողջոյն պատած էր սառ,
Ու ցուրտ քամին ծըմրան գոռար:

Յայնժամ բնութեան կըրակն ու կայծ
Կեդրոնացաւ սըրտումս ի՛ խայծ.
Եւ այդ հըրով անմահական
Սիրեցի՛ քեզ, իմ սիրական:

Գարունն, ամառ, ծաղկունք, երգեր՝
Հոգւոյս ի՛ խոր, ո՛վ իմ ընկեր,
Քեւ զարթեցան, երբ քոյ աչեր
Տեղացին ինձ սիրոյ պաչեր։

Դրանից ի՛ վեր անցան թէպէտ
Տասն եւ ութը տարիք անհետ,
Քարշ ածելով առին տարին
Դէպքն աշխարհիս, չարն ու բարին,

Ժամանակին ժանգոտ մանգաղ
Մեր զոյգ սրտից սիրոյն խաղաղ
Չ՛կարողացաւ տալ իւր հարուած.
Զի նրա պաշտպանն է վերին Աստուած:



# ՅԱՆԿ

---

